ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ 1957

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 2
Փ Ե Տ Ր Վ Ա Ր
1957 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ԻԴԵՈԼՈԳԻԱՅԻ ԴՐՈՇԸ

(«ԿՈՄՈՒՆԻՍՏ» ամսագրի 1957 թ. № 1-ի առաջնորդողը)

*Սկսվեց 1957 թվականը՝ պատմության մեջ նոր դարագլուխ բացած Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի նշանակալի թվականը:*

*Սոցիալիստական երկրները ՍՍՌՄ գլխավորությամբ թևակոխեցին նոր տարին՝ լի հաստատ վստահությամբ իրենց ապագայի նկատմամբ: Ո՛չ մի դժվարություն և փորձություն, միջազգային ռեակցիայի ո՛չ մի հարձակում և զրպարտություն չեն կարող սասանել այդ վստահությունը, որը հիմնված է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի վրա, որի հետևությունները հաստատված են Սովետական Միության, Եվրոպայի ու Ասիայի ժողովրդա-դեմոկրատական պետությունների փորձով: 1917 թվականի Հոկտեմբերյան օրերից սկսած ակտիվորեն ընթանում է հին, իր դարն ապրած կապիտալիստական հասարակության մահացման և նոր, սոցիալիստական իրավակարգի հաստատման ու զարգացման օբյեկտիվ պատմական պրոցեսը: Ժամանակակից կապիտալիզմի՝ որպես հասարակական սիստեմի, կործանումը խափանել անհնարին է: Որքան ավելի կատաղի է դառնում նրա դիմադրությունը, իր դիրքերը պահպանելու և ամրացնելու նրա փորձերը, այնքան ավելի մոլեգնորեն են իմպերիալիստները հարձակվում ժողովուրդների ազատագրական շարժման վրա, առանձնապես սոցիալիզմի վրա:*

*Վերջին ժամանակներս իմպերիալիզմի լագերի ձեռնարկած ագրեսիվ գործողությունները թելադրված են ամենևին էլ ո՛չ սեփական ուժերի նկատմամբ ունեցած վստահությամբ, այլ, ընդհակառակն, միջազգային սոցիալիզմի հաղթական զարգացման հանդեպ նրա ուժեղացող երկյուղով: Սովետական Միությանը և սոցիալիզմի լագերի մյուս երկրներին զրպարտող ռեակցիոներների չարակամ հայհոյանքը, նրանց աղեկտուր վայնասունը — այդ ամենը հիրավի հուսահատության վայնասուն են: Ստոր պոլիտիկանները փորձում են խաբել մասսաներին և նրանցից թաքցնել կապիտալիզմի սիստեմի լրիվ ու վերջնական սնանկությունը, որը մոտենում է անողոքաբար, չնայած հասարակական զարգացման բոլոր զիգզագներին: Նրանք նույնիսկ դեմ չեն իրենց հուսադրել իրենց պաշտպանած վարձու ստրկության կարգի հեռանկարների վերաբերյալ շինծու-օպտիմիստական պրոգնոզներով: Բայց պարզ, անհերքելի փաստերի հանդեպ որքա՛ն խղճուկ է երևում այդ ցուցադրովի առույգությունը:*

Եթե Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, ըստ Ջոն Ռիդի թևավոր արտահայտության, «ցնցեց աշխարհը», ապա հետագա չորս տասնամյակները արմատապես փոխեցին այն։ Սոցիալիզմի ուժերին հաջողվեց այդ փոփոխությունները լիովին ամրապնդել իրենց օգտին։ Երկրագնդի վրա 1954 թվականին եղած 2 միլիարդ 655 միլիոն ազգաբնակչությունից (ՄԱԿ-ի տվյալները) համարյա մեկ միլիարդն ընդմիշտ խզել է իր կապերը իմպերիալիզմի հետ և Մարքսի—Էնգելսի—Լենինի ուսմունքի հիման վրա կառուցում է իր՝ մարդու շահագործումից զերծ մարդու կյանքը։ Պետությունների սոցիալիստական համագործակցության, սոցիալիզմի համաշխարհային սիստեմ դարձած այդ համագործակցության ամսե-ամիս, տարեց-տարի աճող տնտեսական ու քաղաքական հզորությունը մի անվիճելի փաստ է, որը վճռական դրոշմ է դնում մարդկային հասարակության ամբողջ զարգացման վրա։

Քննելով վերջին չորս տասնամյակների պատմությունը, չի կարելի մոռանալ այն անասելի, նախկինում չտեսնված դժվարությունները, որոնց հանդիպեցին իրենց ճանապարհին Ռուսաստանի՝ լենինիզմի հայրենիքի աշխատավորները, որոնք առաջինը ճանապարհ հարթեցին դեպի լուսավոր ապագան ամբողջ մարդկության համար։ Առաջին համաշխարհային պատերազմի վերջում ստեղծված իրադրության առանձնահատկությունը, իմպերիալիզմի ժամանակ կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքի գործողությունը պայմանավորեցին համաշխարհային-պատմական բնույթի այն երևույթը, երբ գիտական կոմունիզմի գաղափարները՝ արդիականության ամենաառաջավոր և կենսական գաղափարները առաջին անգամ մարմնավորվեցին ա՛յն երկրի հասարակական ու պետական կարգում, որը նախկինում նյութական տեսակետից աչքի էր ընկնում մեծ հետամնացությամբ։ Պետք է նկատի ունենալ նաև այն, որ մեր երկիրը սոցիալիզմի՝ որակապես նոր, շատ ավելի բարձր հասարակարգի շինարարությունն սկսեց միայնակ, իրեն անհաշտ թշնամի կապիտալիստական պետությունների վտանգավոր շրջապատման մեջ։ Չկար, և չէր էլ կարող լինել սոցիալիզմի շինարարության քիչ թե շատ ստուգված փորձ, «...որպեսզի մենք այժմ իմանայինք, թե ի՞նչ տեսք կունենա ավարտուն սոցիալիզմը,— մենք այդ չգիտենք»,— ասում էր Վ. Ի. Լենինը 1918 թվականին։ Այդպիսի պայմաններում սկսված նոր մեծ կառուցման մեջ սխալներն ու թերացումները միանգամայն բնական էին և նույնիսկ անխուսափելի։ Բայց այդ ամենը հաղթահարեց նոր, սոցիալիստական հասարակական ֆորմացիայի անընկճելի կենսական ուժը, ժողովրդական մասսաների պատմական ստեղծագործության ուժը, որոնց Կոմունիստական պարտիան ոգեշնչել էր մեծ նպատակին հասնելու համար։

Եթե մեր երկրի ժողովուրդները կարողացան սոցիալիզմ կառուցել և այն պաշտպանել միջազգային իմպերիալիզմի հարվածային ուժերի դեմ մղած մահացու վտանգավոր պայքարում, ապա դրա համար նրանք պարտական են այն բանին, որ հաստատակամորեն ու անշեղորեն ընթանում էին պարտիայի նշած ուղիով, մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան հաղթանակն էր սոցիալիստական իդեոլոգիայի, որով մշտապես առաջնորդվում էին Լենինը, բոլշևիկների պարտիան, որոնք մեր Հայրենիքը տարան դեռևս ոչ ոքի կողմից չուսումնասիրված ուղիներով։ Հետագայում էլ վիթխարի հետամնաց երկրի ռևոլյուցիոն վերափոխման ուղղությամբ կատարած



տիտանական ամբողջ գործունեությունը լուսավորվում էր գիտական կոմունիզմի թեորիայով, որն անընդհատ հարստանում ու բեղմնավորվում է սոցիալիստական շինարարության փորձով, պրակտիկայով։

Սոցիալիստական իդեոլոգիան մարդկության մեծագույն նվաճումն է։ Նա հասարակական գիտակցության զարգացման հետևանքն է, գիտակցություն, որը վերջին հաշվով միշտ էլ որոշվում է հասարակական կեցության զարգացման մակարդակով։ Ուստի, սոցիալիստական հայացքները, մարդկային կյանքի բոլոր կողմերի մասին եղած հասկացությունները կամայական չեն։ Նրանք իրենցից ներկայացնում են ժամանակակից հասարակության նյութական կյանքի պրոգրեսիվ պահանջների օբյեկտիվ արտացոլումը մարդկանց գիտակցության մեջ, ինչպիսին են՝ արտադրության միջոցները հանրայնացնելու, դրանք հանրային, սոցիալիստական սեփականություն դարձնելու և այդ հիման վրա հասարակական արտադրությունը շահագործումից ազատ մարդկանց բազմակողմանի զարգացման օգտին վարելու պահանջները։ Այսպիսով, սոցիալիստական իդեոլոգիայի քվինտէսենցիան մարդն է և նրա իրական մարդկային զարգացումը, իսկական մարդկային կյանքի ռեալ ապահովումը, ինչպես ասում էր Մարքսը։

Ամբողջ կյանքի սոցիալիստական վերափոխման հարցում բնական է, որ շահագրգռված են կեղեքվող մասսաները և առաջին հերթին՝ բանվոր դասակարգը։ Լինելով ժամանակակից հասարակության ամենաառաջավոր և ռևոլյուցիոն դասակարգը, պրոլետարիատը պատմությամբ կոչված է լինելու հասարակական կյանքի արմատական վերափոխման գլխավոր ու ղեկավար ուժը։ Այդ պատճառով էլ սոցիալիստական իդեոլոգիան իր բուն էությամբ բանվոր դասակարգի և նրա հետևից ընթացող աշխատավոր մասսաների իդեոլոգիան է։ Դա, իհարկե, չի նշանակում, թե մյուս դասակարգերի ներկայացուցիչները չեն կարող ընկալել սոցիալիստական իդեոլոգիան, բայց, ընկալելով այդ իդեոլոգիան, նրանք դրանով իսկ գիտակցաբար կանգնում են բանվոր դասակարգի դիրքերի վրա։

Սոցիալիստական իդեոլոգիան միանգամից և հասարակական զարգացման լայն ճանապարհից հեռու չէ հանդես եկել։ Դա արդարության հազարամյա որոնումների արդյունքն է, որն իր մեջ պարունակում է այն պարզ ճշմարտությունը, որ հասարակական կյանքի տեր կարող է լինել միայն աշխատանքը։ Գիտական սոցիալիզմի գաղափարները ծնվել են աշխատավորների դարավոր պայքարում՝ հանուն մարդավայել գոյության, հանուն իսկական դեմոկրատիայի, որն ամբողջ ժողովրդի գերիշխանություն է նշանակում այդ պայքարի այն ստադիայում, երբ այն գլխավորեց պրոլետարիատը և նրա քաղաքական պարտիան։ Պարտիան սոցիալիստական գիտակցություն է մտցնում բանվոր դասակարգի մեջ։ Այդ գաղափարները ծնվել են այդ նպատակներին հասնելու ուղիների ու միջոցների երկարատև ու տանջալից որոնումների պրոցեսում։ Սոցիալիստական գաղափարները գոյացել ու զարգացել են բոլոր ու ամեն տեսակ շահագործման դեմ պրոլետարիատի մղած հերոսական պայքարում՝ այդ համառ ու դժվարին, շատ բարդություններ, դառնություն և անգնահատելի զոհեր տեսած պայքարում։ Եթե այլ ձևով շարադրենք Վ. Ի. Լենինի այն հայտնի ասույթը, թե ինչպես է Ռուսաստանը հասել ճիշտ ռևոլյուցիոն թեորիային, ապա կարելի է ասել, որ աշխարհի աշխա-

տավոր մասսաները հիրավի տանջանքով են ձեռք բերել սոցիալիստական իդեոլոգիան։ Գիտական կոմունիզմի առաջացումը, որի համար պրոլետարիատը պարտական է իր ուսուցիչներ ու առաջնորդներ Մարքսին և Էնգելսին, շրջադարձ, որակական մի թռիչք հանդիսացավ հասարակագիտության զարգացման մեջ։

Հայտնագործելով հասարակական կյանքի զարգացման օրենքները, գիտական կոմունիզմը լուսավորեց մարդկային հասարակության ոչ միայն անցյալն ու ներկան, այլև նրա ապագան, ստեղծեց գիտական կանխատեսության հնարավորություն։ Մարմնավորված լինելով մարքսիզմ-լենինիզմի մեջ, գիտական կոմունիզմը բացահայտեց այն անցման պատմականորեն հասունացած, օբյեկտիվ տնտեսական անհրաժեշտությունն ու հնարավորությունը, որ պետք է կատարի հասարակությունը կապիտալիստական արտադրական հարաբերություններից դեպի սոցիալիստական արտադրական հարաբերությունները, մատնանշեց այդ անցումն իրականացնող սոցիալական ուժերը, նրա հիմնական ուղիներն ու միջոցները, ինչպես նաև առաջացած սոցիալիստական իրավակարգի հետագա զարգացման հիմնական ուղիներն ու միջոցները։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ժամանակից սկսած սոցիալիստական իդեոլոգիան հաղթարշավ է կատարում՝ շարունակ իր կողմը գրավելով նորանոր միլիոններ և տասնյակ միլիոնավոր աշխատավորներ՝ աշխարհի ամենատարբեր երկրներում։ Նրա մեծագույն հաղթանակն այն էր, որ Ռուսաստանը՝ այն երկիրը, որտեղ ինքը հաղթանակեց առաջին անգամ, դարձավ ինդուստրիալ-կոլտնտեսային հզոր տերություն։ Արդյունաբերական արտադրության գծով Սովետական Միությունը աշխարհում բռնեց երկրորդ տեղը, բնավ էլ տենդենց չցուցաբերելով կանգնած մնալու այդ կետում, բնավ էլ չմոռանալով առաջին տեղը գրավելու մասին։ ՍՄԿՊ XX համագումարը— անցած տարվա ամենանշանավոր իրադարձությունը, սովետական ժողովրդին նպատակադրեց պրակտիկ կերպով լուծելու ՍՍՌՄ գլխավոր տնտեսական խնդիրը՝ բնակչության մեկ շնչին հասնող արտադրանքի թողարկումով պատմականորեն կարճ ժամկետում հասնել և անցնել ամենից ավելի զարգացած կապիտալիստական երկրներից։

ՍՄԿՊ Կենտկոմի 1956 թվականի վերջում կայացած Պլենումը, ամփոփելով անցած տարում սովետական մարդկանց ստեղծագործ աշխատանքի արդյունքները, ամենայն իրավամբ արձանագրեց. «Սովետական երկիրը է՛լ ավելի ուժեղ դարձավ, աճեց նրա տնտեսական ու պաշտպանական հզորությունը, բարձրացավ ժողովրդի բարեկեցությունը»։

Ո՞ւմ օգտին է աշխատում ժամանակը։ Այս սակրամենտալ հարցը, ինչպես իր ժամանակին այն բնորոշեց Ու. Չերչիլը, բնավ էլ վերացական, ակադեմիական բնույթ չի կրում։ Չէ՞ որ պողպատի, նավթի, էլեկտրաէներգիայի բացարձակ արտադրությամբ ՍՍՌՄ-ը վաղուց արդեն առաջ է անցել Եվրոպայի բոլոր երկրներից։ Ճիշտ է, Սովետական Միությունն այդ տեսակետից դեռևս ետ է մնում Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ Բայց հասարակության առաջընթաց զարգացման մեջ որոշիչը ոչ թե ձեռք բերած հարստության մակարդակն է, այլ տնտեսական պրոգրեսի արագությունը, տեմպերը։ Եվ այժմ սոցիալիզմի նույնիսկ ամենաակնհայտ թշնամիները չեն կարող չտեսնել, չեն կարող թաքցնել, թե, պատկերավոր ասած, կյանքի գետը դեպի ո՞ւր է հոսում։ 1956 թվականին ԱՄՆ-ում 1,8 անգամ ավելի պողպատ է ձուլվել, քան 1925 թվականին, իսկ ՍՍՌՄ-ում՝ 10 անգամ ավելի։ Այդ նույն ժամանակաշրջանում նավթի հանույթը ԱՄՆ-ում աճեց 2,5 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 6 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրանքը ԱՄՆ-ում աճեց 6 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 31 անգամ։



Ներկայումս խիստ մոդայական են կապիտալիզմի իդեոլոգների այն ձանձրալի դատողությունները, թե իբր ՍՍՌՄ-ում «հիպերտրոֆիկ», միակողմանի կերպով աճում է միմիայն Ա խմբի արդյունաբերությունը և անտեսվում ու նույնիսկ մոռացվում են ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի առջև ծառացած խնդիրները։ Բայց այդպես մտածել կարող են կամ տգետները, կամ կեղծարարները, որոնք դիտավորյալ աղավաղում են ոչ միայն տնտեսագիտության այբուբենը, այլև ռեալ իրականությունը։ Սովետական մարդկանց կյանքն է՛լ ավելի հարուստ դարձնելու, երկրում առատություն ստեղծելու համար հարկավոր է հետագայում ևս ապահովել ծանր ինդուստրիայի ավելի արագ տեմպերը։ Նրա առավելագույն աճման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա Սովետական Միության մեջ պլանաչափորեն ապահովվում է սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության ճյուղերի հետագա վերելքը, գյուղատնտեսության աճումը, ժողովրդական բարեկեցության բարելավումը։

Կոմունիստական պարտիան իր առջև խնդիր է դնում բնակչության կենսամակարդակը դնել այնպիսի բարձրության վրա, որը համապատասխաներ սոցիալիստական հասարակության պահանջներին, այն հասարակության, որը չտեսնված լայն հնարավորություններ է ստեղծում «հասարակության բոլոր անդամների բարեկեցության և բազմակողմանի զարգացման ապահովման համար» (Լենին)։ Ներկայումս, ասված է ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ, պարտիան իր խնդիրը այն է համարում, որ ավելի լավ ու ավելի լրիվ օգտագործվի սոցիալիստական իրավակարգի, տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն, համաշխարհային պատմական առավելությունները՝ հօգուտ ժողովրդի, հօգուտ կոմունիզմի շինարարության։

Ո՞ւմ օգտին է աշխատում ժամանակը։ Դարաշրջանի այդ հուզող հարցին ոգեշունչ գործերով է պատասխանում նաև չին մեծ ժողովուրդը։ Չինաստանի Կոմունիստական պարտիայի 8-րդ համագումարը նշեց, որ Չինաստանի բանվոր դասակարգը, հենվելով գյուղացիության հետ կնքած դաշինքի և ազգային բուրժուազիայի հետ պայքարում իրականացվող դաշինքի վրա, «Ով ո՞ւմ»-ի հարցը թե՛ քաղաքում և թե՛ գյուղում լուծել է հօգուտ սոցիալիզմի, որն ապահովում է այդ երկրի արտադրողական ուժերի վիթխարի աճը, մի երկիր, որը հաստատակամորեն դուրս է գալիս բազմադարյան հետամնացության ճահճուտից, որ արհեստականորեն ստեղծել էին գաղութարար իմպերիալիստները։ Բավական է հիշեցնել, որ առաջին հնգամյակի ընթացքում Չինաստանում կկառուցվի 500 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, որ արդեն 1957 թվականի վերջին մեքենաների ու մեխանիզմների պահանջի մոտավորապես 60 տոկոսը կբավարարվի հայրենական արտադրության հաշվին։

Պետք է հիշեցնել ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների աշխատավոր մասսաների պատմական ստեղծագործությունը, որոնք հաջո-

ղությամբ կառուցում են սոցիալիզմի հիմքը: Չհաշված մի քանի բացառություններ, այդ երբեմնի հետամնաց ագրարային, բացի այդ էլ օտար կապիտալից ստրկական կախման մեջ գտնվող պետությունները վերջին տարիներս զարգացրին իրենց սեփական արդյունաբերությունը և այժմ իրենց ինդուստրիալ մակարդակով ի վիճակի են մրցելու արևմտաեվրոպական հնագույն պետությունների հետ: Իսկ անցյալում ինդուստրիալ տեսակետից զարգացած այնպիսի մի երկիր, ինչպիսին է սոցիալիստական Չեխոսլովակիան, իր արդյունաբերական արտադրությունը 1937 թվականի համեմատությամբ ավելացրել է 2,5 անգամ և ներկայումս պողպատի արդյունաբերության գծով բնակչության մեկ շնչին հաշված առաջ է անցել Ֆրանսիայից ու Շվեդիայից:

Սրանք են ռեալ փաստերը, որոնք հիշեցնում են, որ կապիտալիզմի արատներից զերծ սոցիալիստական տնտեսությունը շատ ավելի արագ է զարգանում, քան կապիտալիստական երկրների էկոնոմիկան՝ նույնիսկ իր ամենամեծ ծաղկման ժամանակ: Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության բարձր տեմպերը որոշվում են ոչ թե ժամանակավոր գործոններով, ոչ թե կոնյունկտուրային երևույթներով, այլ բուն իսկ սոցիալիստական էկոնոմիկայի բնույթով: Սովետական ժողովուրդը, բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդները վճռականորեն պաշտպանում են հասարակական երկու հակադիր սիստեմների քաղաքականության մեջ խաղաղ գոյակցության և էկոնոմիկայում նրանց խաղաղ մրցության սկզբունքները: Նրանք միանգամայն վստահ են, որ կհաղթեն այդ մրցության մեջ:

Արդյոք այդ չէ՞ իմպերիալիզմի լագերի պարագլուխների սաստիկ տագնապի ու կատաղության գլխավոր պատճառներից մեկը: Չէ՞ որ մեր ժամանակներում նույնիսկ բուրժուական շրջաններում գրեթե չկան այնպիսի մարդիկ, որոնք կասկածեին ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի իրականալի լինելու հարցում: Սովետական տնտեսական պլանների ռեալ լինելու նկատմամբ նախկինում ամեն կերպ ազդարարվող սկեպտիցիզմը այժմ փոխարինվել է այդ պլանների կատարման հնարավորության ուղղակի կամ անուղղակի խոստովանությամբ: Անցած տարում բուրժուական տնտեսագետների մեջ վեճեր էին ընթանում ոչ այն մասին, թե արդյոք ՍՍՌՄ-ն ընդունա՞կ է «հասնել ու անցնել», այլ այն մասին, թե նա ինչ ժամկետներում կլուծի այդ խնդիրը: Ոմանք մատնանշում էին, թե դրա համար կպահանջվի, թերևս, քսան տարի, մյուսները շատ ավելի կարճ ժամկետներ էին տալիս: Այդ բոլոր ելույթների մեջ էլ երևում էր նրանց երկյուղը կապիտալիզմի ճակատագրի համար: Ոչ հեռու ժամանակներս «Նյու-Յորք Թայմս»-ի էջերում տպագրվում էր հոդվածների մի սերիա երկու սիստեմների տնտեսական մրցության մասին: Այդ հոդվածներից մեկում ասվում էր. «Այժմ տեղի է ունենում տնտեսական մի մրցավազք, որի ելքը կարող է որոշել աշխարհի բախտը: Միջազգային կոմունիզմի ղեկավարները հույս ունեն շահել այդ մրցությունը... Արևմուտքի գործարար շրջանների և կառավարությունների ղեկավարները ավելի ու ավելի մեծ անհանգստություն են ցուցաբերում այն չափով, որ չափով կոմունիստների ուժը ավելի ու ավելի է դրսևորվում խաղաղության տնտեսական ու քաղաքական ճակատում մղած մրցության ձևով»:

Ինչպես տեսնում ենք, ժամանակակից բուրժուազիայի իդեոլոգները և նրանց տերերը բացահայտ երկյուղ են կրում երկու սիստեմների տնտեսական



խաղաղ մրցությունից: Նրանք պակաս երկյուղ չեն կրում նաև ամբողջ աշխարհում տեղի ունեցած այն լուրջ քաղաքական տեղաշարժերից, որպիսիք առաջ է բերել ՍՄԿՊ XX համագումարը: Վերջին տասնամյակների ընթացքում եղած իրադարձություններից ո՛չ բոլորն են այդքան լայն միջազգային ռեզոնանս ունեցել: ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նոր ձևով են դրված հարյուրավոր միլիոն մարդկանց ճակատագրին անմիջապես շոշափող արդիականության մի քանի կենսական պրոբլեմները:

Համագումարը գիտականորեն հիմնավորեց ժամանակակից դարաշրջանում պատերազմը կանխելու հնարավորության կարևորագույն թեզիսը: Իմպերիալիզմը, նրա թռիչքաձև, անհամաչափ զարգացումն իր մեջ ունի նորանոր զինված կոնֆլիկտների աղբյուրներ: Մարքս-լենինյան այդ դրույթի ճշտությունը համոզիչ կերպով ապացուցված է անցած տարվա վերջին եռամսյակի այնպիսի դրամատիկական իրադարձություններով, ինչպիսին էր անգլո-ֆրանս-իսրայելյան ագրեսիան Եգիպտոսի դեմ: Բայց, մյուս կողմից էլ, պատերազմներն ամենևին էլ անխուսափելի չեն ներկա դարաշրջանում. նրանց կարելի է կանխել, թույլ չտալ ծագել կամ, ծայրահեղ դեպքում, արագորեն վերջ տալ. այդ նույնպես համոզեցին վերջին իրադարձությունները: Այդ բանն ապահովված է սոցիալական պրոգրեսի ձեռք բերված մակարդակով, ամենից առաջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումով, որը արդիականության ամենալայն շարժման՝ խաղաղության պաշտպանության շարժման նեցուկն է:

Աճել է Սովետական պետության արտաքին քաղաքականության, միջազգային ամենասուր պրոբլեմները խաղաղ կերպով հարթելու, արտասահմանի մեծ ու փոքր պետությունների հետ կոնտակտներ ապահովելու նրա գծի հմայքը: Այդ գիծը ոչ հեռու ժամանակներս նորից տվել էր շոշափելի մի նոր դրական արդյունք՝ միջազգային լարվածության լուրջ թուլացում:

Դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի աճը հնարավորություն տվեց նոր ձևով դնելու մի այլ շատ ակտուալ հարց ևս՝ կապիտալիստական հասարակության ռևոլյուցիոն վերափոխման ուղիների հարցը: Գիտական կոմունիզմի հիմնադիրները ռևոլյուցիոն բռնությունը պատմության մանկաբարձուհի էին անվանում, և ոչ ոք չի կարող հերքել միլիոնավոր ճնշվածների ու զրկվածների պայքարի այդ օրինական ու փորձված մեթոդի կարևորագույն, ամենապատվավոր դերը: Դրա հետ միասին մեր դարաշրջանի օբյեկտիվ իրականությունը հնարավորություն է տալիս ուրվագծել հասարակության ռևոլյուցիոն վերափոխման նաև այլ, խաղաղ ուղիներ, կապիտալիզմի երկրների՝ դեպի պրոլետարիատի դիկտատուրան, դեպի հասարակական ավելի բարձր ֆորմացիան ամենուրեք հասունացած անցման ուղիները: Նոր հեռանկարներ են բացվել աշխատավոր մասսաների առջև, ամենից առաջ՝ Արևմտյան Եվրոպայի երկրներում, որոնք ունեն ուժեղ, ազդեցիկ, հիրավի ժողովրդական կոմունիստական պարտիաներ: Կապիտալի երկրներում կոմունիստական պարտիաների հզորության ու համախմբվածության աճման մասին ամբողջ ուժով վկայեցին կոմունիստների համագումարները Ֆրանսիայում և Իտալիայում: Բոլոր երկրներում եղած մոտ 30 միլիոն կոմունիստները կազմում են նոր, լավագույն աշխարհի համար պայքարողների մեծ բանակը, նրանք սոցիալիստա-

կան իդեոլոգիայի անհողդողդ պաշտպաններն են և բուրժուական իդեոլո-
գիայի թշնամիները:

Հին աշխարհի առջև մեծ հոգսեր ու անհաղթահարելի դժվարություններ
հարուցեց ազգային-ազատագրական շարժումը իր բոլոր ձևերով ու դըր-
սևորումներով, մի շարժում, որը տանում է դեպի ժողովուրդների գաղութային
ստրկացման խայտառակ սիստեմի լիակատար վերացում: Երկրորդ համաշ-
խարհային պատերազմից հետո վերացվեց ճապոնական գաղութային սիս-
տեմը, համարյա լրիվ ոչնչացել է հոլանդական գաղութային տիրապետու-
թյունը, մահացու հարվածներ են ստացել ֆրանսիական, ինչպես նաև ուժե-
ղագույն բրիտանական գաղութային կայսրությունները: Բայց, ինչպես ցույց
տվեց Եգիպտոսի դեմ կազմակերպված անգլո-ֆրանս-իսրայելական ագրե-
սիան, իմպերիալիստները ձգտում են պահպանել գաղութակալությունը: Միև-
նույն ժամանակ պայքար է ընթանում գաղութարարների միջև: ԱՄՆ-ի իմ-
պերիալիստները եռանդով ձգտում են գրավել գաղութային հին տերություն-
ների տեղը Ասիայում, Աֆրիկայում, Մերձավոր ու Միջին Արևելքում: Մեր-
ձավոր ու Միջին Արևելքում վարելիք քաղաքականության մասին Էյզեն-
հաուեր—Դալլեսի տխրահռչակ դոկտրինան ներկայացնում է ԱՄՆ-ի ուղղակի
միջամտություն արաբական պետությունների գործերում, բացահայտում է
անդրօվկիանոսյան մոնոպոլիաների գաղութակալական տենդենցները: Բայց
արաբական երկրների ժողովուրդները կհասկանան այն «բարեգործություն-
ների» էությունը, որոնցով պատրաստվում է նրանց երջանկացնել ամերիկյան
իմպերիալիզմը, և թույլ չեն տա իրենց վզին հագցնել մի նոր գաղութային
օղակ, որը ոսկեզօծված է տնտեսական օգնության խոստումով:

Իրականացել է Լենինի մարգարեությունը, արթնացել է վիթխարի Արե-
վելքը: Քարուքանդ է եղել այն պատնեշը, որ տասնամյակների ընթացքում
իմպերիալիզմի ռեակցիոն ուժերը փորձում էին բարձրացնել ՍՍՌՄ ժողո-
վուրդների և Արևելքի ժողովուրդների միջև: Զարմանալի չէ այն անսքող
չարությունը, որով տոգորված են ռեակցիոն մամուլի, մասնավորապես
ամերիկյան «Լայֆ» ժուռնալի այն դատողությունները, թե «Սովետական
Միության արդյունաբերական պրոգրեսը նրան արդեն հնարավորություն է
տալիս արտադրության միջոցները փոխանակել պարենամթերքով և բամ-
բակի ավելցուկներով այնպիսի թույլ զարգացած երկրներում, ինչպիսին
են Եգիպտոսը, Բիրման և այլն, դրանից քաղաքական փայլուն դիվիդենդներ
քաղելով»: Հեշտ է հասկանալ այդ զայրույթը. չէ՞ որ խոսքը մոտավո-
րապես 600 միլիոն բնակչություն ունեցող երկրների մասին է: Այդ
վիթխարի ռեզերվների նշանակությունը չափազանց մեծ է համաշխարհա-
յին մրցակցության ելքի համար: Իմպերիալիզմի լագերի պարագլուխներին
ամենից ավելի շատ վախեցնում է արդի դարաշրջանի երկու գլխավոր
հոսանքների՝ սոցիալիզմի և ազգային-ազատագրական պայքարի հարա-
ճուն մերձեցումը:

Խիստ վատացել են իմպերիալիստական ռեակցիայի գործերը և միևնույն
ժամանակ հարաճուն վերելք է ապրում բանվորական շարժումը: Մի ամբողջ
շարք աչքի ընկնող հաղթանակներով է նշված սոցիալիզմի ուղին, իսկ դա
նշանակում է, որ սոցիալիստական իդեոլոգիան ևս հաղթանակում է: Ի հա-
կակշիռ դրան՝ կապիտալիզմը, ուրեմն և բուրժուական իդեոլոգիան սնանկա-



նում է: Բուրժուական իդեոլոգիան սնանկ դուրս եկավ իր այն հիմնական
հետևություններում, որոնք վերաբերում էին կապիտալիզմի անսասանությա-
նը ու հավիտենականությանը՝ մարդու կողմից մարդու շահագործման նրա
սիստեմով և ազգային ճնշման նրա քաղաքականությամբ:

Սոցիալիզմի հաջողությունները, կապիտալիզմի հակասությունների հե-
տագա սրումը, գաղութային սիստեմի քայքայումը բուրժուական իդեոլոգիան
ու նրա պաշտպաններին ամենադժվարին դրության մեջ դրեցին: Ժամանա-
կակից բուրժուազիայի գաղափարական պաշտպանների գրվածքներից գա-
տապարտվածության, հոռետեսության, անհեռանկարության հոտ է փչում:
Ամերիկյան հայտնի հրապարակախոս Ու. Լիպմանը տրտնջում է այն բա-
նի համար, որ բուրժուական աշխարհում երևում են «անկման տագնապալի
սիմպտոմներ», վշտով արձանագրում է «նպատակի զգացողության կորուս-
տը»: Կարելի է բերել ուրիշ ողբասացություններ ևս, որոնց մեջ արտացոլվում
է իր համար անլուծելի հասարակական հակամարտությունների մեջ խճճված
կապիտալիստական սիստեմի դատապարտվածությունը, նրա իդեոլոգների
հավատի կորուստը իրենց սեփական ապագայի նկատմամբ: Բուրժուական
իդեոլոգիայի սնանկությունը այժմ ընդհանուրի կողմից ընդունված փաստ է,
որպիսին չեն ժխտում հենց նրա ներկայացուցիչները ևս: Ամերիկացի ակա-
նավոր գործիչ, Հնդկաստանում ԱՄՆ-ի նախկին դեսպան Չեստեր Բոուլսը
«Հանուն «Նոր ռեալիզմի» արտաքին քաղաքականության մեջ» հոդվածում
(«Նյու-Յորք Թայմս մեգեզին», 1956 թվականի մայիսի 20) խոսում է ամե-
րիկյան քաղաքականության իդեոլոգիական դատարկության մասին, այն
մասին, որ «չկա մի նպատակ, որը լայն համակրություն վայելեր»:

Բնական է, որ իմպերիալիստները չեն ցանկանում հաշտվել էկոնոմիկա-
յում, քաղաքականության մեջ, իդեոլոգիայում իրենց սնանկության փաստի
հետ: Միջազգային իմպերիալիզմը ճգնում է սրել իրադրությունը, նա ելք
է որոնում «սառը» և «տաք» պատերազմի ուղիներում: Իմպերիալիստական
լագերի արյունալի ավանտյուրաները՝ հակառևոլյուցիոն ֆաշիստական խռո-
վությունը Հունգարիայում և անգլո-ֆրանս-իսրայելյան ագրեսորների ավա-
զակային հարձակումը Եգիպտոսի վրա հանդիսանում են համաշխարհային
միասնական կոնֆլիկտի հանգույցներ: Այդ կոնֆլիկտը գիտակցաբար
բորբոքում էին և բորբոքում են այն գլխավոր նպատակով, որ շուռ տան
իրադարձությունների ընթացքը ի վնաս սոցիալական պրոգրեսի, դեմոկրա-
տիայի և խաղաղության ուժերի: Իմպերիալիստները ոչ մի ջանք չեն խնա-
յում, ամեն տեսակ պրովոկացիաների են դիմում հանուն այդ նպատակի:
Դեռ կգա այն ժամանակը, երբ կբացվեն իմպերիալիզմի գաղտնի դրասեն-
յակների սեյֆերը և պարզ կդառնան շատ գաղտնիքներ: Բայց արդեն այժմ
էլ կարելի է արձանագրել, որ առկա է համաշխարհային ռեակցիայի մի լայն
դավադրություն, որը խնդիր է դրել ինչ գնով էլ լինի թուլացնել սոցիալիզմը,
բաժան-բաժան անել նրա շարքերը, քաղաքականապես վարկաբեկել այն և
խորտակիչ հարված հասցնել սոցիալիստական, մարքս-լենինյան իդեոլո-
գիային:

Իմպերիալիստներն իրենց բավական հեռու գնացող ստրատեգիական
պլաններում գլխավոր տեղերից մեկը հատկացնում են ամեն տեսակ իդեոլո-
գիական դիվերսիաներին: Հայտնի է, օրինակ, որ ժամանակակից իմպերիա-
լիզմի իդեոլոգիական ապարատը սովետական ապրելակերպի նկատմամբ իր

գրպարտությունը եռանդով զուգակցում է կապիտալիստական ռեժիմը գու-
նազարդելու և այն որևէ կերպ արդարացնելու զուր փորձերի հետ։ Արդեն
խիստ ձանձրալի են դարձել «դեմոկրատական», «ժողովրդական» կապիտա-
լիզմի վերաբերյալ եղած բառախաղությունները։ Դրանք բոլորն էլ անպետք
միջոցներով կատարվող փորձեր են։ Փաստերից խույս տալ չի կարելի, իսկ
փաստերը խոսում են այն մասին, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներում
բնակչության 1 տոկոսի ձեռքին է գտնվում ամբողջ ազգային հարստության
59 տոկոսը, իսկ բնակչության 87 տոկոսին բաժին է ընկնում ազգային հա-
րստության միայն 8 տոկոսը։ Անգլիայում պաշտոնական տվյալների հա-
մաձայն բնակչության մեկ տասներորդական մասի՝ ամենից ավելի հարուստ
մասի բաժինը կազմել է ազգային եկամուտի 34 տոկոսը, իսկ երկրի բնակ-
չության կեսի՝ աշխատավորության եկամուտներն ընդամենը 21 տոկոս են
կազմել։ Ֆրանսիայի ազգային եկամուտի մեջ աշխատավարձի բաժինը 1952
թվականին ընկավ մինչև 30 տոկոս՝ 1938 թվականի 48 տոկոսի դիմաց։
«Ժողովրդա-կապիտալիստական» լարախաղացությունը ի վիճակի չէ արդիա-
կանության օրակարգից հանել գլխավորը և հիմնականը, այն, որ սոցիա-
լիզմը դարձել է կենդանի իրողություն, ռեալ իրականություն, իսկ կապի-
տալիզմը բարոյապես սնանկացել է, խիստ կրճատվել է նրա տիրապետու-
թյան ոլորտը։ Ժողովուրդները, առանձնապես գաղութային ժողովուրդները,
սոցիալիզմի մեջ տեսան այն սիստեմը, որը մինչև վերջ ազատագրում է աշ-
խատավորներին իմպերիալիզմի շղթաներից և հնարավորություն է տալիս
հաջողությամբ, պլանաչափ զարգացնելու հասարակության արտադրողական
ուժերը։

Քանի որ կապիտալիզմը վարկաբեկված է ժողովրդական մասսաների
աչքում, նրա պաշտպանության գծերից մեկն է դարձել խորամանկ, խիստ
նուրբ քողարկումը։ Նրա իդեոլոգները ճգնում են խցկվել, թափանցել սոցիա-
լիզմի լագերը։ Նրանք պատրաստ են իրենց թեորիական սպառազինության
մեջ վերցնել ամեն մի այնպիսի հայացք, որը էապես չի շոշափում կապի-
տալիզմի հիմունքները, անկախ այն բանից, թե պաշտոնապես ինչպես կկոչ-
վեն այդ գաղափարները—կապիտալիստակա՞ն, թե հակակապիտալիստա-
կան։ Կապիտալիզմը նույնիսկ պատրաստ է սոցիալիստական հագուստներ
հագնել, ինչպես գայլը՝ գառան մորթի։ Բանն այնտեղ է հասել, որ ԱՄՆ-ի
պետական քարտուղար Դալլեսը բացահայտ համակրանքով և թաքուն հույ-
սով բարբաջում է այսպես կոչված՝ «ազգային կոմունիզմի» մասին։ Տրագի-
կոմիկ մի վիճակ։ Բայց հենց այդտեղ էլ այժմ զգացվում է այն հիմնական
լծակը, որի օգնությամբ բանվոր դասակարգի թշնամիները կցանկանային
դեպի ետ տանել մարդկության բախտը, առավել մեծ վնաս հասցնել սոցիա-
լիզմի գործին։

Լավ հայտնի են կոմունիզմը և Սովետական Միությունը վարկաբեկելու
համար ռեակցիոն ուժերի փորձերը, որ արվում էին ՍՄԿԿ XX համագումա-
րում ծավալված անհատի պաշտամունքի քննադատության կապակցությամբ։
Այդ կեղտոտ կամպանիայի նպատակը պարզ էր. օգտագործել Սովետական
Միության Կոմունիստական պարտիայի ինքնաքննադատությունը կոմունիս-
տական շարժումը պառակտելու, արտասահմանյան երկրների կոմունիս-
տական պարտիաները մեր պարտիային հակադրելու, սոցիալիզմի կրախի



վերաբերյալ զրպարտչական պրոպագանդայով կոմունիստների շարքերում
պառակտում մտցնելու համար։ Այժմ առանձնապես հրահրվում են «ազգային
կոմունիզմի» կեղծ ու անհիմն գաղափարները։ Մինչդեռ մարքսիստական
սոցիոլոգիայից թեկուզ մի փոքր բան հասկացող ամեն մի մարդու համար
պարզ է, որ «ազգային կոմունիզմը» ոչ այլ ինչ է, եթե ոչ նրբին բուրժուական
նացիոնալիզմ։ Բուն իսկ «ազգային կոմունիզմ» տերմինը տրամաբանական
անհեթեթություն է։ Կոմունիզմն իր բնույթով միջազգային, ինտերնացիոնալ
հասկացություն է, այլապես նա աներևակայելի է։

Կոմունիզմը, գիտականորեն հիմնավորված մարքս-լենինյան ուսմունքը
միշտ էլ ընդգծել է կոմունիզմի ամենահիմնական սկզբունքների ունիվերսալ
նշանակությունը։ Այդ ուսմունքը ցույց է տալիս, որ արդի հասարակության
մեջ դասակարգային անհավասարության, մարդու կողմից մարդու շահա-
գործման ու ստրկացման պատճառները կապիտալիստական արտադրաեղա-
նակի մեջ են։ Շահագործական հասարակական սիստեմին այժմ հակադրված
է մի նոր հասարակարգ, որտեղ արտադրության գործիքների ու միջոցների
մասնավոր սեփականության տիրապետությունը փոխարինված է հասարա-
կական սեփականության տիրապետությամբ։ Վաղ թե ուշ այդ հասարակար-
գին, որի սկիզբը դրել է Ռուսաստանում 1917 թվականի Հոկտեմբերյան
ռեվոլյուցիան, կհասնեն անխտիր բոլոր երկրները։

Համաշխարհային կոմունիստական շարժման և ՍՍՌՄ-ում ու ժողովրդա-
կան դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական շինարարության բազմամ-
յա ամբողջ պատմությունը և կենդանի պրակտիկան համոզիչ կերպով հաս-
տատում են Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ «մեր ռեվոլյուցիայի որոշ հիմնական
գծերը ունեն ոչ թե տեղական, ոչ թե ազգային-առանձնահատուկ, ոչ թե միայն
ռուսական, այլև միջազգային նշանակություն»։ Սոցիալիստական ռեվոլյուցիա-
յի հաղթանակի և նոր հասարակության ստեղծման այդպիսի կարևորա-
գույն ընդհանուր գծեր ու օրինաչափություններ են հանդիսանում, ինչպես
ցույց է տալիս հասարակական զարգացման փորձը, պրոլետարիատի դիկ-
տատուրան, այսինքն՝ բանվոր դասակարգի քաղաքական իշխանության հաս-
տատումն իր ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ,
այն դաշինքի ամեն կերպ ամրապնդումը, որ բանվոր դասակարգը կնքում է
գյուղացիության հիմնական մասսաների և աշխատավորության մյուս խավե-
րի հետ, կապիտալիստական սեփականության վերացումը և արտադրության
հիմնական միջոցների սոցիալիստական հասարակական սեփականության
հաստատումը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, էկոնոմիկայի՝
դրանից բխող պլանային բնույթի հաստատումը, սոցիալիստական պետության
ամրապնդման միջոցով սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումների վճռական
պաշտպանությունը դասակարգային թշնամիների ոտնձգություններից։ Իհարկե,
այդ ընդհանուր գծերն ու օրինաչափությունները չեն բացառում, որ յուրաքան-
չյուր առանձին երկրում սոցիալիստական հասարակության կառուցման ձևերն
ու եղանակները կարող են ունենալ և, դեռ ավելին, անպայման պետք է ունե-
նան հենց այդ երկրների զարգացման կոնկրետ առանձնահատկություններով
պայմանավորված տարբերություններ։ Ամեն մի երկիր իր ավանդն է մտցնում
սոցիալիզմի թեորիայի ու պրակտիկայի մեջ, դրանով իսկ հաստատելով մարք-

սիզմ-լենինիզմի ստեղծագործական բնույթը։ Այդ բանը մեծ ուժով ընդգծել է ՍՄԿԿ XX համագումարը։

Սոցիալիզմի կառուցման ուղու վրա սովետական ժողովրդի, նրա Կոմունիստական պարտիայի կուտակած մեծ փորձը համաշխարհային բանվորական և կոմունիստական շարժման ամենաարժեքավոր սեփականությունն է։ Եվ մարքս-լենինյան պարտիաները, միջազգային պրոլետարիատը բարձր են գնահատում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի դերը, որպես սոցիալիզմի ուղիով բոլոր երկրների առաջխաղացման ելակետի, բարձր են գնահատում սոցիալիզմի համար մեր Հայրենիքի ժողովուրդների մղած պայքարի փորձի նշանակությունը։ 1956 թվականի դեկտեմբերի 29-ին «Ժենմինժիբաո» թերթի հրապարակած խմբագրական հոդվածում ասվում էր. «Սովետական Միության զարգացման փաստերը վկայում են այն մասին, որ ռևոլյուցիայի և Սովետական Միության շինարարության հիմնական փորձը մեծ հաջողություն է, մարդկության պատմության մեջ մարքսիզմ-լենինիզմի առաջին հաղթական հիմնը է, որը հնչեց ամբողջ տիեզերքով մեկ»։ Այդ ոգով է խոսել Իտալիայի Կոմպարտիայի վերջերս կայացած համագումարում տված իր զեկուցման մեջ ընկ. Պալմիրո Տոլյատին։ Այդպիսին է ամենատարբեր երկրների կոմունիստների տեսակետը։

Որոշ բացառություն են կազմում հարավսլավիայի առանձին ընկերներ, որոնք ուղղակի հակադիր դիրք են գրավել, որը — ցանկանում են նրանք այդ, թե չեն ցանկանում — ընդառաջում է սոցիալիստական իդեոլոգիայի վրա հարձակվող ռեակցիայի ստրատեգիական կուրսին։ Նրանք, ըստ էության, վերանայում, ռևիզիայի են ենթարկում մարքս-լենինյան ուսմունքը բանվոր դասակարգի պարտիայի ու սոցիալիստական պետության մասին, պրոլետարիատի դիկտատուրայի մասին, սոցիալիստական տնտեսավարության ու պետական կառավարման լենինյան սկզբունքների մասին, բանվոր դասակարգի ազգային ու միջազգային խնդիրների զուգակցման մասին, փորձելով մարքսիզմի «ստեղծագործական զարգացման» դրոշի ներքո բոլորովին ջնջել ՍՄԿՊ պատմական փորձը, որը ստուգվել ու հաստատվել է վերջին տասնամյակներում հասարակական զարգացման ամբողջ պրոցեսով։ Հարավսլավական «Կոմունիստ» տեսական ամսագրում Մ. Թոդորովիչը զարգացրել է «մարդկային հասարակության դեպի սոցիալիզմը կատարվող հասունացման ու տրանսֆորմացիայի ընդհանրական պրոցեսի» թեորիան, մի թեորիա, որի մեջ ինչ-ինչ պատճառներով տեղ չի գտել դասակարգային պայքարը։ Նման «նորամուծությունների» հետ մեկտեղ կասկածի տակ է առնվում այն ամենը, ինչը որ մինչև այժմ մարքսիզմի անկյունաքարն էր համարվում, իսկ այդպիսի կասկած հայտնելու իրավունքը համառորեն հիմնավորվում է «քննադատության ազատության» անհրաժեշտությամբ։ Ոմանք ևս դեռ կրկնում են այդ նշանաբանը։ Օրինակ, այդ նշանաբանը փառաբանելով երկինք են բարձրացնում լեհական «Պո պրոստու» շաբաթաթերթում, որտեղ ոմն Սեկերսկայա անում է բավական ցինիկ հայտարարություններ, որոնք միայն մեկ իմաստ ունեն, թե լենինիզմն այսպես թե այնպես հնացել է, այդ կապակցությամբ էլ պահանջվում է վերանայել այն...

Կոմունիստներն առաջին անգամ չեն հանդիպում քննադատության ազատության պարտիական լոզունգով կատարվող ռևիզիոնիստական սպեկուլյացիաների։ Սրանից դեռ ավելի քան կես դար առաջ այդպիսի սպեկուլյացիաների դեմ էր մարտնչում Վ. Ի. Լենինը։ «Ի՞նչ անել» գրքում Լենինը պերճախոս կեր-



պով հայտարարեց. «Ով որ դիտավորյալ կերպով չի փակում իր աչքերը, նա չի կարող չտեսնել, որ նոր «քննադատական» ուղղությունը սոցիալիզմի մեջ ոչ այլ ինչ է, բայց եթե օպորտունիզմի նոր տարատեսակը։ Եվ եթե մարդկանց մասին դատենք ոչ այն փայլուն համազգեստով, որ նրանք իրենք իրենց հագցրել են, ոչ այն էֆեկտավոր կոչանունով, որ նրանք իրենք յուրացրել են, այլ նրանով, թե ինչպես են վարվում նրանք և ինչ են իրոք քարոզում,— ապա պարզ կլինի, որ «քննադատության ազատությունը» օպորտունիստական ուղղության ազատությունն է սոցիալ-դեմոկրատիայի մեջ, սոցիալ-դեմոկրատիան ռեֆորմների դեմոկրատական պարտիա դարձնելու ազատություն, սոցիալիզմի մեջ բուրժուական գաղափարներ և բուրժուական տարրեր արմատացնելու ազատություն»։ Լենինյան այս խոսքերը այսօր էլ իրավացի են բոլոր ամեն գույնի ու երանգի ռևիզիոնիստներին գնահատելու համար, որոնք իրենց օպորտունիզմը քողարկում են «քննադատության ազատության» լոզունգով։

Սոցիալական երկու համաշխարհային սիստեմների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի գոյությունը անհերքելի պատմական փաստ է։ Անհնարին է անջրպետվել այդ փաստից։ Ուստի իդեոլոգիայի բնագավառում կոմունիստները չպետք է ունենան անտագոնիստական հակասությունները հաշտեցնելու թեկուզ ամենաչնչին տենդենցն անգամ։ Ամբողջ աշխարհում սուր և լարված պայքար է գնում «մարդկանց հոգիների համար», ինչպես սիրում են արտահայտվել կապիտալիզմի որոշ գաղափարական զինակիրներ։ Այդ պայքարից էլ խուսափել անհնարին է։ Հարկ է լինում նորից ու նորից կրկնել այն այբբենական ճշմարտությունները, որ բուրժուական իդեոլոգիան, ըստ էության, արտահայտում է տիրապետող փոքրամասնության շահերը և ամրապնդում է աշխատավոր մեծամասնության ճնշումը։ Ուստի սոցիալիստական և բուրժուական իդեոլոգիաները փոխադարձաբար բացառում են մեկը մյուսին։ Նրանց խաղաղ գոյակցություն չկա և չի կարող լինել։

Վերջին ժամանակներս մենք նորից վկա եղանք հակառևոլյուցիոն ֆաշիստական կատաղության պոռթկման։ Ռեակցիան սարսափելի գազանություններով ճգնում էր նորից ծնկի բերել շահագործումից ազատ հունգարացի աշխատավորներին, վերականգնել կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը։ Եվ միթե՞ այդ իրադարձություններում կարելի է չտեսնել այն պարզ ու որոշակի ջրբաժան գիծը, որն անցնում է երկու պայքարող լագերների միջև, որոնել մի ինչ որ փութանցիկ, գոյություն չունեցող «միջին գիծ»։ Միթե՞ կարելի է բուրժուական պրոպագանդայի խաբեական լոզունգների հետևում չտեսնել կապիտալիզմի ջատագովների ձգտումները՝ ջլատելու աշխատավորների միասնությունը, նրանց միջազգային համերաշխությունը։

Ռեակցիոն իդեոլոգիայի խորամանկությունների մերկացումը միշտ էլ կազմել է և կազմում է մարքս-լենինյան թեորիայի կարևորագույն խնդիրներից մեկը։ Գիտական կոմունիզմի հիմնադիրներն ապացուցել են, որ թեորիական պայքարը դասակարգային պայքարի կարևորագույն ձևերից մեկն է։ Մարքս-լենինյան թեորիայի անաղարտության համար մղվող պայքարը, ակտիվացող իմպերիալիստական ռեակցիային տրվող վճռական հակահարվածը այժմ կարևոր նշանակություն ունի նաև այն պատճառով, որ մեր Սովետական երկրում դեռևս պատահում են կոմունիզմին, մարքս-լենինյան աշխարհայացքին խորթ հայացքների առանձին դրսևորումներ։ Մեզանում ևս կան մարդիկ, որոնք, եր-

բեմն էլ չկարողանալով ճիշտ բացատրել հասարակական կյանքի նոր և առանձին դեպքերում խիստ սուր երևույթները, թույլ են տալիս շեղումներ մարքսիզմ-լենինիզմից։

Գաղտնիք չէ, որ մեզանում ևս ոմանք զբաղվում են սխոլաստիկ վերացական դատողություններով «առհասարակ» դեմոկրատական ազատությունների մասին, այդ «ազատությունները» դիտելով որպես ինչ որ ամպածրար, ռեալ իրադրությունից կտրված հասկացություն։ Բայց մի՞թե կարելի է մոռանալ, որ հենց բուրժուազիան է մշտապես աչքի ընկել իր գիշատիչ իդեոլոգիան ու պրակտիկան ազատության, հավասարության ու եղբայրության հումանիստական հագուստներով զուգելու հմտությամբ։ Ազատության բուրժուական լոզունգը նշանակում է ոչ այլ ինչ, եթե ոչ՝ ազատություն կապիտալիստների համար շահագործելու վարձու բանվորներին, իսկ ապրուստի միջոցներից զուրկ աշխատավորներին այդ լոզունգը բերում է իր աշխատուժը վաճառելու և սովից մեռնելու միջև ընտրություն կատարելու ազատություն։ Կապիտալիզմի ոչընչացման և սոցիալիզմի կառուցման խնդիրը պահանջում է պայքարել հանուն մարդկանց իսկական ազատության, այսինքն՝ հանուն նրանց ազատության՝ շահագործումից։ Միայն այդ բազայի վրա էլ կարող են առաջանալ աշխատավորների իսկական հավասարությունն ու եղբայրությունը, համատեղ և կազմակերպված կերպով իսկական մարդկային կյանք կառուցող և շահագործումից ազատ մարդկանց ընկերական համագործակցությունը և սոցիալիստական փոխօգնությունը։ Այդ խնդրի իրականացումը հնարավոր է միայն պրոլետարիատի դիկտատուրայի հիման վրա, որի նպատակն է պայքարել շահագործողների դեմ, ամրապնդել բանվորների ու աշխատավոր գյուղացիների անխախտ դաշինքը, լիակատար դեմոկրատիա զարգացնել բոլոր աշխատավորների համար, զարգացնել նրանց նախաձեռնությունը և ակտիվությունը նոր կյանքի շինարարության գործում։

Սոցիալիստական իդեոլոգիան մարդկային հարաբերությունների մակերեսի տակ բացահայտում է այդ հարաբերությունների էությունը, այս կամ այն կատեգորիայի բանվորների անմիջական տնտեսական շահերի հետևում՝ ամբողջ բանվոր դասակարգի արմատական այն շահերի ընդհանրությունը, որոնք արտացոլում են ամբողջ հասարակության նյութական կյանքի զարգացման օբյեկտիվ պրոգրեսիվ պահանջները։ Միայն այդպիսին կարող է լինել իրականության նկատմամբ ցուցաբերվող գիտական մոտեցումը։

Այժմ յուրաքանչյուր սովետական մարդ պարզորոշ տեսնում է, որ մեր այսօրը ավելի լավ է քան մեր երեկը, իսկ վաղը ավելի լավ կլինի, քան այսօրը։ 1956 թվականը նշանավորվեց սովետական մարդկանց կյանքի բարելավման կարևոր միջոցառումներով։ Պետական կենսաթոշակների վերաբերյալ օրենքը, աշխատանքային օրվա կրճատումը հանգստի և տոն օրերի նախօրյակներին, վեցժամյա աշխատանքային օրվա անցնելու սկիզբը, աշխատավորների ցածր վարձատրվող կատեգորիաների աշխատավարձի բարձրացումը, ուսման վարձի վերացումը միջնակարգ ու բարձրագույն դպրոցներում և սովետական կառավարության մի շարք այլ միջոցառումները ուրախացնում են մեր մարդկանց սրտերը։ Պարտիան և կառավարությունը ամենևին էլ չեն հանգստանում ձեռք բերածով։ Մշտական առաջընթացը և նորանոր, ավելի բարձր նպատակներին հասնելը սոցիալիստական սիստեմին օրգանապես հատուկ գծեր են։



Սակայն, գտնվում են մարդիկ, որոնք քաղքենիական չափանիշով են մոտենում իսկական գիտական վերլուծություն պահանջող կյանքի լուրջ հարցերին։ Թույլատրելի՞ է արդյոք, նույնիսկ ակամա կերպով, ձայնակցել կոմունիզմի բացահայտ թշնամիների զրպարտությանը և սպառնալիքներին, նրա անկայուն բարեկամների կշտամբանքներին և ծուռ հայելու մեջ պատկերացնել մեր սովետական սոցիալիստական հասարակությունը։ Բայց չէ՞ որ տրամաբանորեն հենց այդտեղ էին տանում, մասնավորապես, ծավալված ստեղծագործական դիսկուսիաների ժամանակ որոշ գրողների ունեցած ելույթները։ Մեր պարտիան և սովետական հասարակայնությունը չեն կարող քաղաքական անհոգություն ցուցաբերել և սովետական ժողովրդի մեծ նվաճումների նկատմամբ հարգանքից զուրկ վերաբերմունքի կողքով անցնել։

Մեր հասարակայնությունը չի կարող վճռական հակահարված չտալ այն առանձին, թեկուզ և սակավաթիվ, հարձակումներին, որ կատարվում են սոցիալիստական իդեոլոգիայի, այդ թվում գրականության ու արվեստի, հիմնական սկզբունքներից մեկի՝ պարտիայի ղեկավար դերի վրա։ Մի ժամանակ Գորկին հիշեցնում էր գրողներին, որ գրականությունը պետք է հասկանա իր դերը որպես է՛լ ավելի մեծ էներգիայի խթանողի դեր։ Իսկ այդ բանը աներևակայելի է առանց պարտիայի գաղափարական ղեկավարության։

Սակայն, գտնվում են առանձին գրականագետներ, որոնք փորձում են կասկածի տակ առնել այս ճշմարտությունը։ Դեպի այդ են տանում, օրինակ, գրող Կ. Սիմոնովի ասույթները նրա այն հոդվածում, որը հրապարակվել է «Նովի միր» ամսագրի 1956 թվականի № 12-ում։ Կ. Սիմոնովը ճգնում է ապացուցել, թե Ա. Ֆադեևը, այդ մշտապես խոհուն և իր նկատմամբ պահանջկոտ գրողը, յուրացնելով պարտիական քննադատությունը և ստեղծագործաբար վերամշակելով «Երիտասարդ գվարդիա» վեպը, իբր թե միայն վատացրել է այդ գործը հենց այն պատճառով, որ մտցրել է այնպիսի նոր գլուխներ, որոնք արտացոլում են Կոմունիստական պարտիայի, նրա տեղական կազմակերպությունների ղեկավար և ուղղություն տվող դերը Հայրենական Մեծ պատերազմի ծանր տարիներին։ Ինչո՞ւ համար է Կ. Սիմոնովը կասկածի տակ առնում մեր ականավոր գրողներից մեկի հեղինակային կամքը։ Արդյոք ո՞չ նրա համար, որ կրկնի, վերականգնի այն հին, վաղուց դատապարտված տենդենցները, որոնք վերջին հաշվով ուղղված են գրականությունը «պարտիական խնամակալության» տակից «ազատելու» նպատակին, այն այսպես կոչված՝ ստեղծագործության ազատությունը քարոզելու նպատակին, որի մասին այժմ այդքան շատ են բղավում բուրժուական լիբերալները արտասահմանում։ Առանձին գրողներ թույլ են տալիս այնպիսի ելույթներ, որոնք պարունակում են 1946—1948 թվականների իդեոլոգիական հարցերի շուրջը մեր պարտիայի Կենտկոմի ընդունած որոշումների ուղղակի պարսավում։

Մեծ Լենինը առաջնահերթ նշանակություն էր տալիս պարտիայի կողմից գրական պրոցեսին ցույց տված ղեկավարությանը։ Նա մատնանշում էր. «Ամեն մի արվեստագետ... իրավունք ունի ստեղծագործելու ազատորեն, համաձայն իր իդեալի, անկախ որևէ բանից։— Բայց, հասկանալի է, մենք կոմունիստներ ենք։ Մենք չպետք է ձեռքներս ծալած կանգնենք և թույլ տանք քաոսին ծավալվելու ամենուրեք։ Մենք պետք է ամբողջությամբ պլանաչափ ղեկավարենք այդ պրոցեսը և ձևավորենք նրա արդյունքները»։

Չին կոմունիստների փորձը նույնպես հաստատում է լենինյան այս դրույթը։ Խոսելով «Թող ծաղկեն բոլոր ծաղիկները, թող մրցեն բոլոր գիտնականները» կուրսի իրականացման մասին, ընկեր Չժոու Էն-լայը նշել էր. «Իհարկե, մենք այդպես վարվում ենք սոցիալիստական կուլտուրան զարգացնելու ու հարստացնելու նպատակով և բնավ ո՛չ այն վերացնելու կամ թուլացնելու նպատակով։

Լենինը երբեք չէր թուլացնում նեխած բուրժուական կուլտուրայի սուր քննադատությունը։

Ներկայումս իդեոլոգիական ճակատում, ինչպես և մյուս բոլոր ճակատներում, իմպերիալիզմը սուր պայքար է մղում մեր դեմ։ Ամեն մի անգործունեություն այդ բնագավառում կարող է չափազանց վնասակար լինել»։

Գրականությունը հարազատ պարտիական գործ է։ Կոմունիստական նպատակասլացությունը ապահովում է տաղանդների բազմակողմանի զարգացումը, բարձր գաղափարայնությունը և գեղարվեստական ուժը արվեստի բոլոր բնագավառներում։ Սովետական գրողները վճռական հակահարված են տալիս ամեն տեսակ այն փորձերին, որոնք նպատակ ունեն գրականությունը շեղել իր գլխավոր գծից։ Այդ են վկայում գրողների կազմակերպություններում վերջին ժամանակներս տեղի ունեցած ժողովները։

Բուրժուական իդեոլոգիայի մերկացման գործում, գիտական կոմունիզմի սկզբունքների, սովետական աշխարհայացքի թեորիական հիմքերի պաշտպանության գործում մեծ դեր ունի կատարելու մեր մամուլը։ Որոշ տպագիր օրգաններ, դժբախտաբար, թույլ են պայքարում բուրժուական թեորիաների ու հայացքների դեմ, աղավաղումներ են թույլ տալիս փիլիսոփայական, տնտեսագիտական և պատմական կարևոր պրոբլեմների մեկնաբանման մեջ, առանձին հոդվածներում պարտիականության սկզբունքը փոխարինվում է այդ պրոբլեմների օբյեկտիվիստական լուսաբանումով։

Հասկանալի է, որ կարող է և պետք է լինեն գիտական ու ստեղծագործական դիսկուսիաներ, որոնց ընթացքում հայտնվում են տարբեր, երբեմն էլ վիճելի տեսակետներ։ Բայց գիտական և հասարակական-քաղաքական օրգանները պետք է ելնեն հետևյալ անխախտ կանոնից. յուրաքանչյուր հարց քննելիս ամուր կանգնած լինել մարքսիզմ-լենինիզմի բազայի վրա և վճռականորեն մերկացնել բուրժուական հայացքները, ինչ քողի տակ էլ սրանք խցկվեն։ Այս պայմանը պահպանելու դեպքում միայն ամսագրերը կգրավեն ճիշտ, սկըզբունքային դիրք, առաջ կմղեն թեորիական միտքը, մեր կադրերը և բոլոր սովետական մարդկանց կդաստիարակեն սոցիալիստական իդեոլոգիայի ոգով։

Մեր իդեոլոգիական աշխատանքը պետք է բոլոր տեղամասերում էլ կրի մարտական, հարձակողական բնույթ, որը միայն կարող է ապահովել մարքս-լենինյան գաղափարների հաղթանակը։ Եվ սխալ կլիներ կարծել, թե պարտիական որոշումների կատարումը, պարտիայի գծի, նրա իդեոլոգիայի պաշտպանությունը սոսկ պարտիական օրգանների գործն է։ ՍՄԿՊ Կանոնադրությամբ յուրաքանչյուր կոմունիստի պարտավորեցնում է լինել պարտիական որոշումների կատարման համար ակտիվ պայքարող։ Կոմունիստները կոչված են վճռականորեն պայքարելու անկարգապահության, թափթփվածության, պոչականության դրսևորումների, քաղքենիական տրամադրությունների դեմ, ում կողմից էլ որ ելնեն դրանք, մերկացնելու դեմագոգիկ և քաղաքականապես սխալ ելույթները և հակահարված տալ դրանց։ Լինել իսկական կոմունիստ-լենինյան, նշանակում է անհաշտ վերաբերմունք ունենալ դեպի այն ամենը, ինչ հակառակ է պարտիայի քաղաքականությանը, նրա իդեոլոգիային։ Յուրաքանչյուր կոմունիստ, որտեղ էլ նա գտնվի, պարտավոր է մշտապես և աներեր կերպով պաշտպանել մարքս-լենինյան գաղափարների մեծ ճշմարտությունը։ Պարտիական կազմակերպությունները չեն կարող անցնել պարտիայի կազմակերպական սկզբունքների խախտման փաստերի կողքով, պարտիայի առանձին անդամների գաղափարական տատանումների և քաղքենիական վարքագծի կողքով։ Իհարկե, այս դեպքում պետք է կարողանալ տեսնել, թե ով է գիտակցաբար «ջուր պղտորում» և ով է մոլորվում, և, մերկացնելով առաջիններին, համբերատարությամբ, փաստարկումներով հիմնավորված համոզել երկրորդներին, պայքարել հանուն այն բանի, որ նրանք ճիշտ յուրացնեն մեր քաղաքականությունը, սոցիալիստական իդեոլոգիան։



Սոցիալիստական իդեոլոգիան աշխատավոր մասսաները յուրացնում են ո՛չ տարերայնորեն, ո՛չ ինքնահոսով, ո՛չ ինքն իրեն։ Այդ իդեոլոգիան հաստատվում է բուրժուական իդեոլոգիայի դրսևորումների դեմ մղած անհաշտ պայքարում, մասսաների մեջ պարտիայի տարած գաղափարական դաստիարակչական ակտիվ աշխատանքի հետևանքով։ Հասարակության մեջ տարերայնորեն ստեղծվում են միայն այն պատկերացումները, հասկացությունները, կյանքի նկատմամբ ունեցած հայացքները, որոնք հասարակական հարաբերությունների մակերեսն են արտացոլում։ Դրանք ամենից առաջ հանդես են գալիս այն մարդկանց քաղքենիական հայացքների ձևով, որոնք իրենց անձնական շահերի համար են պայքարում։ Այդպիսի հայացքներն ըստ էության բուրժուական են, որովհետև բուրժուական հասարակության մեջ դրանք հիմնականում համընկնում են տիրապետող դասակարգի եսասիրական հայացքներին, ուստի և այդ դասակարգը ամեն կերպ նպաստում է դրանց տարածմանը։ Հասկանալի է, որ այդ հայացքների դեմ մղվող պայքարում կոմունիստները պետք է ավանգարդային տեղ գրավեն։ Նրանց կարևորագույն պարտքը և պարտականությունն է՝ վճռական հակահարված տալ այն բոլորին, ովքեր ձգտում են մեր դժվարությունները օգտագործել ի վնաս կոմունիզմի գործի, նրանք կոչված են աշխատավորներին համբերատարությամբ, հաստատակամորեն դաստիարակել կոմունիստական գիտակցականության ոգով։

Մենք առաջ ենք գնում կուռ շարքերով, չվախենալով դժվարություններից, հաղթահարելով ամեն տեսակ արգելքներ։ Պարտիան անշեղորեն իրականացնում է ՍՄԿՊ XX համագումարի նշած իր լենինյան կուրսը, որը նպատակ ունի ամեն կերպ զարգացնել սոցիալիստական արտադրությունը և բարձրացնել բնակչության բարեկեցությունը, է՛լ ավելի ծավալել սովետական դեմոկրատիան, ամեն կերպ ամրապնդել սոցիալիստական օրինականությունը, բարձրացնել տեղական պարտիական, սովետական տնտեսական և պրոֆմիութենական կազմակերպությունների դերը, ծավալել ժողովրդական նախաձեռնությունը և աշխատավորների ինքնագործունեությունը, հաղթահարել անհատի պաշտամունքի հետևանքները, հաստատուն կերպով պահպանել պարտիական կյանքի լենինյան նորմերը։

Սովետական ժողովուրդը, նրա Կոմունիստական պարտիան հանդես են գալիս համախմբված ճակատով սոցիալիզմի լագերի երկրների աշխատավոր-

ների հետ, միջազգային բանվորական շարժման հետ։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սրբազան գործի նկատմամբ ունեցած հավատարմությամբ է տոգորված սովետական ներքին ու արտաքին քաղաքականության ամեն մի քայլը։ Ոչ ոքի չի հաջողվի պառակտել սոցիալիստական պետությունների մեծ համագործակցությունը, ամբողջ աշխարհի կոմունիստների միասնական ճակատը։ Վերջին ժամանակվա մի շարք իրադարձություններ ակնառու կերպով ցույց տվեցին, որ ազատ ժողովուրդների բարեկամությունը ոչ միայն չի թուլացել, այլև ամրապնդվում է օրեցօր։

Այն մեծ ուժը, որը ցեմենտում է սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը, սոցիալիստական իրավակարգի երկրների և միջազգային ամբողջ կոմունիստական շարժման միասնությունը, մարքսիզմ-լենինիզմն է, սոցիալիստական իդեոլոգիան՝ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության իդեոլոգիան, պրոլետարական ինտերնացիոնալիզմի իդեոլոգիան։ Ի պատասխան բանվոր դասակարգի թշնամիների ոտնձգությունների, ՍՍՌՄ և ամբողջ աշխարհի աշխատավորները ավելի են բարձրացնում մարքս-լենինյան իդեոլոգիայի փորձված դրոշը, որի ներքո մարդկությունը շատ բան է ձեռք բերել իր ազատագրման համար և որի ներքո նա վստահորեն ընթանում է դեպի լուսավոր ապագան։

---

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԴԵՐԸ

Այս տարի լրանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասուն տարին։ Դա մեծագույն իրադարձություն է սովետական ժողովրդի, աշխարհի առաջադեմ մարդկության կյանքում։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի համաշխարհային-պատմական հաղթանակով մեր երկրում հաստատվեց սովետական իշխանություն՝ բանվորների և գյուղացիների, աշխատավոր ժողովրդի իշխանություն։ Սովետական պետության գոյության և զարգացման անցած տարիների պատմական փորձը լիովին հաստատեց լենինյան այն դրույթը, որ Սովետներն իրենցից ներկայացնում են աշխատավորների համապարփակ մասսայական կազմակերպություն, պետական իշխանության ամենադեմոկրատական ձևը, որն ապահովում է ժողովրդի լայն ներգրավումն ու վճռական մասնակցությունը պետության դեմոկրատական կառավարման մեջ։

Աշխատավորների դեպուտատների Սովետները սովետական ժողովրդի մեծագույն նվաճումն են, նրա հաղթանակը։ Սովետական իշխանությունը հանդիսանում է պրոլետարական դիկտատուրայի պետական ձևը, որի երևան գալով, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը, «բուրժուական-դեմոկրատական պառլամենտարիզմի դարաշրջանը վերջացավ, սկսվեց համաշխարհային պատմության նոր գլուխը՝ պրոլետարական դիկտատուրայի դարաշրջանը»։

Սովետական հասարակարգը հանդիսանում է իսկական ժողովրդական, ամենից դեմոկրատական կարգը, ուր արտադրության միջոցները պատկանում են ժողովրդին, նա է հանդիսանում իր երկրի, իր կյանքի տերն ու տնօրենը։ Այլ է վիճակը կապիտալիստական պետություններում, որտեղ արտադրության միջոցները, երկրի հարստությունը գտնվում են մի խումբ շահագործողների ձեռքում։ Հասկանալի է, որ բուրժուական ծախու գրչակների կողմից փառաբանված բուրժուական դեմոկրատիան ոչ այլ ինչ է, եթե ոչ ձևական, երեսպաշտ դեմոկրատիա, իր էությամբ՝ հակաժողովրդական։ Դա դեմոկրատիա է բուրժուազիայի ու նրա սպասարկուների համար, որտեղ աշխատավորական լայն մասսաները հեռու են պետության կառավարման գործից։ Ի տարբերություն բուրժուական դեմոկրատիայի, սովետական դեմոկրատիան ապահովում է սոցիալիստական հասարակության բոլոր անդամների իրական ազատությունն ու իրավահավասարությունը, արտահայտում է նրանց շահերն ու կամքը։ Աշխատավորների դեպուտատների Սովետներն ապահովում են մեր լայնածավալ Հայրենիքում բնակվող բոլոր ժողովուրդների մասնակցությունը երկրի կառավարմանը, ժողովրդական տնտեսության ղեկավարությանը։

Կոմունիստական պարտիան և կառավարությունը հետևողականորեն ու հաստատակամորեն իրականացնում են սովետական դեմոկրատիայի հետագա զարգացումը։ ՍՄԿՊ XX համագումարն ընդգծեց, որ «Կոմունիստական շինա-

*թարության մեծ խնդիրները պահանջում են աշխատավորների ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության հետագա բարձրացում, մասսաների է՛լ ավելի լայն մասնակցություն պետության կառավարմանը, նրա ամբողջ կազմակերպչական-տնտեսական գործունեությանը։ Դրա համար անհրաժեշտ է ամեն կերպ զարգացնել սովետական դեմոկրատիզմը, հաստատակամորեն բարելավել սովետական բոլոր օրգանների աշխատանքը կենտրոնում ու տեղերում, ամրապնդել նրանց կապը մասսաների հետ»։ Կենսագործելով համագումարի այս ցուցումները՝ իրականացվում են մի շարք միջոցառումներ միութենական ռեսպուբլիկաների իրավունքների և կոմպետենցիայի ընդարձակման, սոցիալիստական օրինականության խստիվ պահպանման ու ամրապնդման, տեղերի նախաձեռնության է՛լ ավելի զարգացման, պլանավորման սիստեմի վերակառուցման ուղղությամբ և այլն։ ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը միաժամանակ անհրաժեշտ համարեց ավելի ակտիվացնել տեղական Սովետների գործունեությունը, է՛լ ավելի ընդլայնել նրանց իրավունքները։*

*Սոցիալիստական դեմոկրատիզմի հետագա զարգացումը բարձրացրել է աշխատավորների ակտիվությունն ու նախաձեռնությունը, ուժեղացրել է մասսաների վերահսկողությունը Սովետների, նրանց գործադիր օրգանների աշխատանքի նկատմամբ։ Նկատելիորեն աշխուժացել է Սովետների գործունեությունը, բարձրացել է նրանց դերը տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ, ընդլայնվել է կապը ժողովրդի հետ։*

*Մարտի 10-ին տեղի կունենան Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունները։ Դա մեր ռեսպուբլիկայի կյանքում քաղաքական կարևոր իրադարձություն է, որը պետք է ընթանա տեղական Սովետների աշխատանքի հետագա բարելավման ու կատարելագործման, սովետական դեմոկրատիայի հետագա ծավալման նշանաբանով։ Տեղական Սովետների ընտրություններն անց են կացվում քաղաքական և արտադրական այնպիսի վերելքի պայմաններում, երբ սովետական ամբողջ ժողովուրդը, զինված ՍՄԿՊ XX համագումարի և Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումներով, նոր եռանդով ձեռնամուխ է եղել վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվա՝ 1957 թվականի պլանի կենսագործմանը։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի օրերս ավարտված վեցերորդ սեսիան, ամփոփելով սովետական ժողովրդի պայքարի ու ստեղծագործական աշխատանքի մեկ տարվա արդյունքները, հաստատեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1957 թվականի պլանը և պետական բյուջեն։*

*Մեր երկիրը թևակոխում է տնտեսական զարգացման նոր, ավելի բարձր աստիճան, որը համապատասխանում է կոմունիստական շինարարության ժամանակակից էտապին։ Այստեղից բխում է, որ պետք է ամեն կերպ բարելավել ու կատարելագործել պետական պլանավորման պրակտիկան, է՛լ ավելի բարձրացնել մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը, տեղական կազմակերպությունների դերը տնտեսական շինարարության ղեկավարման գործում և տնտեսական մեծ խնդիրները վճռել պետական միջոցների և հասարակական աշխատանքի նվազագույն ծախսումներով։ Ծանր արդյունաբերության հետագա զարգացման, տեխնիկական անընդհատ պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի հիման վրա*



*1957 թվականի պլանը ապահովում է ժողովրդական տնտեսության հետագա վերելքը, բնակչության նյութական բարեկեցության բարձրացումը։ Ընթացիկ տարում մեծ ծավալ է ստանում բնակարանային շինարարությունը. միայն պետության միջոցներով և պետական վարկի միջոցով կառուցվելու է 28 տոկոսով ավելի շատ բնակելի տարածություն, քան կառուցվել է 1955 թվականին։ Միայն մեկ տարում պետական բյուջեից մեր երկրի բնակչությունը զանազան վճարումների և արտոնությունների ձևով կստանա 192 միլիարդ ռուբլի։ Պլանով նախատեսվում է ապրանքաշրջանառության այնպիսի վիթխարի աճ, որ չի եղել անցյալում։ Պետական բյուջեում զգալի չափով իջեցված է բնակչության հարկային վճարումներից ստացվող եկամուտների տեսակարար կշիռը, մեծ չափով ավելանում են սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը հատկացվող գումարները։*

*Կասկած չկա, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիայի որոշումներն առաջ կբերեն աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության նոր հուժկու վերելք ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, գործողության մեջ կդրվեն նոր հզոր ռեզերվներ։*

*Ժողովրդա-տնտեսական վիթխարի խնդիրների հաջող լուծման, աշխատավորական մասսաների ուժերի մոբիլիզացման գործում մեծ է աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դերը։*

*ՍՄԿՊ XX համագումարից հետո նկատելի կերպով աշխուժացել է ռեսպուբլիկայի շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային շատ Սովետների գործունեությունը, բարձրացել է նրանց դերը տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի լուծման մեջ։ Սովետներն սկսել են ավելի մեծ ուշադրություն դարձնել քաղաքների ու գյուղերի բարեկարգմանը, բնակչության անհրաժեշտ կարիքների և պահանջների բավարարմանը։*

*Վերջին ամիսներին տեղական Սովետների սեսիաներում լսվել են շատ գործկոմների հաշվետվությունները, իրենց գործունեության մասին ընտրողներին հաշիվ են տվել շատ դեպուտատներ։ Այդ հաշվետվությունների ժամանակ սուր քննադատության է ենթարկվել Սովետների և նրանց գործադիր կոմիտեների գործունեությունը, բացահայտելով աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունները, միաժամանակ նշելով նրանց աշխատանքի բարելավման միջոցները։ Կրասնոսելսկի շրջանային Սովետի սեսիայում գործկոմի հաշվետվությունը քննարկելիս պարզվեց, որ շրջանային և գյուղական Սովետները լրջորեն չեն զբաղվել կոլտնտեսային արտադրության բարձրացման արմատական հարցերով։ Դրանով պետք է բացատրել, որ անցյալ տարի շրջանում չկատարվեցին հացահատիկի, կարտոֆիլի, ծխախոտի բերքատվության և կովերի կաթնատվության պլանները։ Լուրջ թերություններ բացահայտվեցին աշխատավորների կուլտուրական և կենցաղային սպասարկման գործի կազմակերպման ուղղությամբ։ Այդ ամենը հետևանք է այն բանի, որ տեղական Սովետները ամուր չեն կապված մասսաների հետ, թույլ է կազմակերպական աշխատանքը։ Շրջսովետի գործկոմը և գյուղական շատ Սովետներ միշտ չէ, որ քննարկում ու ժամանակին ընթացք են տալիս ընտրողների ու դեպուտատների բարձրացրած հարցերին, անգործության է մատնված մշտական գործող հանձնաժողովների մի մասը, մի շարք դեպուտատներ վատ են կատարում իրենց պարտականությունները։*

*Թալինում, Աղինում, Ստեփանավանում, Ալավերդում ժամանակին չեն
հրավիրվում շրջանային Սովետների սեսիաները։ Լավ չեն նախապատրաստ-
վում ու անցկացվում Արտաշատի շրջանային Սովետի սեսիաները, գործկոմի
նիստերը. շրջսովետի գործկոմի նիստերում միայն դեպքից-դեպք են քննարկ-
վում շրջանի էկոնոմիկային վերաբերող ծանրակշիռ հարցեր։ Արտաշատի շըր-
ջանի մի շարք գյուղական Սովետներ (Անաստասավան, Ն. Ղամարլու, Արև-
շատ, Դվին և այլն) լավ չեն կատարում իրենց առջև ծառացած խնդիրները,
թույլ են կապված կոլտնտեսականների հետ։ Սովետներին կից մշտական գոր-
ծող հանձնաժողովներից շատերն այստեղ անգործունեության են մատնվել։*

*Վերջերս աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի
VIII սեսիայում լսվեց գործկոմի հաշվետվությունը։ Տրված զեկուցումից և
դեպուտատների ելույթներից պարզվեց, որ քաղսովետի և նրա գործադիր կո-
միտեի գործունեության մակարդակը դեռևս ետ է մնում ներկա պահանջնե-
րից։ Մայրաքաղաքի շրջանային և քաղաքային Սովետների գործադիր կոմի-
տեների ու նրանց բաժինների աշխատանքում կան լուրջ վրիպումներ, հաճախ
նկատվում են բյուրոկրատիզմի մասնակի երևույթներ, քաշքշուկի և անհոգի
վերաբերմունքի փաստեր բնակչության կարիքների ու պահանջների նկատ-
մամբ։ Քիչ է նախաձեռնությունը, հասարակայնությունը քաղաքի բարեկարգ-
ման, բնակչության կուլտուր-կենցաղային ու կենսական կարիքների լուծման
գործում, գործկոմների աշխատանքում տեղ են գտել ֆորմալիզմի տարրեր։
Անցյալ տարի իր ժամանակին սեսիաներում քննարկվեց քաղաքային տնտե-
սությունը ձմռանը նախապատրաստելու հարցը։ Չնայած այդ ուղղությամբ
կատարված որոշ աշխատանքին, այնուամենայնիվ, դրությունը ներկայումս
մխիթարական չէ. վատ են աշխատում քաղաքային տրանսպորտը, կոմունալ-
կենցաղային շատ հիմնարկներ, փողոցները և բակերը ժամանակին չեն մաքըր-
վում ձյան կույտերից, բնակելի որոշ շենքեր լավ չեն տաքացվում և այլն։*

*Երքաղսովետի գործկոմն ամուր կապված չէ ընտրողների հետ, գործկոմի
ղեկավար աշխատողները քիչ են լինում բնակչության շրջանում։ Գործկոմը
ինչպես հարկն է չի օգտագործում դեպուտատներին, բավարար չափով չի հեն-
վում նրանց վրա. դեպուտատների և ընտրողների կողմից առաջ քաշված
որոշ հարցեր անտեսվել են, դեպուտատները չգիտեն անգամ, թե գործկոմը
ինչ որոշումներ է ընդունում և ինչպես են կատարվում դրանք։ Սեսիայում
պարզվեց, որ երկու տարվա ընթացքում քաղսովետի 56 դեպուտատներ բոլո-
րովին հանդիպումներ չեն ունեցել իրենց ընտրողների հետ։*

*Վերև հիշված և այլ փաստեր ցույց են տալիս, որ մեր տեղական Սովետ-
ների և նրանց գործադիր կոմիտեների պրակտիկ գործունեության մեջ կան լուրջ
թերություններ, որ նրանց գործունեությունը ետ է մնում այն պահանջներից,
որոնք բխում են պարտիայի XX համագումարի որոշումներից։ Նախընտրական
կամպանիայի այս օրերին բարձրացել է աշխատավորների ակտիվությունը,
պահանջկոտությունը Սովետների և դեպուտատների նկատմամբ։ Սեսիաներում
և դեպուտատների հետ ունեցած հանդիպումների ժամանակ նրանք սուր քննա-
դատության են ենթարկում տեղական իշխանության օրգանների գործունեու-
թյունը, սովետական ապարատի աշխատողներին։ Դա սոցիալիստական դե-
մոկրատիզմի հետագա զարգացման ակնառու վկայությունն է։ Պարտիական
և սովետական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ ուշադիր վե-*



*րաբերվել աշխատավորների առողջ, գործարար այդ քննադատությանը և գործ-
նական միջոցառումներ ձեռնարկել աշխատանքում տեղ գտած թերությունների
վերացման ուղղությամբ։*

*Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետները պետական իշ-
խանության ամենամասսայական օրգաններ են, որոնք ղեկավարում են իրենց
տերիտորիայի տնտեսական և կուլտուրական շինարարությունը, վճռում բնա-
կավայրերի բարեկարգման, աշխատավորների կոմունալ-կենցաղային սպա-
սարկման գործի բարելավման կոնկրետ հարցերը։ Կոնստիտուցիայով տեղա-
կան Սովետներին մեծ իրավունքներ են տրվել, ներկայումս պրակտիկ միջո-
ցառումներ են իրականացվում նրանց իրավունքների ընդլայնման ուղղու-
թյամբ։ Դժբախտաբար մեր մի շարք շրջանային, քաղաքային, գյուղական և
ավանային Սովետները վատ են օգտվում իրենց իրավունքներից։*

*Տեղական Սովետների գործունեության հետագա բարելավման նպատա-
կով անհրաժեշտ է լիովին օգտագործել Կոնստիտուցիայով նրանց տրված
իրավունքները, օրավուր ամրապնդել կապերը մասսաների հետ, հետևողա-
կանորեն կենսագործել Սովետների գործունեության դեմոկրատական սկըզ-
բունքները։ Այդ իմաստով շատ կարևոր է, որ տեղերում կանոնավոր կերպով
հրավիրվեն Սովետների սեսիաները, նրանցում քննարկվեն ակտուալ, արմա-
տական հարցեր, գործարար մթնոլորտ ստեղծվի յուրաքանչյուր հարցի քըն-
նարկման ժամանակ։ Որպեսզի բարձրացվի Սովետների ղեկավար դերը, նրանց
պատասխանատվությունը, հարկ է, որ սեսիաներում սիստեմատիկաբար
լսվեն գործկոմների ու նրանց բաժինների, տնտեսական կազմակերպություն-
ների ղեկավարների հաշվետվությունները, ընտրողների պատվիրանների կա-
տարման ընթացքը։ Հասկանալի է, որ այդ բնագավառում ձևականությունը,
քննարկվող հարցի նկատմամբ շաբլոն մոտեցումը կարող է խիստ վնաս հաս-
ցնել գործին։*

*Հարկավոր է արմատավորել այն պրակտիկան, երբ ամեն մի սեսիա-
յից հետո դեպուտատները հանդիպում են իրենց ընտրողների հետ, նրանց
իրազեկ են պահում ընդունված որոշումներին։ Միաժամանակ դեպուտատնե-
րը գործնական աշխատանքով պետք է ապահովեն սեսիաների ընդունած
որոշումների կենսագործումը։ Չի կարելի այլևս հանդուրժել, երբ ընտրողները
իրազեկ չեն, թե ինչ որոշումներ են հանում տեղական Սովետները և նրանց
գործկոմները։*

*Տեղական Սովետների աշխատանքի բարելավումը մեծապես կախված է
նրանից, թե ինչպես են աշխատում նրանց գործադիր օրգանները։ Այնինչ,
մի շարք գործադիր կոմիտեների աշխատանքում պակասում է ամենակարևո-
րը՝ ձեռներեցությունը, ճկունությունը և այն էլ այնպիսի կենսական հարցե-
րի լուծման ժամանակ, ինչպիսիք են բնակարանային, առևտրի, կոմունալ և
կուլտուր-կենցաղային աշխատանքի հարցերը։ Ավելին, դեռևս կան գործադիր
կոմիտեներ, որոնք աշխատում են մասսաներից, ակտիվից, դեպուտատներից
կտրված։*

*Անհրաժեշտ է, որ տեղական Սովետների գործկոմները հենվեն դեպու-
տատների, ակտիվի վրա, բարելավեն մշտական գործող հանձնաժողովների
աշխատանքը, բարձրացվեն սովետական ապարատի աշխատողների պատաս-
խանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Պետք է մտածել այն*

մասին, որ պարզեցվի գործկոմների ապարատը, կրճատվեն կառավարչական հաստիքները: Սովետների և նրանց գործադիր օրգանների աշխատանքի ծանրության կենտրոնը պետք է փոխադրել կենդանի կազմակերպական աշխատանքի վրա, բարձրացնել նրանց կազմակերպող և մոբիլիզացնող դերը մեր կյանքում:

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների գործունեության հաջողությունը մեծապես կախված է նրանից, թե ինչպես են գործնականում ուղղություն տալիս, աջակցում և օգնում նրանց պարտիական կազմակերպությունները: Սովետների ու նրանց գործադիր կոմիտեների ամբողջ գործունեության համար պատասխանատու են պարտիական կազմակերպությունները, որոնք պարտավոր են օրավուր կատարելագործել Սովետների աշխատանքի ոճն ու մեթոդները, վճռականորեն բարձրացնել նրանց դերը տնտեսական շինարարության մեջ: Պարտիայի քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարումը իրականացնում են Սովետների ու նրանց գործադիր օրգանների միջոցով: Սակայն մեր առօրյա պրակտիկայից կարելի է բերել օրինակներ, երբ որոշ պարտիական կոմիտեներ փոխարինում են սովետական օրգաններին, աշխատում են նրանց փոխարեն, միջամտում են վարչական-կարգադրական նրանց գործունեության մեջ և այլն: Դրանով նրանք հեղինակազրկում ու դիմազրկում են սովետական օրգաններին, կաշկանդում նրանց ձեռներեցությունը:

Պետք է վերջ տալ մանր խնամակալությանը և ավելորդ միջամտությանը Սովետների աշխատանքին: Ճիշտ ղեկավարել՝ ամենից առաջ նշանակում է, սովետական օրգաններն ամրապնդել փորձված ու ձեռներեց աշխատողներով, դաստիարակել սովետական ղեկավար կադրերին հանձնարարված գործի նկատմամբ խիստ պատասխանատվության ոգով: Պարտիական կազմակերպությունները պետք է բարձրացնեն Սովետներում եղած պարտիական խմբերի աշխատանքը, սովետական ապարատում աշխատող կոմունիստների պրակտիկ գործունեությունը:

Ռեսպուբլիկայի աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների առաջիկա ընտրությունները կհանդիսանան աշխատավորների ուժի ու հզորության, Կոմունիստական պարտիայի և ժողովրդի անխախտ միասնության, դեմոկրատիզմի հաղթանակի մի նոր ապացույց: Պարտիական, սովետական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ լայնորեն ծավալել կազմակերպական և ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը, դրանով իսկ ապահովել բոլոր ընտրողների ակտիվ մասնակցությունն ընտրություններին: Նախընտրական կամպանիայի ժամանակ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը պետք է օգնի մոբիլիզացնելու աշխատավորներին՝ հաջողությամբ կատարելու պարտիայի XX համագումարի որոշումները, նոր ուժով բորբոքելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի պատվին ծավալվող համաժողովրդական պայքարը՝ ժամկետից շուտ կատարելու ժողովրդական տնտեսության զարգացման 1957 թվականի պլանը:

---

# ՎՐԱՑԱԿԱՆ ՍՍՌ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Գ. ԿԱԴԱԳԻՁԵ

Վրաստանի ԿՊ Կենտկոմի քարտուղար

Ծանր ինդուստրիան ըստ ամենայնի զարգացնելու գլխավոր գիծը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի կողմից անշեղորեն իրականացնելու հետևանքով ՍՍՌՄ ժողովուրդները վիթխարի հաջողությունների են հասել սոցիալիզմի կառուցման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու գործում:

Ծանր ինդուստրիայի վերելքը ամբողջ ժողովրդական տնտեսության հաստատուն հիմքն է կազմում, հանդիսանում է սովետական ժողովրդի բարեկեցության աղբյուրը և մեր Հայրենիքի անսասան պաշտպանունակության բազան: «Միայն այն ժամանակ, —ասում էր մեծ Լենինը,— երբ երկիրը էլեկտրիֆիկացվի, երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը դրվեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք կհաղթենք վերջնականապես» (Երկեր, հատ. 31, էջ 654):

Ընթանալով լենինյան այս ճիշտ ուղիով՝ վրաց ժողովուրդը, ինչպես և ՍՍՌՄ մյուս ազգային ռեսպուբլիկաների ժողովուրդները, պատմականորեն կարճ ժամանակամիջոցում պրոգրեսիվ մեծ թռիչք կատարեցին:

Չնայած իր բնական մեծ հարստություններին ու հումքային ռեսուրսներին՝ նախառևոլյուցիոն Վրաստանը ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից մեկն էր հանդիսանում: Նրա էկոնոմիկան խորապես ագրարային բնույթ էր կրում:

Վրաստանում ամենևին պայմաններ չէին ստեղծված արդյունաբերության զարգացման համար. ո՛չ էներգետիկ բազա կար, ո՛չ էլ վառելիք: Բնական հարուստ ռեսուրսները իրացնելու համար չկային ո՛չ բանվորական որակյալ կադրեր, ո՛չ ինժեներներ ու տեխնիկներ:

Առաջին համաշխարհային պատերազմը վերջանալուց հետո Վրաստանում իշխանությունը զավթեցին մենշևիկները: Իրենց տիրապետության երեք տարվա ընթացքում (1918—1921 թ. թ.) նրանք ոչ միայն ժողովրդական տնտեսության վերելքի չհասան, այլև վերջնականապես ավերեցին Վրաստանի առանց այն էլ թույլ էկոնոմիկան: Մենշևիկների տիրապետության ժամանակ արդյունաբերական ձեռնարկությունների միայն կեսն էր աշխատում:

Իշխանությունն իր ձեռքն առնելով, Կոմունիստական պարտիայի ղեկա-

վարությամբ, ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների աջակցու-
թյամբ վրաց ժողովուրդը արտադրողական ուժերի զարգացման ուղղությամբ
խոշոր հաջողությունների հասավ: Արմատապես փոխվեց մեր ռեսպուբլիկայի
դեմքը: Վրաստանը հետամնաց ագրարային երկրից դարձավ սոցիալիստական
ինդուստրիալ երկիր՝ բարձր զարգացած գյուղատնտեսությամբ:

Աստիճանաբար ստեղծվեց, աճեց ու ամրապնդվեց բազմաճյուղ արդյու-
նաբերությունը՝ էլեկտրաէներգետիկ, քարածխի, լեռնահանքային, հաստոցա-
շինական, մեքենաշինական, ցեմենտի, քիմիական, թղթի, բամբակյա, մե-
տաքսյա, բրդյա կտորեղենի, թեյի, գինեգործական և այլ ճյուղերը:

Վ. Ի. Լենինը, լավ իմանալով Կովկասի բնական հարստությունները, գրա-
նում էր, որ այստեղ կարելի է լայնորեն զարգացնել էլեկտրիֆիկացումը: Դրա
համար էլ Անդրկովկասում, մասնավորապես Վրաստանում, էլեկտրաէներգե-
տիկ արդյունաբերություն ստեղծելը նա համարում էր առաջնակարգ խնդիր:

Վ. Ի. Լենինի կարգադրությամբ Վրաստանին ոսկով 700 հազար ռուբլի
հատկացվեց Զեմո-Ավճալայի առաջին հիդրոէլեկտրակայանը կառուցելու հա-
մար: Դա Վրացական հիդրոէներգետիկայի առաջնեկն էր— ՍՍՌՄ-ում այն
ժամանակվա առաջին ու խոշոր կայաններից մեկը, որին հաջորդեց մի շարք
ուրիշ էլեկտրակայանների՝ Ռիոնգէսի, Սծգէսի, Ալազանգէսի և այլ կայան-
ների շինարարությունը:

Նախապատերազմյան երրորդ հնգամյակի երեք տարվա ընթացքում
Վրացական ՍՍՌ արագաթափ զարգացող արդյունաբերությունը տարեկան մի-
ջին հաշվով 10,5 տոկոս արտադրանքի թողարկման աճ տվեց: 1940 թվակա-
նին ստացվեց 600 հազար տոննա քարածուխ (1913 թվականին ստացած 70
հազար տոննայի դիմաց), 41 հազար տոննա նավթ, արտադրվեց 119 հազար
տոննա ցեմենտ, 400 հազար մետր բամբակյա կտորեղեն, 8.699 հազար զույգ
կաշվե կոշիկ, 13 հազար տոննա շաքարավազ և այլն: Արտադրանքի նշված
տեսակների մեծ մասի արտադրություն գոյություն չուներ ո՛չ նախապատե-
րազմյան 1913 թվականին, ո՛չ էլ մենշևիկների օրոք:

Արդյունաբերության զարգացման բազայի վրա և նրան զուգընթաց բուռն
թափով վերակառուցվեց գյուղատնտեսությունը:

Հիտլերյան զավթիչների դեմ մղած պատերազմը ժամանակավորապես
ընդհատեց Վրաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը:
Մեծ թվով բանվորներ սոցիալիստական հայրենիքի պաշտպանությանը մաս-
նակցելու և հումքային ռեսուրսների խիստ կրճատման հետևանքով արդյու-
նաբերությունն անխուսափելիորեն իջավ իր ձեռք բերած մակարդակից:

Սակայն, պատերազմի հաղթական ավարտից հետո աշխատավորներն է՛լ
ավելի մեծ եռանդով և պաթոսով լծվեցին ժողովրդական տնտեսության վերա-
կանգնմանն ու զարգացմանը և չտեսնված վերելքի ու բարգավաճման հասան:
Հետպատերազմյան չորրորդ հնգամյակում Վրաստանի արդյունաբերության
տարեկան միջին աճը հասավ 14,1 տոկոսի:

Սովետական Միության ինդուստրացման ընդհանուր պրոցեսին համըն-
թաց հիմնական ֆոնդերի, այնպես էլ ըստ թողարկած արտադրանքի:
նաբերության տեսակարար կշռի անընդհատ բարձրացումով՝ ինչպես ըստ
նակցելու և հումքային ռեսուրսների խիստ կրճատման հետևանքով, արդյու-

Չորրորդ հնգամյակում առավել ինտենսիվ զարգացան արդյունաբերու-
թյան այն ճյուղերը, որոնք համամիութենական նշանակություն ունեն, ինչ-



պես, օրինակ, էլեկտրամետալուրգիական, որ ինդուստրիալ Վրաստանում
առաջնեկ է հանդիսանում ի դեմս Զեստաֆոնի ֆերրոձուլական գործարանի,
ածխի հանույթը, մարգանեցի արդյունաբերությունը, մեքենաշինությունը, նե-
րառյալ հաստոցաշինությունը, ինչպես և սննդարդյունաբերության մի շարք
ճյուղեր՝ թեյի, պտղապահածոների, գինեգործական, ծխախոտի, եթերի, թուն-
դի, ձեթի և մի շարք այլ ճյուղերի արդյունաբերությունը: Չորրորդ հնգամյա-
կում սկսվեց Վրաստանի այնպիսի ինդուստրիալ օջախների շինարարությու-
նը, ինչպիսիք են՝ Անդրկովկասյան մետալուրգիական գործարանը, Քութա-
յիսի ավտոմոբիլի գործարանը և մի շարք այլ խոշոր ձեռնարկություններ:
Հետագա զարգացումն ստացավ էլեկտրաէներգետիկան (Խրամգէս, Սուխում-
գէս, Չիթախևիգէս և այլն):

Անշեղորեն իրագործելով պարտիայի XIX համագումարի Դիրեկտիվները
հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, վրաց ժողովուրդը նորանոր խոշոր
հաջողությունների է հասել սոցիալիստական արդյունաբերության զարգաց-
ման և առաջին հերթին՝ ծանր ինդուստրիայի զարգացման գործում: Այդ հըն-
գամյակի ընթացքում հիմնականում ավարտվեց Անդրկովկասի Ստալինի ան-
վան մետալուրգիական գործարանի շինարարությունը Ռուսթավիում: Հինգ
տարվա ընթացքում գործարանում գործարկվել են կոքսաքիմիական ցեխը,
ագլոմերացիոն ֆաբրիկան, երկու դոմնային և չորս մարտենյան վառարան-
ներ, խողովակային, խողովակա-գլանման, մանրասորտային ցեխերը, ինչ-
պես և ավարտված է թիթեղագլանման ցեխի շինարարությունը:

Հինգերորդ հնգամյակի տարիներին կառուցվել և գործարկվել են ավելի
քան 100 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ:

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը հինգերորդ հնգամյակի ընթաց-
քում ամեն տարի կատարել ու գերակատարել է արտադրանքի թողարկման
պլանը և զգալիորեն ավելացրել է մետալուրգիական, էներգետիկ, վառելիքի,
մեքենաշինական, քիմիական, անտառային, շինանյութերի արդյունաբերու-
թյան, ինչպես և թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքի թո-
ղարկումը:

Մարգանեցի հանքի թողարկումը հնգամյակի ընթացքում ավելացել է 61
տոկոսով, ֆերրոձուլվածքի արտադրությունը՝ 26 տոկոսով, կապարա-կոն-
ցենտրատինը՝ 2,7 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրանքն աճել է 60 տո-
կոսով: Կառուցվել է էլեկտրահաղորդման գիծ, որը միացնում է վրացական ու
ադրբեջանական էներգոսիստեմները, ավարտված է ագրեգատների կառու-
ցումն ու ավտոմատացումը շրջանային էլեկտրակայաններում:

Ածխի հանույթը 1955 թվականին 1950 թվականի համեմատությամբ ավե-
լացել է 57 տոկոսով: Մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը
1955 թվականին 1950 թվականի համեմատությամբ աճել է 86 տոկոսով, իսկ
մետաղահատ հաստոցների արտադրությունը՝ 57 տոկոսով: Քութայիսի Օրջո-
նիկիձեի անվան ավտոգործարանում յուրացվել է բեռնատար ավտոմոբիլների
սերիային արտադրությունը:

Հաջող զարգացում է ստացել նաև Վրաստանի քիմիական արդյունաբե-
րությունը: 1955 թվականին շարք է մտել Ռուսթավիի ազոտատուկային գոր-
ծարանը և ռեսպուբլիկայում առաջին անգամ սկսվել է ազոտային պարար-
տանյութերի արտադրությունը: Լիտոպոնի արտադրությունը հինգերորդ հըն-
գամյակում ավելացել է 73 տոկոսով, իսկ պլաստմասսայից պատրաստվող

առարկաներինը՝ 4 անգամ։ Ռեսպուբլիկայի թղթի և փայտամշակման արդյունաբերությունը զգալի չափով ավելացրել է թողարկումը, թղթինը 52 տոկոսով, ֆաներինը՝ 2,1 անգամ, իսկ կահույքի արտադրությունը՝ 2,6 անգամ։

Հինգերորդ հնգամյակում հաջողությամբ զարգացավ շինանյութերի արդյունաբերությունը. ցեմենտի թողարկումն ավելացավ 47 տոկոսով, աղյուսինը՝ 80 տոկոսով, շիֆերինը՝ 45 տոկոսով, կղմինդրինը՝ 28 տոկոսով, մարմարե իրերինը՝ 3,2 անգամ։

Հնգամյակում աճեց նաև թեթև արդյունաբերության արտադրանքի թողարկումը։ Գործարկվեց Գորու բամբակի գործվածքեղենի կոմբինատի առաջին հերթը, ընդարձակվեցին Թբիլիսիի մետաքսագործական ֆաբրիկան և կամվոլ-մահուդի կոմբինատը, ինչպես և մի շարք այլ ձեռնարկություններ։

Ռեսպուբլիկայի սննդարդյունաբերությունը, որը հիմնականում համամիութենական նշանակություն ունի, հինգերորդ հնգամյակում արտադրությունն ավելացրել է թեյինը՝ 46 տոկոսով, խաղողի գինունը՝ 77 տոկոսով, շամպայնինը՝ 46 տոկոսով, կոնյակինը՝ 3,4 անգամ, հանքային ջրերինը՝ 93 տոկոսով։

Անցած հնգամյակում կառուցվել են թեյի նախնական մշակման 17 ֆաբրիկա, գինեգործական 18 գործարան, Թբիլիսիում կառուցվել է կոնյակի գործարան՝ տարեկան 200 հազար դեկալիտր կոնյակի թողարկման կարողությամբ, կառուցվել են նաև կաթի կոմբինատ և այլ ձեռնարկություններ։

Տեղական արդյունաբերությունը և արդյունագործական կոոպերացիան հինգերորդ հնգամյակի ընթացքում համախառն արտադրանքի թողարկումն ավելացրել են 85 տոկոսով, պիանինոների և դաշնամուրների թողարկումն ավելացել է 86 տոկոսով, մետաղյա մահճակալներինը՝ 2,7 անգամ և այլն։

Արդյունաբերական արտադրանքի թողարկման աճմանը զուգորդել է արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացումը։ Մի շարք ձեռնարկություններում հաջողությամբ արմատավորվել է արտադրական պրոցեսների ավտոմատացումը, բարձրացել է ծանր աշխատանքների մեքենայացման աստիճանը, արմատավորվել են նոր բարձր-արտադրողականությամբ մեքենաներ ու պրոգրեսիվ տեխնոլոգիա։ Սակայն պետք է նշել, որ տեխնիկական պրոգրեսի տեմպերն անբավարար են եղել և նոր տեխնիկայի արմատավորման գործում լուրջ թերություններ կան։

Արդյունաբերության ընդհանուր զարգացման գործում ձեռք բերած անվիճելի հաջողությունների կողքին ածխարդյունաբերությունը և էլեկտրակայանների շինարարությունը ետ է մնացել վառելիքի ու էլեկտրաէներգիայի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջների աճից։

Արդյունաբերության այս երկու առաջատար ճյուղերի ետ մնալը դանդաղեցրել է արդյունաբերական արտադրանքի աճման ընդհանուր տեմպերը և մի շարք նոր ձեռնարկությունների կազմակերպումը՝ մետաղյա ալյումինի ու մագնիումի, էլեկտրապողպատի, սինթետիկ քացախաթթվի ացետատային մետաքսի և այլ նյութերի արտադրության համար։

Մինչդեռ ռեսպուբլիկայում էժան էլեկտրաէներգիա արտադրելու համար անսահման ռեսուրսներ կան։ Վրաստանում օգտագործման համար տեխնիկապես մատչելի հիդրոէներգետիկ ռեսուրսները կազմում են 46 միլիարդ կվժ, որով մեկ քառակուսի կիլոմետրին ընկնում է 640 հազ. կվժ, երբ ՍՍՌՄ միջինը կազմում է 76 հազ. կվժ։ Նշած ռեսուրսների օգտագործումը 5 տոկոսից



չի անցնում, իսկ ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի դեֆիցիտը հասնում է 12 տոկոսի։

Անդրկովկասյան Ստալինի անվան մետալուրգիական գործարանի գործարկումից հետո տեղական ածուխը դուրս եկավ անբավարար, որն այժմ ծածկվում է Դոնբասից էներգետիկ ածուխի ներմուծումով։

Այս աննորմալ վիճակը վերացնելու համար անհրաժեշտ է արագացնել նոր ածխահորերի շինարարությունն ու գործարկումը, որին պետք է ռեալ օգնություն ցույց տա ՍՍՌՄ Ածխարդյունաբերության մինիստրությունը՝ անհրաժեշտ դրամական և նյութական միջոցներ հատկացնելով։

Անհրաժեշտ է նաև նշել, որ առանձին ձեռնարկությունների և արդյունաբերության ճյուղերի աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները ետ են մնում Սովետական Միության առաջավոր ձեռնարկությունների մակարդակից։ Դա վերաբերում է, ամենից առաջ, Ստալինի անվան մետալուրգիական գործարանում դոմենյան վառարանի օգտակար ծավալի օգտագործմանը և մարտենյան վառարանի 1 քառ. մետրից ստացված մետաղին։ Դա վերաբերում է նաև ծանր ու թեթև արդյունաբերության մեջ սարքավորման արտադրողականությանն ու աշխատանքային ծախսումներին, տեքստիլ ու սննդի արդյունաբերության մեջ կիսաֆաբրիկատների ու պատրաստի արտադրանքի ստացմանը։

Վրաստանի ժողովրդական տնտեսության վերելքի ու բարգավաճման գործում մեծ դեր է խաղացել երկաթուղային տրանսպորտը։

Երկաթուղիների երկարությունը ներկայումս Վրաստանում կազմում է 1.336 կմ., որից 864 կմ., կամ 65 տոկոսը էլեկտրիֆիկացված է։ Էլեկտրիֆիկացված գծերի տեսակարար կշռով Վրաստանի երկաթուղային տրանսպորտը Սովետական Միությունում առաջին տեղն է գրավում և էլեկտրաքարշի արմատավորման գործում պիոներ է հանդիսանում։

Էլեկտրիֆիկացմանը զուգընթաց Վրաստանի երկաթուղային տեղամասերը հագեցվել են նոր տեխնիկայով՝ ավտոբլոկավորումով, սլաքների ու ազդանշանների էլեկտրական կենտրոնացումով, ավտոկանգերով։ Զգալի տարածությամբ ուղին խճված է, կայարանները կարգավորված և այլն։

Այս բոլոր միջոցառումները երկաթուղայինների հայրենասիրական աշխատանքի հետ միասին երկաթուղային տրանսպորտը դարձրել են Վրաստանի ժողովրդական տնտեսության մի առաջավոր ճյուղը, որ հաջողությամբ կատարում է ժողովրդատնտեսական բեռների հարաճուն փոխադրումները։

Վրացական ՍՍՌ տնտեսական ու կուլտուրական զարգացման համար նոր հիանալի հեռանկարներ են բացվում վեցերորդ հնգամյակում։

Ռեսպուբլիկայի աշխատավորները սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին մեծ խանդավառությամբ ձեռնամուխ են եղել իրականացնելու այն վիթխարի խնդիրները, որ առաջադրվել են ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումներով։

Վեցերորդ հնգամյակի տարիներին Վրաստանը շարունակելու է իր ինդուստրիալ զարգացման ուղին։ Նրա ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը հնգամյակի ընթացքում կավելանա մոտ 1,6 անգամ, ըստ որում արտադրական միջոցների արտադրությունը՝ 64,5 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 46,3 տոկոսով։

Նոր հնգամյակը Վրաստանի համար կհանդիսանա ծավալուն էլեկտրա-

էներգետիկ շինարարության հնգամյակ: Հնգամյակի ընթացքում գործարկվելու են նոր խոշոր հիդրոէլեկտրակայաններ՝ Լաճանուրի, Խրամի երկրորդ, Տղվիբուլու, Գումատի հիդրոկայանները, ինչպես նաև սկսվելու է Դարյալի հիդրոկայանի (Թերեք գետի վրա), Վարցիխի կայանի և Ռիոնի կասկադի նոր կայանի շինարարությունը: Գումատի № 2 և Տղվիբուլու, ինչպես և Բժուժի հիդրոկայանների շինարարությունն արդեն ավարտված է, և նրանք էներգիա են տալիս ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությանը: Էլեկտրաէներգիայի արտադրանքի աճը պլանավորվում է 89 տոկոսով, երբ Վրաստանի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի աճը նոր հնգամյակում կազմելու է 57 տոկոս:

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման հիմնական պայմաններից մեկը քարածխի հանույթի սիստեմատիկ ավելացումն է: Նախատեսվում է ածխի հանույթն ավելացնել Տղվիբուլու, Տղվարչելու հին շրջաններում՝ նոր հանքահորեր գործարկելով և հետախուզական լայն աշխատանք ծավալել ու կազմակերպել նոր շրջանի՝ Շաորիի քարածխահանքերի շահագործումը: Շինարարությանը զուգընթաց թե՛ հին, թե՛ նոր ածխահանքերում ամեն կերպ զարգանալու է ածխի հանույթի նոր տեխնիկան: Այս ամենը հնարավորություն կտա հնգամյակի ընթացքում քարածխի հանույթն ավելացնել 38 տոկոսով:

Ռեսպուբլիկայի վառելանյութի բալանսը արմատապես բարելավելու գործում մեծ նշանակություն ունի Թբիլիսի և Ռուսթավի քաղաքների նախատեսվող գազիֆիկացիան: Վեցերորդ հնգամյակի պլանում նախատեսված Օրջոնիկիձե—Թբիլիսի գազամուղի կառուցումը խիստ կկրճատի քարածխի ու մազութի ծախսումը էներգետիկ նպատակներով: Գազի մատուցումը մինչև 1,5—2,0 միլիարդ խորանարդ մետրի հասցնելով, հաշվելով նրա սպառումը բացի կենցաղային կարիքներից նաև ջերմաէլեկտրակենտրոնների ու արդյունաբերական օբյեկտների համար, տարեկան կարող է խնայվել 2,5—3,0 միլիոն տոննա քարածուխ, որով կլուծվեն այն դժվարությունները, որ կապված են ռեսպուբլիկայի վառելիքային բացասական բալանսի հետ:

Վեցերորդ հնգամյակում իր հետագա զարգացումը կստանա վրացական մետալուրգիան: Անդրկովկասյան՝ Ստալինի անվան մետալուրգիական գործարանում չուգունի ձուլումը կաճի 1,6 անգամ, պողպատինը՝ ավելի քան 2 անգամ, գլանվածքինը՝ ավելի քան մեկ ու կես անգամ: Արտադրանքի թողարկումը կավելացվի դոմնային վառարանները հրահալոցի բերանի մոտ գազի բարձր ճնշումով աշխատեցնելով, մարտենյան վառարանների ջերմային ռեժիմների ավտոմատիկ ղեկավարում իրականացնելով, դրանցում ջերմադիմացկուն խրոմոմագնեզիտային կամարներ ու թթվածնային փուքս կիրառելով: Գլանման ցեխերում լայն տարածում կստանան տաքացման ու գլանման արագ մեթոդները:

Խոշոր խնդիրներ են դրվում ռեսպուբլիկայի մարգանեցի արդյունաբերության առջև, որը Ճիաթուրիի մարգանեցի բարձր որակի ու հանույթի մեծ մասշտաբի շնորհիվ համամիութենական նշանակություն ունի: Նախատեսվում է Ճիաթուրմարգանեցտրեստի պլանն ավելացնել 48 տոկոսով: Դրա համար նախատեսվում է կառուցել նոր հանքահորեր ու հարստացուցիչ ֆաբրիկաներ՝ լայնորեն կիրառելով արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը:



Ռեսպուբլիկայի ֆերրո-մարգանեցային արդյունաբերությունը, որ առաջին հնգամյակի ծնունդն է, վեցերորդ հնգամյակում արտադրանքի թողարկումն ավելացնելու է մոտ երկու անգամ: Նոմենկլատուրայի մեջ երևան կգան նոր ձուլվածքներ, որոնք ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն կունենան, ինչպես, օրինակ, էլեկտրոլիտային մետաղական-մարգանեցը և այլն:

Մինչև այժմ ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերությունը իր տեսակարար կշռով և արտադրած քիմիական նյութերի սահմանափակ նոմենկլատուրայով արդյունաբերության թույլ զարգացած ճյուղն է եղել: Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է Ռուսթավի ազոտա-տուկային գործարանը լրիվ կարողությամբ շահագործման հանձնելով՝ ազոտային պարարտանյութերի թողարկումն ավելացնել 7,3 անգամ: Պլաստմասսայի արտադրությունն ավելանալու է երկու անգամ: Կազմակերպվելու է մի շարք նոր տեսակի քիմիական նյութերի արտադրություն, ինչպիսիք են ծծմրաթթուն, կաուստիկ և կալցիումացված սոդան, բիկարբոնատը և այլն:

Շինարարական ծրագրի իրականացման համար բացառիկ կարևոր նշանակություն ունի շինանյութերի արդյունաբերության համապատասխան զարգացումը: Նախատեսվում է ավելացնել այն տեսակի շինանյութերի արտադրությունը, որոնք հնարավորություն կտան ավելի լայն մեքենայացնել աշխատանքը, բարելավել շինարարական աշխատանքների որակը և իջեցնել շինարարության ինքնարժեքը:

Սրա համար նախատեսվում է վեցերորդ հնգամյակում ցեմենտի թողարկումն ավելացնել 2,9 անգամ, երկաթ-բետոնային կոնստրուկցիաներինն ու մասերինը՝ մոտ 10 անգամ, զգալիորեն ավելացվելու է պատի խոշոր ու մանր բետոնային բլոկների, աղյուսի կրի, կղմինդրի, շիֆերի և այլ շինանյութերի թողարկումը:

Հատուկ ուշադրություն է դարձվում ռեսպուբլիկայի անտառարդյունաբերության զարգացմանը:

Ջնայած Վրաստանը հարուստ է անտառներով, այնուամենայնիվ նրանց օգտագործումը մինչև հիմա արդյունաբերական խոշոր նշանակություն չի ունեցել և տարեկան ավելի քան 2 միլիոն խմ. անտառանյութ է ներմուծվել:

Վրաստանի անտառների յուրահատկությունը, նրանց խիստ ուղղահայաց զոնալությունը, հողապաշտպան, ջրապաշտպան ու կուրորտային նշանակությունը պահանջում են անտառաշահագործման ռացիոնալ մեթոդներ ընտրել և խորանալ դեպի այնպիսի լեռնային վայրեր, որտեղ մեծ քանակությամբ գերհասունացած փայտանյութ է կուտակվել, որը պետք է կտրել ինչպես արդյունաբերական նպատակների, այնպես էլ անտառի նորմալ վերականգնման համար: Այս նպատակով նախատեսվում է ներդրումներ անել ճանապարհաշինության և լեռնային պայմաններում աշխատանքի մեքենայացման համար, որ հնարավորություն կտա բարելավել փայտամթերումները և իջեցնել նրա ինքնարժեքը:

Նշանակալից հեռանկարներ են բացվում ռեսպուբլիկայում մեքենաշինության զարգացման ուղղությամբ: Ինդուստրիայի այդ գլխավոր տեսակի արտադրանքի աճը ավելի ինտենսիվ է լինելու, քան արդյունաբերության մյուս ճյուղերում: Քութայիսի Ս. Օրջոնիկիձեի անվան ավտոգործարանի կարողությունն ավելի բարձր չափերով է օգտագործվելու: Յուրացվելու է նոր մարկայի ավտոմեքենաների թողարկումը: Թբիլիսիի Կիրովի անվան հաստո-

ցաշինական գործարանը ավելացնելու է բարձր տեխնիկա-տնտեսական ցու-
ցանիշներով նոր կատարելագործված կոնստրուկցիայով խառատային հաս-
տոցների թողարկումը:

Բացի նշված ձեռնարկություններից՝ վեցերորդ հնգամյակում լայն զար-
գացում է ստանալու ռադիոյի և էլեկտրա-տեխնիկական մեքենաների ու հար-
մարանքների արտադրությունը: Հետագա զարգացում է նախատեսվում գի-
նեգործության և թեյի արդյունաբերության համար մեքենաներ բաց թողնելու
գործում:

Մինչև այժմ ռեսպուբլիկան գյուղատնտեսական մեքենաշինություն չի ու-
նեցել, որը խանգարել է հաջողությամբ մեքենայացնել աշխատատար գյու-
ղատնտեսական պրոցեսներն այնպիսի կուլտուրայի գծով, ինչպիսիք են
թեյը, խաղողը, պտղաբուծությունը և լեռնային հողագործությունը: Վե-
ցերորդ հնգամյակում գոյություն ունեցող երկու ընդհանուր մեքենաշինական
գործարանների բազայի վրա կազմակերպվելու է այնպիսի գյուղատնտեսա-
կան մեքենաների թողարկում, ինչպիսիք են ինքնագնաց լեռնա-դաշտային
շասսին, թեյահավաք ապարատը, թեյահավաք ինքնագնաց մեքենան և այլն:

Պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներին համապատասխան՝ վեցե-
րորդ հնգամյակում հատուկ ուշադրություն է դարձվելու մեքենաշինական ձեռ-
նարկությունների մասնագիտացմանն ու կոոպերացմանը: Շարք են մտնելու
մետաղահատ գործիքների, ամրացման մետաղյա շինվածքների և այլ գոր-
ծիքների թողարկման մասնագիտացված ձեռնարկություններ: Ընդարձակվելու
է չուգունաձուլման և պողպատաձուլման կենտրոնացված արտադրությունը:

Ծանր արդյունաբերությանը զուգընթաց վեցերորդ հնգամյակում նախա-
տեսվում է նաև թեթև ու սննդի արդյունաբերության լայն զարգացում: Զգալի
չափով ավելացվելու է տեքստիլ գործվածքների արտադրությունը. բամբակյա
կտորեղենինը՝ 2,7 անգամ, բրդյա կտորեղենինը՝ 22,8 տոկոսով, մետաքսյա
կտորեղենինը՝ 13 տոկոսով: Թողարկվող կտորեղենի ասորտիմենտն զգալի-
րեն լայնացվելու է և ավելի ու ավելի է համարեցվելու բնակչության կարիք-
ներին ու պահանջներին: Մեծ չափով ավելանալու է կահույքի, թղթի, լուց-
կու, ինչպես և լայն սպառման մետաղյա իրերի արդյունաբերության արտա-
դրանքը:

Սննդարդյունաբերության գծով վեցերորդ հնգամյակում նախատեսվում է
գյուղատնտեսական հումքի աճող ռեսուրսների բազայի վրա ավելի ևս ավե-
լացնել պարենային ապրանքների արտադրությունը: Ռեսպուբլիկայի սննդար-
դյունաբերության արտադրանքի թողարկումը նախատեսվում է ընդհանուր
առմամբ ավելացնել մոտավորապես 1,5 անգամ, ըստ որում առանձնապես
պատասխանատու խնդիրներ են կանգնած թեյի, պահածոյի, ծխախոտի,
անալկոհոլ խմիչքների արդյունաբերության, գինեգործության և հանքային
ջրերի արտադրության առջև:

Թեյի արդյունաբերությունը իր արտադրանքը պիտի ավելացնի 32 տոկո-
սով, գինեգործականը՝ 1,8 անգամ: Վրացական գինեգործությունը հիմնակա-
նում մասնագիտանալու է սեղանի և կիսաքաղցր մարկայի գինիներ թողարկելու
գործում, որոնց մեծ պահանջ կա: Պահածոյի արդյունաբերությունն ավե-
լացնելու է բանջարեղենի ու մրգեղենի պահածոների արտադրությունը հա-
մարյա 1,8 անգամ: Շաքարի թողարկումը ճակնդեղի մթերման ավելացմանը
համապատասխան աճելու է 44 տոկոսով:



Զգալիորեն ավելանալու է հրուշակեղենի թողարկումը, քանի որ Թբի-
լիսիում շահագործման են հանձնվելու նոր հրուշակեղենի ֆաբրիկաներ՝ տա-
րեկան 13 հազար տոննա ընդհանուր կարողությամբ:

Պարենային ապրանքների թողարկման հետագա ավելացման համար և
մեծ նշանակություն ունի մասնագիտացումը և կոոպերացումը: Հարկ է նշել
ստադիային մասնագիտացումը, որը հաջողությամբ արմատավորվում է գի-
նու արտադրության բնագավառում, որի շնորհիվ միանգամայն առանձնաց-
վում են գինենյութերի արտադրությունը, գինու վերամշակումը, նրա հնացու-
մը, տեսակավորումը և շշերը լցնելը:

Ստադիային մասնագիտացման ուղղությամբ լավ հեռանկարներ ունի
թեյի արդյունաբերությունը. թեյի տերևի նախնական վերամշակման ֆաբրի-
կաների բեռնաթափումը թեյի կիսաֆաբրիկատի տեսակավորումից և այդ
գործի կենտրոնացումը հատուկ թեյատեսակավորող ֆաբրիկաներում, հնա-
րավորություն կտա բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և
բարելավել արտադրանքի որակը:

Վրաստանի ժողովրդական տնտեսության առջև կանգնած խնդիրների
հաջող կենսագործման համար մեծ նշանակություն է ունենալու տրանսպոր-
տի հետագա զարգացումը: Նոր երկաթուղիների կառուցում Վրացական ՍՍՌ
տերիտորիայում չի նախատեսվում, այլ գլխավոր ուշադրությունը դարձվելու
է նոր տեխնիկայի արմատավորումով և աշխատանքի առաջավոր մեթոդների
կիրառումով գոյություն ունեցող երկաթուղային տեղամասերի արտադրողա-
կանությունն ավելացնելու վրա:

Նախատեսվում է մի շարք տեղամասեր փոխադրել դիսպետչերական
կենտրոնացման, այսինքն՝ այն սիստեմին, երբ տեղամասի բոլոր կայանների
սլաքներն ու ազդանշանները վարում է մեկ անձ: Կշարունակվի ձեռքով ղե-
կավարվող ուղեփոխ սլաքների փոխարինումը կենտրոնական ղեկավարում
ունեցողներով, գնացքային հարաբերությունների ծողիկային սիստեմը՝ ավ-
տոմատիկ շղթայակցումով գործող ավտոբլոկիրովկայով: Մեքենայացումն
ավելի լայն է արմատավորվելու բեռնման-բեռնաթափման ապարեզում
և աշխատատար պրոցեսներում, առանձնապես ուղեմասային աշխատանքնե-
րում: Մոտ ժամանակներս Անդրկովկասյան երկաթուղին կսկսի աշխատել
ավտոմատիկ անընդմեջ շղթայակցում ունեցող վագոնների բեռնային պար-
կով, որ հնարավորություն կտա ավելացնելու գնացքների կշիռը, կպարզեցնի
նրանց կազմումը և ռեզերվներ կստեղծի կայանների գծային զարգացման մեջ:
Հետագա աշխատանքներ են կատարվելու ճանապարհի և արհեստական կա-
ռուցվածքների ամրացման ուղղությամբ՝ շարժման արագությունն ավելացնե-
լու և գծերի թողարկունակությունը բարձրացնելու համար:

Լայն միջոցառումներ են նախատեսվում ուղևորների սպասարկումը բա-
րելավելու ուղղությամբ՝ արմատավորելով ցելնոմետաղային վագոններ ու
էլեկտրական մոտոր-վագոնների գնացքներ, ինչպես նաև բարեկարգելով կա-
յարանները և ուղևորների կանգակետերը:

Ավտոտրանսպորտի բնագավառում ամեն կերպ բարելավվելու է ավտո-
մեքենաների օգտագործումը, զարգանալու են կենտրոնացված բեռնափոխա-
դրումները, ինչպես և ուղևորների փոխադրությունները ավտոբուսներով ու
տաքսիներով: Համապատասխան զարգացում է ստանալու ավտոմոբիլների
տեխնիկական սպասարկման ու նորոգման բազան:

Իրականացնելով ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները՝ արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման հիման վրա արտադրության տեխնիկական մակարդակը բարձրացնելու մասին՝ ռեսպուբլիկայում նախատեսվում է այդ ուղղությամբ լայն աշխատանք ծավալել։

Ներկայումս հանքագործական արդյունաբերության մեջ ավտոմատացվում է սլաքների փոխադրումը հանքահան ուղիներում, աշխատանքներ են տարվում էստակադաներում, բեռնման, բեռնաթափման կայաններում և կախովի ճոպանուղիներում լրիվին ավտոմատիկացիա մտցնելու ուղղությամբ։ Մարգանեցի կորուստները նվազեցնելու և նրա որակը լավացնելու համար հարստացուցիչ ֆաբրիկաներում լայնորեն արմատավորվում են էլեկտրամագնիսային սեպարատորներ։

Ածխահանքերում դիստանցիոն վարման են փոխադրված մի ամբողջ շարք ներհատիչ մեքենաներ, կոմբայններ ու փորիչ կոնվեյերների գծեր, իսկ ավտոմատիկ վարման է փոխադրված գլխավոր օդափոխման վենտիլյատորների մի մասը։

Անդրկովկասյան մետալուրգիական գործարանում, որտեղ պրոցեսները մեքենայացված ու ավտոմատացված են, 1956 թվականին ձուլման տևողությունը 59 րոպեով իջավ և կազմում է միջին հաշվով 8 ժամ 14 րոպե։ Սրա և վառարանների դիմացկունության 30 տոկոսով ավելացնելու շնորհիվ պողպատի ստացումը վառարանի մեկ քառակուսի մետրից հասավ 6,3 տոննայի, որ 1955 թվականից բարձր է 23 տոկոսով։ Մեծ չափով բարելավվել է դոմնային վառարանների օգտակար ծավալի օգտագործման գործակիցը, կոքսաքիմիական ու դոմնային ցեխերում իջեցված է հումքի և այլ նյութերի ծախսումը արտադրանքի ամեն մի միավորի վրա։ Սակայն, այս ավտոմատացված ձեռնարկությունում տեխնիկա-տնտեսական ցուցանիշները և արտադրական կարողությունների օգտագործումը պետք է է՛լ ավելի բարձր լինեն, որպիսի նպատակ էլ այժմ դրել է գործարանի կոլեկտիվը։

Մեքենայացման արմատավորմանը և պրոցեսների ավտոմատացմանը նպաստում են ռեսպուբլիկայի հաստոցաշինական ու ավտոմոբիլային արդյունաբերությունը, որոնք ստեղծել են ժամանակակից հաստոցների նոր տիպեր և ինքնաթափ ավտոմեքենաներ, որոնց թափքերը թափում են երեք կողմերի վրա։

Վերակառուցվում է նաև սննդարդյունաբերության տեխնիկական բազան։ Վերջին տարիներս թեյի արդյունաբերության ձեռնարկություններում արմատավորված են ինժեներ Մարդալեյշվիլու սիստեմի բարձր արտադրողականությամբ թեյաթորշմացուցիչ ագրեգատներ, որոնք թեյի որակը խիստ բարելավելով՝ միաժամանակ թորշմացման տևողությունը կրճատում են՝ 8 ժամից հասցնելով մինչև 3 ժամի։ Արտադրական փորձարկմանը հաջող դիմացավ և արմատավորվում է ինժեներ Կոդուայի սիստեմի նոր ավտոմատիկ մամլիչը, որը չոր թեյ է մամլում։

Գինեգործական արդյունաբերության մեջ, որը մինչև վերջին ժամանակներս տեխնիկական հագեցվածության տեսակետից առավել հետամնացն էր, այժմ վճռական տեղաշարժ է արված նորագույն տեխնոլոգիական սարքավորումով հագեցնելու ուղղությամբ։ Գինու գործարաններում տեղադրված են ութ նոր ավտոմատիկ լցնող գծեր, որոնք շշերը լվանում են, լցնում, խցանում, դրոշմում և էտիկետավորում։ Նախագծված ու պատրաստված են գյուտարար ագելյշվիլու սիստեմի վակում-լցնող մեքենաների և ավտոմատիկ չափիչների փորձնական նմուշներ, որոնց արտադրական փորձարկումը հաջողությամբ անցավ։



Սակայն, արտադրության ավտոմատացման բնագավառում այն ամենը, ինչ արված է, դեռևս առաջին քայլերն են։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ ավտոմատիկայի մշակման և արտադրության մեջ արմատավորման նպատակով Վրաստանում ստեղծված են հատուկ գիտա-հետազոտական ու նախագծային ինստիտուտներ և կոնստրուկտորական բյուրոներ, որոնց խնդիրն է՝ բեկում ապահովել ձեռքի աշխատանքի առավելագույն կրճատման գործում։

Արդյունաբերության մեջ և տրանսպորտում տեխնիկական պրոգրեսի բնագավառում վիթխարի նշանակություն ունի ռացիոնալացման ու գյուտարարության հետագա զարգացումը։ Մեր նորարարների, ռացիոնալիզատորների ու գյուտարարների ստեղծագործական միտքը նպաստել է արտադրության շատ ու շատ նեղ տեղերի վերացմանը, տվել է հումքի, նյութեղենի ու դրամական միջոցների մեծ տնտեսում։ Այնուամենայնիվ որոշ ձեռնարկություններում դեռևս վերացված չեն դանդաղկոտ ու արհամարհական վերաբերմունքը բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական նախաձեռնությանը, և որի դեմ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ անհաշտ պայքար է մղվում։

Իրականացնելով ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումները, Վրաստանի աշխատավորները 1956 թվականին, վեցերորդ հնգամյակի առաջին տարում հաջողությամբ իրագործեցին արդյունաբերական արտադրանքի թողարկման առաջադրանքը։

Ռեսպուբլիկայում արտադրանքի պլանն ամբողջությամբ վերցրած կատարվեց 102 տոկոսով, 1955 թվականի համեմատությամբ աճ տալով 10 տոկոս։ Չուգունի թողարկումը 1955 թվականի համեմատությամբ ավելացել է 40 տոկոսով, պողպատինը՝ 18 տոկոսով, գլանվածքինը՝ 21 տոկոսով, ավտոմոբիլներինը՝ 29 տոկոսով, էքսկավատորներինը՝ 64 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրանքը՝ 19 տոկոսով, ազոտային պարարտանյութերինը՝ 3 անգամ, ցեմենտինը՝ 1,8 անգամ։

1956 թվականին հաջողությամբ զարգացավ թեթև ու սննդի արդյունաբերությունը։ Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները համախառն արտադրանքի պլանը կատարեցին 104 տոկոսով, Տեքստիլ արդյունաբերության և պարենային ապրանքների արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկությունները՝ 103 տոկոսով։

Բամբակյա կտորեղենի թողարկումը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացավ 56 տոկոսով, գուլպեղենի արտադրությունը՝ 14 տոկոսով, վերնահագուստ տրիկոտաժինը՝ 15 տոկոսով։ Պահածոների արտադրությունն աճեց 22 տոկոսով, շաքարինը՝ 35 տոկոսով։

Զգալի չափով ավելացավ փաթեթավորված թեյի, խաղողի գինու, շամպայնի, ձեթի, հրուշակեղենի, երշիկեղենի և այլ պարենային ապրանքների թողարկումը։

Արդյունաբերական արտադրանքի 1956 թվականի պլանի հաջող կատարումը ցույց տվեց այն հայրենասիրական պայքարը, որ մղում են բանվորները՝ վեցերորդ հնգամյակի առաջադրած խնդիրների լուծման համար։

*Ռեսպուբլիկան պարծենում է իր առաջավոր-նորարար մարդկանցով, որոնք արտադրական համարձակ նախաձեռնությամբ համակված են իրենց աշխատանքն անընդհատ բարելավելու ձգտումով։ Մեծաթիվ առաջավորների շարքում կարելի է հիշատակել Անդրկովկասյան՝ Ստալինի անվան մետալուրգիական գործարանի պողպատաձուլ, արագաձուլման վարպետ Ա. Զարիձեին, Ճիաթուրիի Դիմիտրովի անվան հանքի փորման պրոգրեսիվ մեթոդների հեղինակ Կ. Նադիրաձեին, Թբիլիսիի Կիրովի անվան հաստոցաշինական գործարանի խառատ Պ. Զուբրիցկուն, Քութայիսի Ս. Օրջոնիկիձեի անվան Ավտոգործարանի մետաղահատման արագահատ մեթոդի նախաձեռնող Ա. Ագապովին, ծանրաքարշ գնացքների վարման հիանալի վարպետ, Թբիլիսիի էլեկտրաքարշային մեքենավար Օ. Լիկլիկաձեին և այլոց։ Այս առաջավորների հավասարվում են հարյուրավոր ու հազարավոր արտադրության աշխատողները, որոնք ձգտում են ժամկետից շուտ կատարել վեցերորդ հնգամյակի առաջադրանքները։ Սա երաշխիք է այն բանի, որ ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ Վրաստանում պատվով կկատարվեն։*

*Ձեռք բերած հաջողությունների կողքին արդյունաբերության աշխատանքում կան և լուրջ բացեր, որոնք պայմանավորված են ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում եղած թերացումներով։ Բավական է նշել, որ արդյունաբերական ձեռնարկությունների 26 տոկոսը 1956 թվականին արտադրանքի թողարկման պլանը չի կատարել, իսկ մի շարք ձեռնարկություններ, չնայած համախառն արտադրանքի պլանը կատարել են, բայց թերակատարել են ասորտիմենտի պլանը։*

*Ռեսպուբլիկայի տնտեսության մեջ կապիտալ ներդրումների պլանը 1956 թվականին կատարվել է 103 տոկոսով։ Կառուցվել և շահագործման են հանձնվել բազմաթիվ նոր արդյունաբերական ձեռնարկություններ, ի թիվս որոնց՝ Տղվիբուլու, Գումատի № 2 և Բժուժի հիդրոէլեկտրակայանները, Ախալցխայի քարածխահանքերի վարչության № 3 հանքահորը, Ռուսթավիի ցեմենտի և աղոտա-տուկային գործարանները։ Շահագործման է հանձնված Թելիանի գինու գործարանը, Քութայիսի և Սուխումի հացի գործարանները։ Ավարտված է Սուխում-Սոչի երկաթուղու էլեկտրիֆիկացումը, շահագործման են հանձնված նաև ուրիշ այլ օբյեկտներ։*

*Սակայն, սրա հետ միասին պետք է նշել, որ շատ մինիստրություններ և շինարարական կազմակերպություններ չեն կատարում հիմնական շինարարության պետական պլանները և խախտում են նոր արտադրական կարողությունների գործարկման ժամկետները։ Շատ շինարարական օբյեկտներում դեռևս շարունակվում է միջոցների մանրատումը և խիստ մեծ է անավարտ շինարարությունը։*

*Ռեսպուբլիկայում շատ ետ մնացող բնագավառ է բնակարանային շինարարությունը։ Արդյունաբերության աշխատողների բնակարանային պահանջները շատ քիչ են բավարարվում, բնակելի տարածության շահագործման հանձնումը ձգձգվում է։*

*Հետևելով ՍՍՌՄ մի շարք քաղաքների ու ձեռնարկությունների օրինակին, որոնք եղած ռեզերվներն օգտագործում են բանվորների ու ծառա-*



*յողների համար բնակարանային, կենցաղային նորմալ պայմաններ ստեղծելու ուղղությամբ, Վրաստանի արդյունաբերության աշխատողները նույնպես բոլոր ջանքերը կգործադրեն բնակարանային պայմանների լուրջ բարելավումն ապահովելու համար։*

*Ռեսպուբլիկայի պարտիական, տնտեսական և պրոֆմիութենական կազմակերպությունների գործունեության մարտական ծրագիրն են ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումների որոշումները՝ ժողովրդական տնտեսության ղեկավարման և պլանավորման գործում եղած թերությունների վերացման վերաբերյալ։*

*Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքների իրագործումը, միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդարձակումը և տնտեսութ-յան ղեկավարման գործում նրանց դերի բարձրացումը, Վրաստանի պարթյան ղեկավարման գործում նրանց դերի բարձրացումը, Վրաստանի պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է բարելավել կազմակերպչական աշխատանքը արդյունաբերության ու տրանսպորտի ղեկավարման ուղղությամբ։*

# ՍԵՎԱՆԻ ՊՐՈԲԼԵՄԸ ԵՎ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

*ՍՄԿՊ պատմական XX համագումարից մեկ տարի է անցել: 1956 թվականի՝ վեցերորդ հնգամյակի առաջին տարվա փորձով մեր մեծ Հայրենիքի աշխատավորները մի անգամ ևս համոզվեցին, որ պարտիայի XX համագումարի նշած մեր հետագա զարգացման լենինյան ուղին նոր հիանալի արդյունքներ տվեց:*

*ՍՄԿՊ Դեկտեմբերյան պլենումը նշեց ժողովրդական տնտեսության 1956 թվականի պլանի հաջող կատարումը: Արդյունաբերությունը գերակատարեց պլանը, ըստ որում ապահովվեց ծանր արդյունաբերության ճյուղերի առավել զարգացումը, որը մեր սոցիալիստական պետության տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման հիմքն է: Խոշորագույն հաջողությունների են հասել գյուղատնտեսության աշխատողները, որոնք անցյալ տարի երկրին նշանակալի չափով ավելի հացահատիկ, միս, կաթ և գյուղատնտեսական այլ մթերքներ տվին:*

*Վերջին տարվա ընթացքում Պարտիան և Կառավարությունը ժողովրդի նյութական բարեկեցությունը բարձրացնելու ուղղությամբ լուրջ միջոցառումներ իրականացրին: Սովետական պետության սոցիալիստական էկոնոմիկայի և սովետական մարդկանց նյութական բարեկեցության անընդհատ վերելքն է՛լ ավելի բարձրացրեց նրանց աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, ժողովրդին սերտորեն համախմբեց Կոմունիստական պարտիայի շուրջը, որը լենինյան դրոշի ներքո մեր երկիրն առաջ է տանում դեպի կոմունիզմ:*

*Ինչպես ողջ Սովետական Միությունը, այնպես էլ Սովետական Հայաստանի աշխատավորները հաջողությամբ իրականացնում են ՍՄԿՊ XX համագումարի որոշումները: Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը համախառն արտադրանքի պետական պլանը 1956 թվականին կատարեց 103,7 տոկոսով: Աճը 1955 թվականի համեմատությամբ կազմեց 9,6 տոկոս, իսկ միութենական ենթակայության արդյունաբերության գծով՝ 14,1 տոկոս: Հենց միայն պարենային ապրանքների արդյունաբերության ձեռնարկությունները անցյալ տարի պլանից ավելի 110 միլիոն ռուբլու արտադրանք են տվել:*

*Վեցերորդ հնգամյակի առաջին տարում յուրացվել է արտադրանքի ավելի քան 100 նոր տեսակների արտադրություն: Ձերժինսկու անվան Հաստոցաշինական գործարանը յուրացրել է ավելի կատարելագործված ու արագ աշխատող*



*կտրատող-պտուտակահատ դազգահի արտադրությունը, Հայէլեկտրագործարանը մշակել է գեներատորների նոր միասնական սերիա, որոնք զգալիորեն ավելի լավ տեխնիկա-տնտեսական ցուցանիշներ ունեն: Այդ գործարանի ինժեներների ու արտադրության նորարարների կոլեկտիվը յուրացրել է կոմպլեկտային տրանսֆորմատորային ենթակայանների և կառավարման վահանների նոր տեսակների արտադրությունը: Ռեսպուբլիկայի ձեռնարկությունները յուրացրել են նաև վերամբարձ աշտարակներ ու կայմային ամբարձիչներ, բարձր արտադրողականությամբ կոմպրեսորների, մի շարք չափիչ սարքերի, բրդյա ու բամբակյա գործվածքեղենի նոր տեսակների արտադրությունը:*

*Անցած տարի 1955 թվականի համեմատությամբ ավտոդողերի արտադրությունն աճել է 35 տոկոսով, տրանսֆորմատորներինը՝ 43 տոկոսով, էլեկտրաչափիչ գործիքներինը՝ 2,8 անգամ, էլեկտրալամպերի արտադրությունը՝ 27,3 տոկոսով, ավտոմոբիլի պահեստի մասերինը՝ 26 տոկոսով, բրդյա կտորեղենինը՝ 23 տոկոսով և այլն:*

*Արդյունաբերական ձեռնարկություններում խոշոր աշխատանք է կատարված նոր տեխնիկայի արմատավորման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ:*

*Հայէլեկտրագործարանում արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ 1956 թվականին զգալիորեն ավելի շատ աշխատանք է կատարվել, քան նախորդ մի քանի տարիների ընթացքում: Արմատավորված է գեներատորների կոնվեյերային հավաքում ու գեներատորների ներկում, կոնվեյերացված է նաև տրանսֆորմատորների հավաքումը: Կոնվեյերացված ու մեքենայացված են ձուլման ցեխի աշխատանքի հիմնական տեսակները: Այս բոլոր միջոցառումներն զգալիորեն բարելավել են գործարանի աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները և, ամենից առաջ, բարձրացրել են աշխատանքի արտադրողականությունը, հեշտացրել են բանվորի աշխատանքի պայմանները:*

*Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ լուրջ միջոցառումներ են իրականացվել նաև Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ, Ավտոդողերի, Դազգահաշինական գործարաններում և տեքստիլ, թեթև ու սննդի արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում:*

*Սրա հետ միասին պետք է նշել, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառում լուրջ թերություններ ու չլուծված հարցեր դեռ շատ կան:*

*Գլխավոր թերություններից մեկն այն է, որ շատ ձեռնարկություններ նույնիսկ համախառն արտադրանքի պլանները չեն կատարում: 1956 թվականի պլանը թերակատարել են միութենական ենթակայության 28 ձեռնարկություն, որոնք երկրին 24 միլիոն ռուբլու պակաս արտադրանք են տվել. դրանք են Ավտոմասերի ու էլեկտրալամպերի գործարանները, Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատը, Արարատի ցեմենտի գործարանը և այլն: Որոշ ձեռնարկություններ ետ են մնում նաև աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների ու արտադրանքի որակի իմաստով, մանավանդ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության գծով:*

*Ճիշտ չէր լինի, ի հարկե, այդ բոլոր թերությունները վերագրել վատ պլանավորմանը և նյութա-տեխնիկական մատակարարման ընդհատումներին, ինչպես փորձում են անել որոշ տնտեսավարներ: Անտարակույս, պլանավորման*

թերությունները և նյութեղենի մատակարարման ընդհատումները խախտել են
ձեռնարկությունների աշխատանքի ռիթմը և բացասական ազդեցություն են
ունեցել արտադրության վրա։ Սակայն, վոլֆրամային լարի նման դեֆիցիտային
նյութի խոշոր գերածախսումը, որ թույլ են տվել Երևանի էլեկտրալամպերի
գործարանում, վառարանների անթույլատրելի պարապուրդները ցեմենտի գոր-
ծարանում, մեխանիզմների անբավարար օգտագործումը և աշխատանքի վատ
կազմակերպումը Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատում, որոնք
հասցրել են պլանների թերակատարման և տեխնիկա-տնտեսական ցուցանիշ-
ների վատացման, միմիայն այդ ձեռնարկությունների տնտեսական ու տեխնի-
կական ղեկավարության ցածր մակարդակի հետևանք են։

Անցյալ տարի որոշ դրական արդյունքների են հասել կառուցողները։ 1956
թվականի դեկտեմբերին շինարարությունն ավարտվեց և առաջին արդյունա-
բերական հոսանքը տվեց Արզնու հիդրոէլեկտրակայանը, որ Սևան—Հրազդան
կասկադի չորրորդ կայանն է, կարճ ժամանակամիջոցում կառուցվեց և շահա-
գործման հանձնվեց Երևանի Հեռուստատեսային կենտրոնը։ Ռեսպուբլիկայի
Քաղաքային ու գյուղական շինարարության մինիստրությունը անցած տարի
կառուցեց և շահագործման հանձնեց 46 հազար քառակուսի մետր բնակելի տա-
րածություն, որ երկու անգամ ավելի է 1955 թվականին կառուցվածից։

Այս ամենը լավ է, բայց և այնպես շինարարական կազմակերպությունների
աշխատանքը գոհացուցիչ համարել չի կարելի, որովհետև նրանք չեն կատարել
բնակարանային շինարարության 1956 թվականի պլանը։ Կառուցողների աշ-
խատանքի թափն ու որակը առայժմ չեն համապատասխանում այսօրվա պա-
հանջներին և ամենևին չեն գոհացնում աշխատավորների պահանջները։

Շինարարության ու նախագծման գործում շատ կան թերացումներ ու չլուծ-
ված հարցեր։ Գոյություն ունի միջոցների մասնատում և շինարարության ժամ-
կետների անթույլատրելի ձգձգում, չափազանց դանդաղ են արմատավորվում
հավաքովի երկաթբետոնային կոնստրուկցիաներն ու դետալները, չեն լուծված
շինարարությունները տեղական շինանյութերով (գաջով, բազալտ քարով, ա-
վազով և այլն) անընդհատ ապահովելու հարցերը, նախագծերի մեջ թույլա-
տրվում են ավելորդություններ և այլն։

Արդյունաբերության ու շինարարության 1956 թվականի աշխատանքի հա-
մառոտ վերլուծությունը ցույց է տալիս, որ պարտիական ու սովետական օր-
գանների կողմից արդյունաբերության ու շինարարական կազմակերպություն-
ների գործունեության ղեկավարման բնագավառում լուրջ թերություններ կան։

Տարակույս չկա, որ ռեսպուբլիկայի պարտիական օրգանները իրականաց-
նելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները՝ վերակառուցել ու բարձրացրել են
արդյունաբերության ղեկավարման մակարդակը։ Օրինակ, Հայաստանի ԿՊ
Ստալինյան շրջկոմը սկսել է ավելի լավ ու ավելի շատ զբաղվել արդյունաբե-
րական ձեռնարկությունների տեխնիկական պրոգրեսի հարցերով, թափանցել
արտադրության էկոնոմիկայի մեջ, ավելի օպերատիվ ձևով լուծել հարցերը։
Ուշադրության արժանի է պարտիայի Կիրովականի քաղաքային կոմիտեի փոր-
ձը, որը վերակառուցել է իր արդյունաբերական բաժինը և աշխատող հրահան-
գիչներին համձնարարել է զբաղվել արդյունաբերության առանձին ճյուղերով։
Վերջին քաղաքային պարտկոնֆերենցիայում նշվեց, որ քաղկոմն սկսել է ավելի



կոնկրետ ու նպատակասլաց զբաղվել արդյունաբերական ձեռնարկությունների
սկզբնական պարտիական կազմակերպություններով։

Սակայն, պարտիայի շատ շրջկոմների, քաղկոմների և նույնիսկ Կենտրո-
նական Կոմիտեի արդյունաբերական բաժինները լիովին չեն վերակառուցել
իրենց աշխատանքը ՍՄԿՊ XX համագումարի պահանջներին համապատաս-
խան։ Նրանք խորամուխ չեն լինում արդյունաբերական ձեռնարկությունների ու
նորակառույցների տեխնիկայի, էկոնոմիկայի ու ֆինանսների մեջ, մակերեսո-
րեն են զբաղվում ետ մնացող ձեռնարկություններով, բավարար չափով չեն հե-
տաքրքրվում բանվորների, վարպետների ու ինժեներա-տեխնիկական աշխատող-
ների տեխնիկական ու կուլտուրական մակարդակի բարձրացման հարցերով։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ իրականացնելով ՍՄԿՊ
Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները՝ վերացնել նշված թերու-
թյունները և ղեկավարությունն անընդհատ կատարելագործելով, 1957 թվակա-
նին ապահովել տեխնիկական նոր պրոգրեսը և պլանների կատարումը բոլոր
արդյունաբերական ձեռնարկություններում ու շինարարական կազմակերպու-
թյուններում՝ քանակական ու որակական բոլոր ցուցանիշներով։

***

1957 թվականը՝ վեցերորդ հնգամյակի երկրորդ տարին, Սովետական Հա-
յաստանը եղբայրական ռեսպուբլիկաների համերաշխ ընտանիքում դիմավո-
րեց էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի բնագավառներում ձեռք բերած
նորանոր նվաճումներով, որ հանդիսանում է մեր մեծ Կոմունիստական պար-
տիայի և Սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականու-
թյան հաղթանակը։

Սովետական Հայաստանի աշխատավորներին ուրախացնում են ոչ միայն
ձեռք բերած հաջողությունները, այլև ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգաց-
ման պարզ հեռանկարները։

Խոսելով ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման հեռանկարների
մասին՝ ամենից առաջ պետք է կանգ առնել Սևանի պրոբլեմի վրա։

Ի՞նչ է նշանակում Սևանի պրոբլեմ։

Այս հարցի մեջ պարզություն մտցնելու համար նախ և առաջ պետք է ասել,
որ մեր ռեսպուբլիկան ջերմա-էներգետիկ այլ ռեսուրսներ չունենալով՝ իր էկո-
նոմիկայի և կուլտուրայի բարգավաճումն ապահովել է Սևանա լճի ջրի զարա-
նոր պաշարների էներգետիկ ու իռիգացիոն օգտագործմամբ, այսինքն՝ Հրազ-
դան գետի վրա էներգետիկ հզոր տնտեսություն ստեղծելով։

Սևանա լճի օգտագործման սխեմայի իրականացումով ապահովվեց ռես-
պուբլիկայի արդյունաբերության արագ աճը, որը 1927—1928 թվականների
համեմատությամբ բարձրացավ 80 անգամ, իսկ էլեկտրական էներգիայի ար-
տադրությունը նույն ժամանակամիջոցում աճեց 110 անգամ։ Սա փաստ է։
Սակայն պետք է ուղղակի ասել, որ անցյալում թույլ են տրվել որոշ սխալներ,
որոնք հասցրել են Սևանի այնքա՜ն արժեքավոր ջրի անտնտեսվար օգտագործ-
ման և ջրի մակարդակի արագ իջեցման։

Այդ սխալներն արտահայտվել են նրանով, որ անթույլատրելիորեն ձըգ-
ձըգվել է Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարու-
թյունը և ռեսպուբլիկայի արդյունաբերությունը զարգացել է միակողմանիորեն,

այսինքն՝ զարգացնել է գլխավորապես էներգատար արդյունաբերությունը, որը, նկատի ունենալով ռեսպուբլիկայի էներգետիկ ռեսուրսների սահմանափակությունը, նպատակահարմար չէր:

Սկսած 1954 թվականից, միութենական կառավարության հոգատարության ու օգնության շնորհիվ վճռականորեն վերացվում են անցյալում թույլ տրված այդ սխալները: Բացի դրանից, հաշվի առնելով գիտության ու տեխնիկայի զարգացման ներկա մակարդակը, խնդիր է դրվում փոխել Սևանի ջրօգտագործման սխեմայի երկրորդ մասը: Սկզբնական սխեմայի համաձայն նախատեսվում էր Սևանա լճի մակարդակի իջեցում 50 մետրով, իսկ այդ նշանակում էր լճի մեծ մասի ցամաքեցում: Այնինչ, ներկայումս հարցն այնպես է լուծվում, որ պայքարելով Սևանի ջրի ծախսման խստագույն խնայողության ու ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման համար, Սևանա լճի մակարդակը հնարավորին չափ ավելի բարձր պահպանվի:

Այս է Սևանի պրոբլեմի էությունը և մեր խնդիրը առաջին էտապում: Սակայն իրավացի չեն այն ընկերները, որոնք շեշտում են այս հարցի մեկ կողմը, Սևանի պրոբլեմի միայն էսթետիկական կողմը, այսինքն՝ հնադարյան բարձրլեռնային սքանչելի Սևանը պահպանելու հարցը: Սա, իհարկե, կարևոր է և ամեն ինչ արվում է, որպեսզի Սևանա լիճը հնարավորին չափ բարձր մակարդակի վրա պահպանվի: Բայց գլխավորն այդ չէ:

Սևանի պրոբլեմի լուծումը նշանակում է ռեսպուբլիկայի էներգետիկ պրոբլեմի լուծում: Չէ՞ որ մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման ամբողջ հեռանկարը կախված է էներգետիկայի զարգացումից, էներգետիկ պրոբլեմի ճիշտ լուծումից:

Սևանի պրոբլեմի լուծման բարդությունը հենց այն է, որ մենք Սևանա լճի պահպանման հարցը անպայմանորեն պետք է զուգակցենք ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման ու աշխատավորության բարեկեցության բարձրացման խնդրի հետ: Այստեղ միակողմանի մոտեցումը կարող է սխալ հետևությունների հասցնել և վնասել մեր էկոնոմիկայի հետագա զարգացման գործին:

Նշանակում է՝ Սևանի պրոբլեմում գլխավորն այն է, որ գիտա-տեխնիկական բարձր մակարդակով լուծվի էներգետիկ ռեսուրսների էֆեկտիվ օգտագործման, ռեսպուբլիկայի էներգետիկայի ճիշտ զարգացման հարցը:

Ահա թե ինչու Հայաստանի ԿՊ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը վերջին երեք տարիների ընթացքում լուրջ ուշադրություն են դարձրել ու շարունակում են լրջորեն զբաղվել Սևանի պրոբլեմով, մեզ բոլորիս հուզող այդ հարցով:

Հայաստանի ԿՊ Կենտկոմի բյուրոն ռեսպուբլիկայի գիտնականների ու մասնագետների լայն մասնակցությամբ խորապես ուսումնասիրելով Սևանի պրոբլեմը՝ 1956 թվականի նոյեմբերին հատուկ որոշում ընդունեց, որտեղ կոնկրետ միջոցառումներ են նշված գիտա-հետազոտական աշխատանքների ու հիդրո-շինարարության տեմպերի ուժեղացման համար, որոնք կապահովեն Սևանա լճի ջրի դարավոր պաշարների ռացիոնալ օգտագործումը:

Ներկայումս Սևանի պրոբլեմը, այսինքն՝ ռեսպուբլիկայի էներգետիկ պրոբլեմը լուծվում է հետևյալ կերպ:

Նախ՝ արագացվում է Սևան—Հրազդան կասկադի շինարարությունը: Եթե



18 տարվա ընթացքում կասկադի ութ հիդրոէլեկտրակայաններից կառուցվել է ընդամենը երեքը, ապա խնդիր է դրվում վեցերորդ հնգամյակում կառուցել մնացած հինգ հիդրոկայանները և, այդպիսով, 1960 թվականին ավարտել ամբողջ կասկադի կառուցումը:

Ինչո՞ւ կարևոր է արագացնել Սևան—Հրազդան կասկադի շինարարությունը: Որովհետև նոր հիդրոկայանների գործարկումը կբարձրացնի Սևանի ջրի օգտագործման գործակիցը: Արդեն իսկ 1957 թվականին Արզնու հիդրոէլեկտրակայանի գործարկման կապակցությամբ Սևանա լճից ջրի բացթողումը նվազեցվելու է մոտավորապես 200 միլիոն խորանարդ մետրով: Մյուս հիդրոկայանների գործարկումով, այսինքն՝ երբ Սևանի ջուրը կանցնի բոլոր հիդրոկայանների տուրբիններով և ավելի լրիվ չափով կտա իր էներգիան, հնարավորություն կլինի ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության էլեկտրաէներգիայի կարիքները բավարարել լճից համեմատաբար ավելի քիչ ջուր բաց թողնելով:

Իսկ սա շատ կարևոր է, որովհետև Սևանա լիճը պահպանելու համար անհրաժեշտ է այժմ շատ խնայողաբար ծախսել նրա ջուրը:

Ահա թե ինչու անհրաժեշտ է արագացնել Սևան—Հրազդան կասկադի շինարարությունը: Դա հնարավորություն կտա ավելի խնայողաբար, ավելի ռացիոնալ օգտագործել Սևանի ջուրը, նվազեցնել ջրի բացթողումը և դանդաղեցնել լճի մակարդակի իջեցումը:

Ներկայումս կառուցվում է Աթարբեկյանի հիդրոկայանը, որը շահագործման է հանձնվելու 1958 թվականին: Ընթացիկ տարում սկսվելու է Երևանի հիդրոկայանի կառուցումը: Հաջորդ տարիներին սկսվելու է Արգավանդի ու Նորագավթի հիդրոկայանների շինարարությունը:

Հայհիդրոէներգոշինի մեծաթիվ ու փորձված կոլեկտիվի խնդիրն է՝ Սևան—Հրազդան կասկադի բոլոր հիդրոկայանների շինարարությունն ավարտել կառավարության սահմանած ժամկետներին:

Երկրորդ, հաշվի առնելով մեր էներգետիկ ռեսուրսների սահմանափակ լինելը և Սևանի ջրի խնայողաբար օգտագործման անհրաժեշտությունը, հարկ եղավ ժամանակավորապես դադարեցնել էներգատար արդյունաբերության հետագա զարգացումը մեր ռեսպուբլիկայում: Այս հարցը լուծված է և ներկայումս ռեսպուբլիկայի արդյունաբերությունը զարգանում է գլխավորապես ի հաշիվ մեքենաշինության, սարքաշինության և արդյունաբերության, ո՛չ էներգատար ճյուղերի արագ աճման, այսինքն՝ այն ճյուղերի, որոնք մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա չեն պահանջում:

Հարկավոր է նշել, որ ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը հավանություն տալով այս առաջարկությանը, մի անգամ ևս ցուցաբերեցին իրենց ուշադրությունն ու լենինյան հոգատարությունը մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի ճիշտ զարգացման նկատմամբ:

Երրորդ, ինչպես հայտնի է, մեր ժողովրդական տնտեսությունն առայժմ հենվում է միակ էներգետիկ բազայի՝ Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների վրա: Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման համար խիստ անհրաժեշտ է ստեղծել երկրորդ էներգետիկ բազան:

Այս հարցը նույնպես լուծված է: Զանգեզուրի շրջանում, Որոտան գետի վրա ստեղծվելու է ռեսպուբլիկայի երկրորդ էներգետիկ բազան՝ հիդրոէլեկտրակայանների Որոտանի կասկադը:

Միութենական կառավարության որոշմամբ ներկայումս նախագծային-հետախուզական աշխատանքներ են կատարվում և 1959 թվականին սկսվելու է Ներքին-Տաթևի 160 հազար կիլովատ-ժամ կարողությամբ հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, որ Որոտանի կասկադի առաջին հիդրոկայանն է լինելու:

Չորրորդ, ներկայումս քննարկվում է ռեսպուբլիկայում նոր հզոր ԳՐԷՍ-ի շինարարության հարցը:

Մեր ռեսպուբլիկայում վառելանյութի բացակայությունը և ջրաէներգետիկ ռեսուրսների սահմանափակությունը հնարավորություն չեն տալիս հարկ եղած թափով զարգացնել էներգետիկան: Այս կապակցությամբ մեզ մոտ հեռանկարային խիստ անհրաժեշտություն կա էլեկտրական էներգիայի արտադրության այլ միջոցներ գտնել, որը հնարավորություն կտա հետագայում ավելի արագ զարգացնել արդյունաբերությունը, այդ թվում և էներգատար արդյունաբերությունը:

Նոր էներգետիկ բազայի ստեղծումը հնարավորություն կտա ավելի լրիվ օգտագործելու հետազոտած հումքային հարուստ ռեսուրսները և գունավոր մետալուրգիայի ու քիմիական արդյունաբերության շատ ավելի արտադրանք տալու, որն այնքան անհրաժեշտ է երկրին: Դա նաև կնպաստի ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի հետագա էլ ավելի արագ զարգացմանը:

Հետագայում, երբ կմիավորվեն Անդրկովկասյան բոլոր ռեսպուբլիկաների, ինչպես և Հյուսիսային Կովկասի էներգասիստեմները, լրացուցիչ հնարավորություններ կստեղծվեն Սևանա ջուրն ավելի խնայողաբար օգտագործելու համար:

Վերը թված բոլոր չորս միջոցառումների իրականացումը լիովին չի լուծում Սևանի պրոբլեմը: Բանն այն է, որ Արարատյան դաշտը ոռոգելու, ինչպես և էներգասիստեմը կարգավորելու համար մոտ 400—500 միլիոն խոր. մետր ջուր ավելի կպահանջվի, քան մուտք է լինելու Սևանա լճում: Այդպիսով, նաև այս պայմաններում լճի մակարդակը, թեկուզ և զգալիորեն դանդաղ, բայց և այնպես իջնելու է:

Ահա թե ինչու ՀԿՊ Կենտկոմի բյուրոն և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը ջրի այդ դեֆիցիտը վերացնելու և լճի մակարդակը հնարավորին չափ պահելու համար որոշել են.

Հինգերորդ, ուսումնասիրել մոտակա ակունքներից Սևանա լիճը ջուր փոխադրելու հարցը և

Վեցերորդ, Արարատյան դաշտի ստորերկրյա ջրերն օգտագործել ոռոգման նպատակներով:

Հաշիվները ցույց են տալիս, որ Սևանա լճի մակարդակը բարձր պահելու համար անհրաժեշտ է Սևանին տարեկան 400—500 միլիոն խորանարդ մետր լրացուցիչ ջուր տալ: Օրինակ, իրական հնարավորություն կա Արևելյան Արփաչայ գետի ջուրը դեպի Սևան ուղղելու: Լճին լրացուցիչ ջուր տալու մի շարք ուրիշ փոփոխակներ էլ են ուսումնասիրվում: Իսկ Արարատյան դաշտի ստորերկրյա ջրերը ոռոգման նպատակով օգտագործելը հնարավորություն կտա նվազեցնելու ջրի բաց թողումը Սևանա լճից:

Այս կապակցությամբ ՀԿՊ Կենտկոմի և ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետի որոշմամբ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի ջրաէներգետիկ ինստիտուտին ու Երկրաբանական վարչությանը հանձնարարված է



արագացնել գիտահետազոտական ու հետախուզական աշխատանքները, տնտեսական հաշվումներ կատարել և օգտագործելով հայրենական գիտության ու տեխնիկայի, ինչպես և արտասահմանյան գիտության նվաճումները՝ մոտակա տարիներին լուծել այդ խնդիրները:

Ահա այսօր այսպես է լուծվում մեր ռեսպուբլիկայի էներգետիկայի և էկոնոմիկայի հետագա զարգացումն ապահովելու համար այնքան կարևոր ու կենսականորեն անհրաժեշտ Սևանի պրոբլեմը:

Ինչպես տեսնում ենք, սա բարդ, բայց և լիովին լուծելի խնդիր է: Մենք համոզված ենք, որ Սևանա լիճն անպայման կպահպանվի հնարավորին չափ բարձր մակարդակի վրա և հաջողությամբ կլուծվեն ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր հեռանկարային հարցերը:

Տարակույս չկա, որ ռեսպուբլիկայի պարտիական ու սովետական օրգանները, գիտնականները, մասնագետներն ու աշխատավորները իրենց բոլոր ուժերը մոբիլիզացնելով, հետևողականորեն ու համառորեն կաշխատեն, որպեսզի առաջիկա 8—10 տարվա ընթացքում տնտեսապես առավել նպատակահարմար ձևով և գիտա-տեխնիկական բարձր մակարդակով լուծեն ռեսպուբլիկայի էներգետիկայի հետագա զարգացման այս կարևորագույն պրոբլեմը:

Մի քանի խոսք գազիֆիկացման մասին: Այս գործում որոշ փոփոխություն կա: 1956 թվականի սկզբին նախատեսվում էր Երևան քաղաքում գազամուղ անցկացնել Ստավրոպոլից՝ Գրոզնու և Թբիլիսիի վրայով: Սակայն անցյալ տարվա վերջում երկրորդ հնարավորությունը ստեղծվեց՝ գազամուղ անցկացնել Ադրբեջանական ՍՍՌ Կարադաղից:

Ներկայումս հաշված է, որ Կարադաղում գազի հարուստ պաշարներ կան և քննարկվում է Հայաստանի գազիֆիկացիայի հարցը: Նախատեսվում է Երևանի հետ միասին գազիֆիկացիայի ենթարկել նաև Լենինական, Կիրովական և Ալավերդի քաղաքները:

Հեռանկարային հարցերում նորություն է մեր ռեսպուբլիկայում ժամանակակից սարքաշինության և ավտոմատիզացիայի միջոցների գիտական ու արտադրական հիմնարկությունների ստեղծումը:

Պարտիայի և կառավարության որոշմամբ ՍՍՌՄ սարքաշինության և ավտոմատիզացիայի միջոցների մինիստրությունը 1956 թվականին Երևան քաղաքում կազմակերպել է մաթեմատիկական մեքենաների գիտա-հետազոտական ինստիտուտ՝ փորձնական արտադրական բազայով, Կիրովական քաղաքում՝ «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտ, փորձնական գործարան և «Ավտոմատիկա» ինքնուրույն կոնստրուկտորական բյուրո, Լենինականում՝ արդյունաբերական սարքերի ինքնուրույն կոնստրուկտորական բյուրո:

Մաթեմատիկական մեքենաների Երևանի գիտահետազոտական ինստիտուտում արդեն գործում են սովոր թվով գիտական և ինժեներա-տեխնիկական կադրեր, որոնց նորմալ աշխատանքի համար լավ պայմաններ են ստեղծված: Հենց այժմ ինստիտուտը ձեռնամուխ է եղել իր արտադրական պրոցեսի իրականացմանը, որի արդյունքները մոտակա տարիներին գործադրվելու են մեր տնտեսության կարևոր ճյուղերում:

Կիրովականի «Ավտոմատիկա» ԳՀԻ-ն (գիտահետազոտական ինստիտուտ)

կոչված է առաջիկա տարիներին նպաստելու այն բանին, որպեսզի մեր արդյունաբերության մի շարք կարևոր ձեռնարկությունները գործեն ավտոմատների օգնությամբ: Մի հանգամանք, որն ահագին չափով կբարձրացնի նյութական բարիքների արտադրությունը:

Այն բոլոր գիտա-տեխնիկական պրոբլեմները, որոնք լուծվելու են ժամանակակից սարքեր ու մաթեմատիկական մեքենաներ կիրառելու հետևանքով, մեզ հնարավորություն կընձեռնեն խոշորագույն և արմատական փոփոխությունների հասնելու արդյունաբերության բազմաթիվ ճյուղերում: Իսկ դա հնարավոր կդարձնի մոտ ապագայում մեր արդյունաբերության կարևոր օղակները իրոք դնել մեր դարաշրջանի տեխնիկական պրոգրեսի պատվանդանին:

Այսպիսով, մեզ մոտ վառ հեռանկար կա ժամանակակից սարքեր ու ավտոմատացման միջոցներ ստեղծելու ուղղությամբ գիտական և արտադրական-փորձնական աշխատանքները ծավալելու և զարգացնելու համար:

Վեցերորդ հնգամյակի վերջում այդ նոր ու կարևոր ճյուղում աշխատելու են մի քանի հազար գիտական, ինժեներա-տեխնիկական աշխատողներ ու որակյալ բանվորներ:

Սա նոր և բարդ խնդիր է, բայց անպայման հաջողությամբ կլուծվի, որովհետև մենք մեր ռեսպուբլիկայում քիչ չունենք ընդունակ ֆիզիկոսներ, մաթեմատիկոսներ և այլ գիտական կադրեր ու մասնագետներ: Իսկ պարտիական ու սովետական օրգանները, գիտության ու արդյունաբերության աշխատողները ամեն կերպ կաջակցեն մեր ռեսպուբլիկայի այդ նոր բարձր կուլտուրական ու գիտա-տեխնիկական օջախի զարգացմանը:

Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է ստեղծել այնպիսի ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Ռելեի գործարանը, Լուսավանի սարքաշինական գործարանը, Կիրովականի ացետատային մետաքսի գործարանը, մի շարք ուրիշ սարքաշինական գործարաններ, սննդի ու թեթև արդյունաբերության ձեռնարկություններ, ինչպես նաև տեխնիկապես վերակառուցվելու և ընդարձակվելու են գործող արդյունաբերական ձեռնարկությունները:

Ձերժինսկու անվան դազգահաշինական գործարանը 1957 թվականին 70 տոկոսով ավելի համախառն արտադրանք է տալու, քան 1956 թվականին, և բաց է թողնելու ավելի նոր, ավելի բարձր արտադրողականությամբ խառատապտուտակահան դազգահներ, ինչպես և մի շարք առանձնահատուկ և ագրեգատային դազգահներ:

Հայէլեկտրագործարանը շարունակելու է բարձրացնել արտադրության տեխնիկական մակարդակը: Նախատեսվում է կոնվեյերային վառարան տեղադրել գեներատորի ու տրանսֆորմատորի երկաթե մասերի լաքապատման համար, ավտոմատիկ կոնվեյերային գիծ դնել տրանսֆորմատորների պատյանների զոդման համար, կոնվեյերային հավաքման փոխադրել հարդուկներն ու ռեզանի լամպերը, ավտոմատիկ ագրեգատ է տեղադրվելու նաև մասերի նիկելապատման համար: Հետագա ավտոմատացման և արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման միջոցով Հայէլեկտրագործարանի արտադրանքը, ի հաշիվ փոքր կապիտալ ներդրումների, վեցերորդ հնգամյակի վերջում համարյա կկրկնապատկվի և այն դառնալու է խոշորագույն էլեկտրամեքենաշինական գործարաններից մեկը ՍՍՌՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության սիստեմում:



Ժամացույցի գործարանն ընթացիկ տարում համախառն արտադրանքն ավելացնելու է 20 տոկոսով: Առաջիկա 2—3 տարվա ընթացքում գործարանն զգալիորեն ընդարձակվելու և յուրացնելու է գրպանի փոքրիկ արթնացնող ժամացույցների արտադրությունը, որոնք լինելու են առաջին կարգի, 15 քարանոց և նախնական զարկով:

Պահեստամասերի գործարանը խոշոր աշխատանք է կատարում տեխնիկական վերակառուցման ու դազգահային սարքավորման թարմացման, ավտոմոբիլների նոր դետալների արտադրությունը յուրացնելու ուղղությամբ: 1957 թվականին 28 տեսակ ավտոմասերի փոխարեն թողարկելու է 48 տեսակ մասեր: Ավտոմասերի արտադրության ծավալն ընթացիկ տարում աճելու է 45 տոկոսով:

Ծանր արդյունաբերության ճյուղերի աճման հետ միասին վեցերորդ հնգամյակում զարգանալու է նաև թեթև, սննդի ու տեղական արդյունաբերությունը: Հացի նոր գործարաններ են կառուցվելու Երևանում, Լենինականում, Ղափանում, Նոր Բայազետում, բիսկվիթի ֆաբրիկա է կառուցվելու Երևանում: Վերակառուցվում ու ընդարձակվում են գործող ձեռնարկությունները, որոնք բնակչության համար ավելի ու ավելի շատ և ավելի բարձրորակ ու բազմապիսի լայն սպառման ապրանքներ են արտադրելու:

Մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման հեռանկարը պարզ է ու բերկրալի: Մեր խնդիրն է՝ գլխավորել մասսաների հարաճուն ստեղծագործական ակտիվությունը, արմատապես բարելավել պարտիական կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքը, հետևողականորեն և հմտորեն իրականացնել աշխատանքների նախանշված ծրագիրը:

Ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումներից՝ բնակարանային շինարարությանը 1957 թվականին զգալիորեն ավելի մեծ ծավալ է տրվելու: Շինարարության պլանները դեռևս ճշգրտվում են, բայց այժմ էլ հաստատ կարելի է ասել, որ ընթացիկ տարում հենց միայն ռեսպուբլիկական և միութենական-ռեսպուբլիկական գերատեսչությունների գծով նախատեսվում է կառուցել ու շահագործման հանձնել 90 հազար քառ. մետր բնակելի տարածություն, ի դիմաց անցյալ տարվա կառուցված 37 հազար քառ. մետրի: Բնակարանային շինարարությունն զգալիորեն ընդարձակվում է նաև միութենական ենթակայության ձեռնարկությունների գծով:

Շինարարության և շինանյութերի արդյունաբերության գծով մենք ունենք մի շարք «նեղ» տեղեր, որոնք այժմ վերացվում են: Ընդարձակվում է Արարատի ցեմենտի գործարանը, որի արտադրությունը վեցերորդ հնգամյակի վերջում խոշոր չափով աճելու է, համարյա երկու անգամ ավելի, քան 1956 թվականին, զգալիորեն ավելացվում է գաջի, տեղական քարերի ու ավազի արտադրությունը: Նախատեսված է զգալիորեն ավելացնել հավաքովի երկաթբետոնի արտադրությունը, 1957 թվականին հասցնելով այն 57.000 խոր. մետրի, ի դիմաց 1956 թվականին փաստորեն արտադրած 20.000 խոր. մետրի:

Այս միջոցառումները նպաստելու են շինարարության որակի հետագա բարելավմանը, տեմպերի արագացմանը և ինքնարժեքի իջեցմանը:

Ռեսպուբլիկայի պարտիական, սովետական ու տնտեսական օրգանները նախատեսում են մի շարք ուրիշ միջոցառումներ ևս, որոնց նպատակն է ՍՄԿՊ

Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրների գործնական
իրականացումը:
Ամենից առաջ միջոցառումներ են մշակվում արդյունաբերության և շինա-
բարության պլանավորման ու նյութա-տեխնիկական մատակարարման գործի
արմատական բարելավման ուղղությամբ: Անցած պարտիական կոնֆերենցիա-
ներում և Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի արդյունքների քննարկման հա-
մար գումարված ակտիվի ժողովներում ռեսպուբլիկական օրգաններն իրավա-
ցիորեն խիստ քննադատության ենթարկվեցին այս հարցերի առնչությամբ:
Նախատեսվում է պարզեցնել մատակարարող կազմակերպությունների կա-
ռուցվածքը և ուժեղացնել ռեսպուբլիկայի Պետպլանի պատասխանատվությունը
արդյունաբերության ու շինարարության նյութա-տեխնիկական մատակարար-
ման գործում: Այս կապակցությամբ խնդիր է դրվում Պետպլանն ամրապնդել
ավելի որակյալ ու եռանդուն կադրերով, որոնք ավելի ճիշտ և ավելի օպերատիվ
կերպով լուծեն ժողովրդատնտեսական պլանի կատարումն ապահովող հար-
ցերը:
Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ է՛լ ավելի բարձրացնել
իրենց ղեկավար դերը, կոնկրետացնել արդյունաբերության ու շինարարության
պարտիական ղեկավարությունը, բարձրացնել պահանջկոտությունը տնտեսա-
վարական կադրերի նկատմամբ, որպեսզի ավելի արագ արմատավորվի նոր
տեխնիկան, կատարելագործվի տեխնոլոգիան, ավելի հմտորեն օգտագործվեն
ռեզերվները, բարձրացվի աշխատանքի արտադրողականությունը, իջեցվի ինք-
նարժեքը, բարելավվի թողարկվող արդյունաբերական ապրանքի որակը և էժա-
նացվի շինարարությունը:
Պարտիական օրգանները պետք է մեծ ուշադրություն դարձնեն կապիտալ
ներդրումների ավելի էֆեկտիվ օգտագործման հարցերին, փոքր կապիտալ
ծախսումների հաշվին արտադրանքի թողարկումն ավելացնելու և աշխատավոր-
ների բնակարանային-կենցաղային պայմանները բարելավելու խնդիրներին:
ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները մեր աշխատան-
քի մարտական ծրագիրն են՝ պարտիայի XX համագումարի պատմական որո-
շումների իրականացման համար մղվող պայքարում:
Տարակույս չկա, որ ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Սո-
վետական Հայաստանի աշխատավորներն էլ մասնակցելով Հոկտեմբերյան Սո-
ցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին ծավալված հա-
մաժողովրդական սոցիալիստական մրցությանը՝ կապահովեն 1957 թվականի
ժողովրդական տնտեսության պլանի ժամկետից շուտ կատարումը բոլոր ցու-
ցանիշներով և իրենց ներդրումը կանեն մեր մեծ Հայրենիքի տնտեսական ու
պաշտպանական հզորության է՛լ ավելի ամրապնդման գործում:

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ՆՐԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ս. ԻՇԽԱՆՅԱՆ

Սովետական ժողովուրդը կենսագործելով Կոմունիստական պարտիայի
XX համագումարի պատմական որոշումները՝ նոր հաղթանակներ է ձեռք բե-
րում կոմունիզմի կառուցման բոլոր բնագավառներում: Վեցերորդ հնգամյա-
կի առաջին տարում մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման
արդյունքները, որ ամփոփեց ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը,
ուրախության և հպարտության զգացմունքով են լցնում սովետական մարդ-
կանց սրտերը:
Վստահորեն առաջ ընթանալով լենինյան ուղիով՝ մեր երկիրը 1956 թվա-
կանին խոշոր հաջողությունների հասավ սոցիալիստական արդյունաբերու-
թյան և առաջին հերթին՝ ծանր արդյունաբերության, ժողովրդական տնտե-
սության մյուս ճյուղերի, ինչպես նաև գյուղատնտեսության զարգացման
գործում: ՍՍՌՄ-ը է՛լ ավելի զորեղացավ, աճեց նրա տնտեսական ու պաշտ-
պանական հզորությունը, բարձրացավ ժողովրդի նյութական բարեկեցու-
թյունը:
Սովետական Միության տնտեսական զարգացման հաջողությունները մի
անգամ ևս պերճախոս կերպով ցույց են տալիս այն մեծ առավելություննե-
րը, որ ունի տնտեսության սոցիալիստական սիստեմը կապիտալիստական
սիստեմի նկատմամբ, վկայում են մեր երկրի, ինչպես նաև սոցիալիստա-
կան լագերի բոլոր երկրների ժողովրդական տնտեսության աճման ու ծաղկ-
ման անսահման հնարավորությունների մասին:
Խաղաղ տնտեսական շինարարության բնագավառում Սովետական
Միության և սոցիալիստական լագերի բոլոր պետությունների հաջողություն-
ները, սոցիալիզմի գաղափարների հսկայական ձգողական ուժը առաջ են
բերում իմպերիալիստական շրջանների կատաղությունն ու չարությունը: Վեր-
ջին շրջանում իմպերիալիստական ռեակցիան ուժեղացրել է վարկաբեկիչ
հարձակումները սոցիալիստական սիստեմին պատկանող երկրների և առա-
ջին հերթին Սովետական Միության տնտեսական ու քաղաքական կարգի
դեմ: Բուրժուական ռեակցիոն սոցիոլոգներն ու քաղաքագետները կատարե-
լով իրենց տերերի սոցիալական պատվերը, ամեն կերպ ջանում են պճնա-
զարդել կապիտալիստական հասարակության շպարված կերպարանքը, աշ-
խատավորների գիտակցությունը մթագնելու նպատակով բոլոր խաչմերուկ-
ներում ամբողջ կոկորդով աղմկում են ինչ-որ բուրժուական դեմոկրատիայի
մասին:
Բուրժուական ստահոդ պրոպագանդան ճգնում է ամեն կերպ արատա-

վորել և զրպարտել սոցիալիստական դեմոկրատիան, բարբաջում է Սովետական Միությունում դեմոկրատիայի «բացակայության» մասին, ձգնում է հերքել սոցիալիստական հասարակարգի ճշմարիտ դեմոկրատիայի բնույթը:

Սակայն այդ բոլոր փորձերը ձախողման են դատապարտված: Կյանքը դաժանորեն հերքում է բուրժուական նողկալի պրոպագանդայի կեղտոտ հերյուրանքները:

Սովետական պետության զարգացման ամբողջ պատմությունը ակնառու կերպով ցույց է տալիս, որ սովետական դեմոկրատիան միլիոն անգամ դեմոկրատական է ամեն մի բուրժուական դեմոկրատիայից: Սովետական իշխանությունը իսկական ժողովրդական իշխանություն է, որին ստեղծել է ժողովուրդը և որը ծառայում է ժողովրդին:

Ռևոլյուցիայի մեծագույն հանճար, Սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը նշել է, որ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով մեր երկրում հաստատված պրոլետարական սոցիալիստական դեմոկրատիան աշխատավորներին տվեց «...այնպիսի ազատություն ու դեմոկրատիա, որը տեսնված չի, անհնարին է և աներևակայելի որևէ բուրժուական դեմոկրատական ռեսպուբլիկայի մեջ, խլելով, օրինակ, բուրժուազիայից պալատներն ու առանձնատները (առանց դրան ժողովների ազատությունը կեղծավորություն է), խլելով կապիտալիստներից տպարաններն ու թուղթը (առանց դրան մամուլի ազատությունն ազգի աշխատավոր մեծամասնության համար խաբեբայություն է), բուրժուական պառլամենտարիզմը փոխարինելով Սովետների դեմոկրատական կազմակերպությամբ, որոնք 1000 անգամ ավելի մոտ են «ժողովրդին», ավելի «դեմոկրատական» են, քան բուրժուական ամենադեմոկրատական պառլամենտը» (Երկեր, հատ. 28, էջ 121):

Սոցիալիստական պետության կառուցման փորձը ամբողջովին հաստատեց սովետական դեմոկրատիայի լենինյան բնութագրությունը: Պրոլետարական սոցիալիստական դեմոկրատիան, որն առաջին անգամ հաստատվել է ՍՍՌՄ-ում, պատմական ստեղծագործության կոչեց ժողովրդի անսահման ընդունակությունները ու տաղանդը: Օգտվելով դեմոկրատական ազատությունների բոլոր բարիքներից, մասնակցելով պետության կառավարման ամենօրյա աշխատանքին՝ մեր Հայրենիքի աշխատավորները անձնվիրության և հերոսության հիանալի օրինակներ տվին ինչպես իմպերիալիստական ինտերվենցիայից երիտասարդ Սովետական պետության պաշտպանության, այնպես էլ սոցիալիստական խաղաղ շինարարության տարիներին:

Իր փորձված ավանգարդ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը, հիրավի, հրաշքներ գործեց. պատմական ամենակարճ ժամանակում արդյունաբերական տեսակետից Արևմուտքի երկրներից հարյուր տարով ետ մնացած իր երկիրը դարձրեց առաջնակարգ, ինդուստրիալ-կոլտնտեսային, բարձր կուլտուրա ունեցող տերություն, որը դարձել է հողագնդի ճնշված մարդկության հույսն ու ապավենը: Միայն այն ժողովուրդը կարող էր պատմական այսպիսի մեծագույն սխրագործություն կատարել, որի ստեղծագործական ուժերն ազատ են արձակված: Վ. Ի. Լենինը նշել է, որ անհնարին է հասարակության սոցիալիստական վերափոխումը՝ առանց միլիոնավոր աշխատավորներին ներգրավելու կյանքի նոր ձևերի կառուցման գործում:



Աշխարհում պրոլետարիատի դիկտատուրայի առաջին երկրում, նրա գոյության սկզբնական տարիներին կային դեմոկրատիայի որոշ սահմանափակումներ: Եվ այլ կերպ չէր կարող լինել. այդ էր թելադրում արտաքին և ներքին թշնամիների դեմ մահու և կենաց պայքար մղելու անհրաժեշտությունը: Այն պայմաններում, երբ վճռվում էր «ով ումի» հարցը, անհրաժեշտ էր ղեկավարման խստագույն կենտրոնացում, երկաթե կարգապահություն:

Հասկանալի է, իհարկե, որ ղեկավարման նման կենտրոնացումը չէր կարող իր կնիքը չդնել դեմոկրատական որոշ ձևերի զարգացման վրա: Սակայն, պարտիան և ժողովուրդը դեմոկրատիայի այդ սահմանափակումները դիտում էին որպես ժամանակավոր միջոցառում, որը պետք է վերացվեր Սովետական պետության, ամբողջ աշխարհում դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի աճմանը զուգընթաց: Խոսքն այստեղ վերաբերում էր բնակչության մի որոշ մասին՝ շահագործողներին—նախկին կապիտալիստներին ու կալվածատերերին, կուլակներին ու բնակչության այլ կատեգորիայի մարդկանց ընտրական իրավունքից զրկելուն: Այդ միջոցառումն անհրաժեշտ էր դարձնում այն հանգամանքը, որ շահագործող տարրերը կատաղի դիմադրություն էին ցույց տալիս նոր կարգերի հաստատմանը և փորձեր էին անում երկրում վերականգնել հին շահագործողական կարգերը: Եվ միայն այն ժամանակ, երբ սոցիալիստական շինարարությունը մեծագույն հաջողությունների հասավ, երբ երկրի ներսում «ով ումի» հարցը լուծվեց հօգուտ սոցիալիզմի, իսկ Սովետական պետության միջազգային դրությունն ավելի ամրապնդվեց, միայն այդ ժամանակ դեմոկրատիայի սահմանափակումներն ավելորդ դարձան և Սովետական պետությունը զարգացավ ավելի լայն և լիակատար դեմոկրատիայի ճանապարհով: 1936 թվականին ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիայի ընդունումը նշանավորեց մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքի լիակատար դեմոկրատականացումը:

Սովետական սոցիալիստական դեմոկրատիան, ինչպես այդ երևում է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի ոգուց, արմատապես տարբերվում է բուրժուական դեմոկրատիայից: Սովետական դեմոկրատիան ի տարբերություն բուրժուական կեղծ դեմոկրատիայի, չի սահմանափակվում քաղաքացիական իրավունքներ ու ազատություններ հռչակելով, այլ նյութապես ապահովում է դրանց իրականացումը: Կապիտալիստական երկրների յուրաքանչյուր հասարակ մարդ սեփական փորձով գիտե, որ իմպերիալիզմի գաղափարախոսների ազդարարած «անձի ազատությունը» մի դատարկ ֆրազ է, կեղծ խոստում աշխատավորներին:

Մարքսիստական-լենինյան գիտությունը վաղուց արդեն հաստատել է այն անհերքելի ճշմարտությունը, որ դեմոկրատիայի էությունը ոչ թե ձևական հատկանիշներն են, այլ այն, թե արդյոք քաղաքական իշխանությունը ծառայո՞ւմ է ժողովրդին, արդյոք նա իրականում արտացոլո՞ւմ է ժողովրդի մեծամասնության կամքն ու արմատական շահերը, աշխատավորների շահերը: Իր դասակարգային էությամբ բուրժուական դեմոկրատիան եղել է և մնում է շահագործող փոքրամասնության դիկտատուրան՝ բնակչության հըսկայական մեծամասնության նկատմամբ: Բուրժուական կոնստիտուցիաներն օրինականացնում են մի բուռն շահագործողների իշխանությունն ու արտոնությունները: Այն փաստը, որ 1953 թվականին ԱՄՆ-ի կառավարության

կազմում կային 17 միլիոնատեր, բայց ոչ մի բանվոր ու գյուղացի չկար, շատ
պարզ ցույց է տալիս բուրժուական դեմոկրատիայի բուն էությունը։
Դրան հակառակ ՍՍՌՄ Կոնստիտուցիան ելնում է սոցիալիզմի սկզբ-
բունքներից, օրինականացնում է այն կարգը, որը ձեռնտու է կապիտալիս-
տական շահագործումից ազատագրված աշխատավորներին։ Սովետական
հասարակության բնորոշ գծերն են՝ սոցիալիստական տնտեսության հարաճուն
վերելքը, ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, ՍՍՌՄ ժողովուրդնե-
րի անխախտ բարեկամությունը մեր երկրի բոլոր ժողովուրդների վճռական
կամքը կոմունիզմի հաղթանակի համար մղված պայքարում։ Սովետական հա-
սարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը Կոմունիստական պարտիան
է, որին անսահման հավատում և վստահում են աշխատավորները և որը ժո-
ղովրդի շահերից բացի այլ շահեր չունի։
Նկատի առնելով, որ մեր երկրում գոյություն ունի մի-պարտիական սիս-
տեմ, բուրժուազիայի գաղափարախոսները զրպարտելով Սովետական Միու-
թյանը, սոցիալիստական դեմոկրատիայի բովանդակությունը, փորձում են բանն
այնպես պատկերել, թե իբրև սովետական կարգը դեմոկրատական չէ։ Սակայն
ամեն մի ողջամիտ մարդ, որ ցանկանում է օբյեկտիվ դատել իրերի մասին,
առանց դժվարության կարող է հասկանալ, որ մեր երկրում չկա և չի կարող
ռեալ հող լինել մի քանի պարտիաների գոյության համար։
Սովետական հասարակարգում Կոմունիստական պարտիայի անբաժան
ղեկավարությունը բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության շա-
հերի համար նրա անդուլ պայքարի պատմական արդյունքն է։ Պատմա-
կան իրադարձությունների ամբողջ ընթացքում մեր պարտիան հանդես եկավ
որպես ղեկավարող պարտիա և հետևողականորեն ու մինչև վերջ պաշտպանեց
սոցիալիզմի գործը։
Բացահայտ կեղծիք է այն դատողությունը, թե իբր երկրում մի քանի պար-
տիաների գոյությունը համարվում է իսկական դեմոկրատիայի արտահայտու-
թյուն։ Իրականում դա բուրժուական դեմոկրատիայի կեղծիքի քողարկումն է։
Դեմոկրատիա հասկացողությունը շատ պարզ է, այն նշանակի ժողովրդապե-
տություն։ Հետևապես, դեմոկրատիայի մասին պետք է դատել նրանով, թե աշ-
խատավորներն ինչպես են մասնակցում պետության կառավարմանը, երկրի
հասարակական քաղաքական կյանքին, և ոչ թե նրանով, թե քանի պարտիա
կա երկրում։ Հայտնի է, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներում մի քանի տաս-
նամյակ է, որ պետության ղեկը գտնվում է մերթ դեմոկրատական, մերթ ռես-
պուբլիկական պարտիայի ձեռքում։ Սակայն, այդ երկու պարտիաների միջև
եղած տարբերությունն անվանական է։ Իրականում այդ երկու պարտիաներն էլ
ծառայում են մոնոպոլիստական կապիտալին և արտահայտում են միլիոնա-
տերերի և միլիարդատերերի շահերը։ Դրանք երկուսն էլ Ուոլլ-Սարիտի, ֆի-
նանսական օլիգարխիայի պարտիաներն են։ Ամերիկյան կապիտալիստների
համար շատ ձեռնտու է ԱՄՆ-ի այժմյան երկպարտիական սիստեմը, որի պայ-
մաններում ընտրողների մեջ այն պատրանքն է ստեղծվում, թե իբր իրենք
ազատ են ընտրություն անելու երկու պարտիաների թեկնածուների միջև։ Ֆի-
նանսական կապիտալի պարագլուխները չէին առարկում, որ ԱՄՆ-ի պրեզի-
դենտական վերջին 1956 թվականի ընտրությունների նախընտրական կամպա-
նիայի ժամանակ դեմոկրատները և ռեսպուբլիկականները մի քիչ չանգռտեն



միմյանց և այն պատրանքն ստեղծեն, թե իբրև իրենք տարբեր պարտիաներ են։
Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ ծնունդ առած սովետական դեմո-
կրատիան դեմոկրատիա է աշխատավորների համար, ժողովրդի համար։ Սո-
վետական սոցիալիստական կարգը քաղաքական կյանքին, պետության կառա-
վարմանը հաղորդակից է դարձրել միլիոնավոր մարդկանց։ ՍՍՌՄ-ում բոլոր
ազգությունների միլիոնավոր մարդիկ ամենօրյա մասնակցություն են ունենում
Սովետների աշխատանքին։ Բավական է ասել, որ միայն աշխատավորների
դեպուտատների տեղական Սովետներում ընտրված է ավելի քան մեկ և կես
միլիոն մարդ։
Սովետական սոցիալիստական դեմոկրատիայի մեծագույն առավելու-
թյունն այն է, որ նա ավելի լիակատար կերպով է արտահայտում ժողովրդա-
կան զանգվածների շահերը, բոլոր աշխատավորներին առանց բացառության
ապահովում է այնպիսի մեծ իրավունքներ, ինչպիսիք են՝ աշխատանքի, հան-
գստի, կրթության, ծերության ժամանակ նյութական ապահովության իրա-
վունքները, ամենանպաստավոր պայմաններն է ստեղծում անձնական ընդու-
նակությունների լիակատար զարգացման համար։ Սովետական դեմոկրատիան
իսկական ազատություններ և իրավունքներ է տալիս սոցիալիստական պետու-
թյան բոլոր քաղաքացիներին, անկախ սեռից, գույքային դրությունից, ազգա-
յին ծագումից, նստակեցությունից, գրագիտությունից և այլն։ Սովետական
ընտրական սիստեմն ամենադեմոկրատականն է աշխարհում և լիակատար
կերպով արտահայտում է աշխատավորների կամքը։

***

Կոմունիզմի կառուցումը միլիոնավոր մարդկանց ակտիվ և գիտակից
ստեղծարար գործունեության արդյունք է։ Սոցիալիստական հասարակության
հաջող առաջընթացը կախված է երկրի հասարակական-քաղաքական կյանքին
ժողովրդական ամենալայն զանգվածների մասնակցության աստիճանից։ Այս-
տեղից հետևում է, որ սովետական դեմոկրատիան մշտապես ընթանում է դեպի
կատարելագործումն ու զարգացումը, որը միանգամայն օրինաչափ երևույթ է
սոցիալիստական հասարակարգի զարգացման համար։
Կոմունիստական պարտիան, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն
ստեղծում են բոլոր անհրաժեշտ պայմանները, որպեսզի ավելի ծավալվի և
զարգանա սովետական դեմոկրատիան։ Պարտիան վճռականորեն պայքարում է
անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների, սոցիալիստական դեմո-
կրատիզմի բոլոր խախտումների դեմ, արմատախիլ է անում ապօրինություն-
ներն ու կամայականությունը, ձգտում է ամեն կերպ բարձրացնել սովետա-
կան մարդկանց քաղաքական և աշխատանքային ակտիվությունը։ Սովետա-
կան դեմոկրատիայի զարգացման ճանապարհին նշանավոր ուղենիշ եղավ
ՍՄԿՊ XX համագումարը, որը գծելով մեր երկրում կոմունիստական շինարա-
րության հոյակապ պլանը՝ խնդիր դրեց ավելի բարձրացնել աշխատավորների
ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը, ավելի լայնորեն
ներգրավել մասսաներին պետության կառավարման, նրա ամբողջ կազմա-
կերպչական-տնտեսական գործունեության բնագավառում։ Հաշվի առնելով սո-
վետական հասարակության զարգացման, նրա հետագա առաջընթացի պա-
հանջները՝ համագումարն անհրաժեշտ համարեց ամեն կերպ զարգացնել սո-
վետական դեմոկրատիզմը, համառորեն բարելավել բոլոր սովետական օրգան-

ների աշխատանքը կենտրոնում և տեղերում, ամրապնդել նրանց կապերը մասսաների հետ։

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը իր արտահայտությունն է գտնում պարտիայի և կառավարության այն միջոցառումների մեջ, որոնց նպատակն է ավելի ընդլայնել միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, ավելի մեծացնել նրանց դերը ժողովրդական տնտեսության կառավարման գործում։

Հանրահայտ է, որ վերջին տարիներս պարտիան և կառավարությունն այդ ուղղությամբ խոշոր քայլեր են արել։ Նշենք դրանցից գլխավորները։ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ հենց անցյալ տարի՝ 1956 թվականին լրացուցիչ կերպով ռեսպուբլիկական իրավասությանը հանձնըվեցին միութենական 12 մինիստրությունների հազարավոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Սա մի միջոցառում է, որը նպաստում է սովետական ժողովրդի բարօրության և կուլտուրայի հետագա բարձրացմանը, տեղերի նախաձեռնության բազմակողմանի զարգացմանը։ Այդ նույն նպատակն է հետապնդում նաև պլանավորման սիստեմի վերակառուցումը, որն արդեն առաջ է բերել տեղական մարմինների նախաձեռնության զգալի ծավալում, մեր հասարակական զարգացման լավագույն ուժի՝ քննադատության և ինքնաքննադատության նոր վերելք։ Ռեսպուբլիկական օրգանների իրավունքներն ընդլայնվել են նաև պետական բյուջեի, օրենսդրության, պետական մթերումների հետ կապված մի շարք հարցերի լուծման, մանրածախ ապրանքաշրջանառության պլանավորման և այլ բնագավառներում։

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը քննարկելով մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման և տնտեսական շինարարության ղեկավարումը բարելավելու կենսական հարցերը, նշեց սովետական դեմոկրատիայի հետագա ծավալման կարևորագույն միջոցառումներ։ Պլենումն անհրաժեշտ համարեց ավելի ևս ընդլայնել միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, վերացնել տնտեսության ղեկավարման բնագավառում ավելորդ կենտրոնացումը, պարզել և էժանացնել վարչա-կառավարչական ապարատը։ «Պարտիայի և կառավարության կողմից իրագործվող միջոցառումները,— ասված է պլենումի որոշման մեջ,— լիովին համապատասխանում են սոցիալիստական տնտեսավարության լենինյան սկզբունքներին, որոնց հիմքը կազմում է տնտեսական շինարարության ղեկավարման դեմոկրատական ցենտրալիզմը»։

Դեմոկրատական ցենտրալիզմը, որ բխում է սոցիալիստական խոշոր արտադրության, սոցիալիստական հասարակարգի բուն էությունից, պահանջում է ամեն կերպ բարելավել պլանավորումը, ամրապնդել պլանային սկզբունքը ամբողջ տնտեսական գործունեության մեջ։ Այն միաժամանակ նշանակում է՝ ամենաուշադիր և բազմակողմանի կերպով հաշվի առնել տեղական փորձն ու տեղական պայմանները, ակտիվորեն պաշտպանել ու խրախուսել տեղական պարտիական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, միլիոնավոր բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի ստեղծագործական նախաձեռնությունը։

Միութենական ռեսպուբլիկաների սուվերեն իրավունքների հետագա ընդլայնումը իր արտահայտությունը գտավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջերս ընդունած այն օրենքների մեջ, որոնց համաձայն միութենական ռեսպուբլիկա-



ների դատարանակազմության օրենսդրությունը, քաղաքացիական, քրեական և
դատավարական օրենսգրքերի ընդունումը, ինչպես նաև մարզային, երկրամա-
սային վարչա-տերիտորիալ կառուցվածքի հարցերի լուծումը հանձնվում է
միութենական ռեսպուբլիկաների իրավասությանը։ Քաղաքական մեծ նշանա-
կություն ունեցող այդ փաստաթղթերը նոր քայլ են սովետական պետության,
ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդման, սոցիալիստական դե-
մոկրատիայի հետագա զարգացման գործում։

***

Սոցիալիստական դեմոկրատիզմի զարգացումը, ՍՍՌՄ հասարակական-
քաղաքական կյանքի հետագա դեմոկրատականացումը սերտորեն կապված են
Սովետների գործունեության բարելավման և աշխուժացման հետ։
Սովետները, որոնք ծնունդ են առել մասսաների ռևոլյուցիոն ստեղծագոր-
ծության հետևանքով, սոցիալիստական պետության քաղաքական հիմքն են։
ՍՍՌ Միությունը իր կազմի մեջ մտնող սովետական սոցիալիստական բոլոր
ազգությունների եղբայրական և միասնական ընտանիքն է, և բոլոր ազգու-
թյունների միլիոնավոր քաղաքացիներ Սովետների միջոցով ներգրավվում են
պետության կառավարման գործի մեջ, տնտեսական և կուլտուրական շինարա-
րության ղեկավարման մեջ։ Մասնակցելով Սովետների բազմակողմանի գոր-
ծունեությանը՝ մեր երկրի աշխատավորներն անցնում են պետության կառա-
վարման հիանալի դպրոց։ Սովետական քաղաքացիները Սովետներում սովո-
րում են պետական մոտեցում ունենալ ընթացիկ խնդիրների լուծմանը, ձեռք են
բերում հարուստ փորձ, իրականացնում են իրենց կոնստիտուցիոն իրավունք-
ները։
Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետները, լինելով պետա-
կան իշխանության անմիջական և ամենամասսայական օրգանները, կարևոր
դեր են խաղում մեր երկրի բազմաբովանդակ կյանքում։ Տեղական Սովետները
Սովետական Կոնստիտուցիայի համաձայն ունեն որոշակի իրավունքներ։ Հայ-
կական ՍՍՌ Կոնստիտուցիայի 57-րդ հոդվածն ասում է, որ աշխատավորների
դեպուտատների Սովետները ղեկավարում են իրենց տերիտորիայի կուլտուր-
քաղաքական և տնտեսական շինարարությունը, սահմանում են տեղական բյու-
ջեն, ղեկավարում են կառավարման իրենց ենթակա օրգանների գործունեու-
թյունը, ապահովում են պետական կարգի պահպանումը, աջակցում են երկրի
պաշտպանունակության ուժեղացմանը, ապահովում են օրենքների կատարումը
և քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը։
Ակնհայտ է, որ ՍՄԿՊ XX համագումարից հետո աշխատավորների դեպու-
տատների Սովետների աշխատանքը զգալիորեն աշխուժացել է, բարձրացել է
նրանց դերը տնտեսական և կուլտուրական շինարարության գործում։ Եթե ա-
ռաջներում տեղական Սովետներն զբաղվում էին հարցերի ավելի նեղ շրջանա-
կով, այժմ նրանք ընդլայնել են իրենց գործունեությունը։
Տեղական Սովետներն այժմ սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել
սովետական մարդկանց նյութական բարեկեցության և կենցաղային սպա-
սարկման հարցերին, ընդարձակել են իրենց կապերը մասսաների հետ։ Կարելի
է բերել օրինակներ, թե ինչպես մեր ռեսպուբլիկայում մի շարք քաղաքային և
գյուղական Սովետներ զգալիորեն վերակառուցել են իրենց աշխատանքը։ Հայ-
կական ՍՍՌ Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր, Մեղրու շրջանի Շվանիձոր

գյուղերի Սովետները այժմ զբաղվում են կոլտնտեսությունների, գյուղական
բնակչության բարեկեցությանը վերաբերող ավելի կոնկրետ հարցերով, աշ-
խուժացրել են մշտական հանձնաժողովների աշխատանքը, գյուղական Սովետ-
ների սեսիաներն այժմ հրավիրվում են կանոնավոր կերպով և ավելի մեծ ար-
դյունավետությամբ են գործում։

Սակայն տեղական Սովետների աշխատանքում դեռևս զգալի թերություն-
ներ կան։ Մինչև վերջերս տեղական Սովետների և նրանց գործադիր կոմիտե-
ների աշխատանքում տեղ էր գտել այն սխալ պրակտիկան, որ Սովետների
դեպուտատները և գործադիր կոմիտեները բնակչությանը հաշվետվություն էին
տալիս «դեպքից-դեպք»՝ ընտրական կամպանիաների առիթով միայն։ Շատ տե-
ղական Սովետներ անբավարար են հոգ տանում աշխատավորների կենսական
կարիքների մասին, անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում հատկապես բնա-
կարանային շինարարության գործում եղած լուրջ թերություններին։

Կոմունիստական շինարարության, աշխատավորների բարօրության և
նրանց կյանքի բարելավման շահերը պահանջում են ամենակարճ ժամանակա-
միջոցում վերացնել տեղական Սովետների աշխատանքում եղած թերություն-
ները, բարձրացնել նրանց դերը պարտիայի և կառավարության որոշումների
կենսագործման բնագավառում։ Տեղական Սովետների մասին աշխատավոր-
ներն իրավացիորեն դատում են այն բանով, թե նրանք ինչպես են կենսագոր-
ծում ընդունված որոշումները։ Սովետներն այժմ պետք է մշտապես զբաղվեն
բնակելի տների շինարարության և վերանորոգման, դպրոցների, հիվանդանոց-
ների, մանկական հիմնարկների, կոմունալ կենցաղային ձեռնարկությունների
շինարարության ու վերանորոգման հարցերով և հոգ տանեն դրանց նորմալ
աշխատանքի համար։

Այս բոլոր խնդիրների հաջող իրագործումը պահանջում է ավելի կատարե-
լագործել Սովետների և նրանց գործադիր կոմիտեների աշխատանքի ձևերն ու
մեթոդները, փնտրել և տարածել այս բնագավառում եղած նորն ու առաջավորը։
Կասկած չկա, որ Սովետների առջև դրված նոր խնդիրները պահանջում են հրա-
տապ կերպով լուծել նրանց գործունեության մի շարք կարևոր հարցեր։ Ղեկա-
վարվելով ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումներով, օրինակ,
ընդլայնվելու են Սովետների իրավունքները շրջանների, քաղաքների տնտեսու-
թյան պլանավորման, տեղական և կոոպերատիվ արդյունաբերության արտա-
դրության և դրանց արտադրանքի բաշխման, բնակարանային, կուլտուր-կեն-
ցաղային և ճանապարհաշինարարության կազմակերպման, ինչպես նաև շինա-
րարական նյութերի ու վառելիքի արտադրության բնագավառներում։

Տեղական Սովետների աշխատանքում արդեն նկատվող զգալի աշխուժա-
ցումը հետևանք է նաև այն բանի, որ նոր խնդիրներին համապատասխան իրենց
գործունեությունը բարելավել են նաև միութենական ռեսպուբլիկաների Գերա-
գույն Սովետները։ Վերջին շրջանում միութենական ռեսպուբլիկաների Գերա-
գույն Սովետների սեսիաներում քննարկվեցին իրենց բնույթով նոր և կենսա-
կան հարցեր, որոնք առաջադրում է կյանքը։ 1956 թվականին Հայկական ՍՍՌ
Գերագույն Սովետի երրորդ սեսիան քննարկեց ռեսպուբլիկայի ջրային տնտե-
սության վիճակն ու նրա հետագա զարգացման միջոցառումների հարցը, ինչ-
պես նաև Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի գյուղա-
տնտեսական ջրօգտագործման խնդիրը և ընդունեց համապատասխան որոշում



ու օրենք, որոնք մեծ նշանակություն ունեն մեր ռեսպուբլիկայի գյուղատնտե-
սության հետագա վերելքի համար։ Հատկանշական է, որ ժողովրդա-տնտեսա-
կան կարևորագույն նշանակություն ունեցող այդ հարցերի քննարկման նախա-
պատրաստական աշխատանքներին մասնակցել են մեծ թվով մասնագետներ,
պարտիական, սովետական, տնտեսական բնագավառի աշխատողներ։

Դեպուտատներին ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական շինարա-
րության հարցերի լուծման գործում ավելի լայնորեն ներգրավելու, դրանց
ակտիվությունը բարձրացնելու նպատակով Հայկական ՍՍՌ Գերագույն Սովե-
տի երրորդ սեսիան ընտրեց Գերագույն Սովետի արդյունաբերության ու
տրանսպորտի, գյուղատնտեսության, կուլտուրայի ու լուսավորության, առող-
ջապահության ու սոցիալական ապահովության և առևտրի մշտական հանձնա-
ժողովներ։

Տեղական Սովետների սեսիաները նրանց գործունեության կազմակերպչա-
կան կարևորագույն ձև են։ Այդ սեսիաներն ավելի լիակատար են արտահայ-
տում կոլեկտիվ ղեկավարման սկզբունքը։ Հայտնի է, որ այստեղ ևս առաջնե-
րում մեծ թերություններ կային։ Այժմ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի
երրորդ սեսիան սահմանեց սեսիաների հրավիրման նոր ժամկետներ։ Հայտնի
է, որ Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 63-րդ հոդվածի համաձայն մինչև Գե-
րագույն Սովետի երրորդ սեսիայի հրավիրումը, աշխատավորների դեպուտատ-
ների քաղաքային, քաղաքային-շրջանային, ավանային և գյուղական Սովետ-
ների սեսիաները գումարում էին նրանց գործադիր օրգանները՝ ոչ պակաս,
քան ամիսը մեկ անգամ։ Սակայն պրակտիկան ցույց է տվել, որ Սովետների
սեսիաներն այդպես հաճախակի հրավիրելու դեպքում նրանց գործադիր կոմի-
տեները հնարավորություն չեն ունենում սեսիաների քննարկմանը ներկայացվող
հարցերը ըստ ամենայնի նախապատրաստելու և ուշադրություն դարձնելու Սո-
վետների կողմից ընդունված որոշումների կատարման վրա։ Որպեսզի աշխա-
տավորների դեպուտատների տեղական Սովետներին հնարավորություն տրվի
հաջողությամբ կատարել իրենց առջև դրված խնդիրները, Հայկական ՍՍՌ Գե-
րագույն Սովետի Նախագահությունը նպատակահարմար էր գտել, իսկ Գերա-
գույն Սովետի երրորդ սեսիան էլ հաստատեց, որ պետք է կրճատել Սովետների
հրավիրվող սեսիաների թիվը և սահմանվեց, որ քաղաքային, շրջանային, գյու-
ղական և ավանային Սովետների սեսիաները գումարվեն տարեկան ոչ պակաս
քան վեց անգամ, իսկ շրջանային բաժանում ունեցող քաղաքներում քաղաքա-
յին Սովետների սեսիաները հրավիրվեն ոչ պակաս քան չորս անգամ։

Այս ամենը հնարավորություն ստեղծեց, որ ավանային, գյուղական, շրը-
ջանային և քաղաքային Սովետների սեսիաներն ավելի խնամքով նախապատ-
րաստվեն, խորը ուսումնասիրվեն սեսիաների քննարկմանը ներկայացվող հար-
ցերը, ավելի լայնորեն ներգրավվեն սեսիաների հրավիրման նախապատրաս-
տությանը դեպուտատներին, մշտական հանձնաժողովների անդամներին և
բնակչությանը։ Երևանի Մոլոտովյան շրջանային Սովետի գործադիր կոմիտեն
սեսիայի քննարկմանը դրեց հասարակական կարգի և սոցիալիստական օրի-
նականության պահպանման ու ամրապնդման հարցը։ Սեսիան նախապատ-
րաստվեց խնամքով, մի խումբ դեպուտատների հանձնարարվեց ծանոթանալ
դատախազության, դատարանի, միլիցիայի, դպրոցների, ինչպես նաև շրջանա-
յին Սովետի գործկոմի մի քանի բաժինների աշխատանքին, որի հետևանքով

հարցի քննարկումը սեսիայում առաջ բերեց մեծ հետաքրքրություն, բարձրացրեց դեպուտատների ակտիվությունը և ընդունվեց գործնական որոշում, որի նախագիծը նույնպես նախապատրաստել էին մի խումբ դեպուտատներ։ Սակայն լավ որոշում ընդունելը դեռևս գործի սկիզբն է, այդ պատճառով սեսիայից հետո շրջսովետի դեպուտատները, շրջանի բնակչության մեջ լայն բացատրական աշխատանք կատարեցին սոցիալիստական օրինականության և հասարակական կարգի պահպանման շուրջը, որն, անշուշտ, իր դրական արդյունքը տվեց։

Կոմունիստական շինարարության, սովետական ժողովրդի շահերը պահանջում են բարձրացնել սովետական պետական ապարատի կազմակերպչական դերը, կատարելագործել նրա ամբողջ գործունեությունը։ Խնդիրն այն է, որ վճռականորեն վերացվեն սովետական ապարատի աշխատանքում եղած լուրջ թերությունները։

Բուրժուական պրոպագանդան օգտագործելով այդ, փորձում է վարաբանել մեր պետական ապարատը, վերագրել նրան չեղած հատկություններ։ Իզո՜ւր ջանքեր։ Որքան էլ լուրջ լինեն թերությունները՝ սովետական ապարատը, մեր պետական կառավարման օրգանները հազար անգամ ավելի դեմոկրատական են, քան ամեն մի բուրժուական պետական ապարատ։ Պարտիան պահանջում է անխնա պայքար մղել սովետական ապարատի աշխատանքում գոյություն ունեցող բյուրոկրատիզմի և քաշքշուկի դեմ, և պատժել այն աշխատողներին, որոնք անհոգի, անտարբեր վերաբերմունք են ցույց տալիս սովետական մարդկանց, նրանց դիմումներին ու բողոքներին։

Սովետական պետության արտաքին քաղաքականությունը նույնքան դեմոկրատական է, որքան և նրա ներքին քաղաքականությունը։ Ամբողջ աշխարհում կայուն խաղաղության, միջազգային իրադրության նորմալացման համար Սովետական Միության տասնյակ տարիների համառ և հետևողական պայքարը առաջ է բերել երկրագնդի բոլոր աշխատավորների, բոլոր առաջավոր մարդկանց խոր համակրանքն ու երախտագիտությունը մեր Հայրենիքի նկատմամբ։

1957 թվականի մարտին, դեպուտատների լիազորությունների ժամկետները լրանալու կապակցությամբ, բոլոր միութենական ռեսպուբլիկաներում տեղի են ունենալու տեղական Սովետների հերթական ընտրություններ։ Հայկական ՍՍՌ-ում տեղական Սովետների ընտրությունները կայանալու են 1957 թվականի մարտի 10-ին։

Տեղական Սովետների առաջիկա ընտրությունները, որոնք կընթանան սոցիալիստական դեմոկրատիզմի հետագա զարգացման նշանաբանի ներքո, նոր թափ կհաղորդեն սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային ակտիվությանը, նորից կցուցադրեն մեր ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, նրա սերտ համախմբվածությունը Կոմունիստական պարտիայի շուրջը, սովետական ժողովրդի անդրդվելի կամքը նոր և մեծ հաղթանակներ ձեռք բերելու կոմունիզմի կառուցման վեհ ճանապարհին։

---

# ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆԸ

Գ. ՍԱՐԳՍՅԱՆ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումը բնակարանային շինարարությունը համարեց ներկա շրջանի ամենակարևոր հարցերից մեկը և ցույց տվեց նրա հաջող լուծման ուղիները։

Առաջին և հիմնական ուղին պետական կապիտալ ներդրումների ավելացման և դրանց արագ իրացման ուղին է, որը և հետևողականորեն կատարվում է վեցերորդ հնգամյակում։ Այսպես, օրինակ, մեր ռեսպուբլիկայում բնակարանային շինարարության նպատակով հատկացված կապիտալ ներդրումները 1956 թվականին 32 տոկոսով գերազանցում էին 1955 թվականի մակարդակը։ Եթե Հայաստանի քիմիական արդյունաբերության գծով միայն բնակարանային շինարարության ծավալը հինգերորդ հնգամյակում կազմում էր 35 միլիոն ռուբլի, կամ տարեկան միջին հաշվով 7 միլիոն ռուբլի, ապա վեցերորդ հնգամյակի առաջին տարում բնակարանային շինարարության ծավալը անցավ 10 միլիոնից, իսկ 1957 թվականին նախատեսվում է այն հասցնել մոտ 12 միլիոն ռուբլու։ Նույնը կարելի է ասել նաև արդյունաբերության մյուս ճյուղերի աշխատողների համար կատարվող բնակարանային շինարարության մասին։

Սակայն հարկավոր է ընդգծել, որ ինչպես հինգերորդ հնգամյակում, այնպես էլ անցած 1956 թվականին մեր ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունների աշխատանքներում նկատվեցին լուրջ թերություններ ու դժվարություններ, որոնք իրենց ազդեցությունը թողին բնակարանային շինարարության տեմպերի վրա։ Թեկուզ հենց այն փաստը, որ 1956 թվականին բնակարանային շինարարության համար հատկացված 160 միլիոն ռուբլու փոխարեն փաստորեն իրացվեց 148 միլիոն ռուբլի, արդեն խոսում է այդ գործում եղած լուրջ թերությունների մասին, որոնց վերացման ուղղությամբ պետք է լարված աշխատանք կատարել։

Անվիճելի է, որ պարտիական օրգանների սիստեմատիկ հսկողությունն ու օգնությունը վճռական նշանակություն ունեն շինարարական կազմակերպությունների աշխատանքները լավացնելու գործում։ Այդ է վկայում այն փաստը, որ ՀԿՊ Երևանի քաղաքային և Ստալինյան շրջանային կոմիտեների միջամտության ու օգնության շնորհիվ «Հայքիմարդշին» տրեստը 1956 թվականի երկրորդ կեսին զգալի չափով բարձրացրեց իր արտադրական ցուցանիշները և շինարարական պլանները կատարեց 107 տոկոսով, այդ թվում բնա-

կարանային շինարարության գծով տարեկան պլանների կատարումը առաջին կիսամյակի 37 տոկոսի փոխարեն տարվա վերջում հասցրեց 93,6 տոկոսի, ըստ որում երկրորդ կիսամյակում, առաջին կիսամյակի համեմատությամբ, աշխատանքի ծավալը կրկնապատկեց և Երևանում շահագործման հանձնեց 3.600 քառակուսի մետր բնակելի տարածություն:

Սխալ կլինի կարծել, թե շինարարական կազմակերպությունների անբավարար աշխատանքի գաղտնիքը թաքնված է միայն նրանց ներսում: Բավական է միայն վերլուծել մեր անցած շրջանի շինարարական աշխատանքները, և պարզ կլինի, որ բացի շինարարների սեփական սխալներից ու թերություններից, գոյություն ունեն նաև մի շարք այլ խոչընդոտներ, որոնց վերացումը պակաս նշանակություն չունի շինարարական կազմակերպությունների աշխատանքը նոր խնդիրների մակարդակին բարձրացնելու գործում:

Օբյեկտիվ լինելու համար նախ նշենք մեր՝ շինարարական կազմակերպությունների սեփական թերություններն ու սխալները:

Ակներև է, որ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համեմատությամբ շինարարական-մոնտաժային աշխատանքներն ինչպես շինարարական տեղամասերում ու օբյեկտներում, այնպես էլ օժանդակ ձեռնարկություններում պահանջում են առավել սիստեմատիկ ու ամենօրյա կազմակերպչական աշխատանք: Շինարարության մեջ մեկ անգամ կազմակերպված այսպես կոչված՝ «տեխնոլոգիական» պրոցեսը երկար գոյություն ունենալ չի կարող այնպես, ինչպես այն լինում է գործարաններում: Շինարարության մեջ այդ պրոցեսներն ավարտվում և սկսվում են հաջորդ պրոցեսները, որոնք պահանջում են բոլորովին այլ որակի բանվորական ուժ, շինանյութեր, օժանդակ նյութեր ու գործիքներ, ուրեմն և այլ «տեխնոլոգիական» պրոցես և աշխատանքի կազմակերպում:

Ճիշտ է, շինարարության մեջ հոսքային մեթոդի կիրառումը ստեղծում է համեմատաբար տևական տեխնոլոգիական պրոցեսներ, որոնք անընդհատ հաջորդելով մեկը մյուսին, գործարանային տեսք կարող են տալ նրան, ինչպես որ այդ կատարվում է մեր Միության բազմաթիվ առաջավոր շինարարություններում ու հատկապես բնակարանային շինարարության մեջ՝ Մոսկվայում, Լենինգրադում: Բայց, ցավոք սրտի, այդպիսին առայժմ մեզ մոտ գոյություն չունի, այն պետք է ստեղծվի ներկա հնգամյակում:

Մեր՝ շինարարներիս առաջին ու գլխավոր թերությունն այն է, որ անհրաժեշտ ուշադրություն չենք դարձնում աշխատանքների կազմակերպչական կողմին, որը պահանջում է ամենօրյա հսկողություն: Շինարարական գործում անհետևողականությունը կամ դանդաղկոտությունը, գործող ուժերի սխալ դասավորումը իջեցնում է աշխատանքի արտադրողականությունը և հսկայական կորուստ է պատճառում:

Շինարարական հրապարակներում հաճախ աշխատանքների անկազմակերպության հետևանքով բանվորների զգալի մասը չգիտե ինչ է անելու տվյալ օրը, մինչև որ աշխղեկը ցուցում չտա: Բանվորների մեծամասնությունը նախնական նարյադ-առաջադրանքներ չի ստանում և այդ պատճառով աշխատում է անպլան և ոչ լարված կերպով: Ճիշտ է, նախնական նարյադ-առաջադրանքներ տալուն խանգարում է շինանյութերի մատակարարման անկանոնությունը, որի մասին կխոսվի ներքևում, բայց և այնպես շատ շինարարներ օգտվելով այդ առիթից, ընդհանրապես մոռացել են շինհրապարակներում



աշխատանքների նախնական պլանավորումը, նույնիսկ այն աշխատանքների, որոնք կապված չեն շինանյութերի բացակայության հետ:

Շինարարական գրեթե բոլոր տեղամասերում կարելի է ականատես լինել այնպիսի փաստերի, երբ կատարվում է գերազանցապես մեկ-երկու տեսակի աշխատանք: Օրինակ, կատարվում է միայն քարային ու միջհարկային ծածկերի աշխատանք, կամ այդ ավարտելուց հետո՝ միջնապատերի կառուցման ու ծեփային աշխատանքները, դրանից հետո՝ հատակի ու դուռ-լուսամուտների պատրաստումը, որից հետո՝ ջեռուցման, ջրմուղ-կոյուղու աշխատանքները և այլն: Մինչդեռ, աշխատանքի մտածված կազմակերպման դեպքում, թեկուզ մեկ առանձին շենքում, թվարկված այդ բոլոր աշխատանքները կարելի է և պետք է կատարել ոչ թե հաջորդաբար, այլ զուգընթացաբար, սկսած քարային աշխատանքներից մինչև ներկարարական գործը, եթե շինանյութերի ու նախագծերի մատակարարման մեջ լուրջ դժվարություններ չի հարուցվում:

Աշխատանքի այսպիսի դասավորումն ու զուգընթաց կատարումը խիստ կարևոր է նաև այն տեսակետից, որ հնարավորություն է տալիս հավասարապես կատարելու այսպես կոչված՝ ավել կամ պակաս «ձեռնտու» աշխատանքները և նորմալ պայմաններ է ստեղծում շինարարական պլանների համաչափ կատարման ու աշխատավարձի մակարդակը կայուն պահելու համար:

Դեռևս ցածր է շինարարության ու հատկապես բնակարանային շինարարության որակը: Նոր շահագործման հանձնված բնակելի շենքերի բնակիչները հաճախ բողոքում են դռների ու լուսամուտների, հատակի, ներկարարական աշխատանքների, ջեռուցման սիստեմի, կոյուղու-ջրմուղու անորակության ու տգեղության մասին, որոնք հիմնականում բացատրվում են կառուցող ճարտարապետների ու բանվորների անպատասխանատու վերաբերմունքով:

Անժխտելի փաստ է, որ միևնույն շինանյութեր գործածելիս բանվորների մի խումբ կամ բրիգադա աշխատանքը կատարում է բարձր որակով, իսկ մյուս բրիգադան՝ անորակ և նույն գործին վերադառնում է մի քանի անգամ, որը տեղիք է տալիս շինանյութերի փչացման և աշխատավարձի գերածախսի: Օրինակ, Ավտոդողերի գործարանի № 8 բնակելի շենքի ջեռուցման սիստեմը կառուցեցին մի քանի բրիգադաներ: Ընկ. ընկ. Ջոհրաբ Գալստյանի և Վանես Քեհյանի բրիգադաները իրենց գործը կատարեցին լավ, իսկ Սուրեն Անոյանի բրիգադան՝ վատ, որի հետևանքով կրկնակի աշխատանք կատարվեց և զգալի միջոցներ ծախսվեցին:

Բնորոշ է, որ պահանջկոտ աշխղեկների ու բրիգադիրների մոտ կառուցման որակը բարձր է և կրկնակի աշխատանքներ չի կատարվում, կամ կատարվում են շատ հազվագյուտ դեպքերում, որոնք մեծ մասամբ առաջանում են նախագծերի փոփոխման պատճառով:

Եթե բնակարանային շինարարության եռ մնալը մասամբ բացատրվում է իրենց՝ շինարարների մեղքով, որոնք անպայման արժանի են քննադատության, ապա մասամբ էլ այդ պետք է բացատրել այն աննպաստ պայմաններով, որոնք ստեղծված են շինարարների համար: Բանն այն է, որ շինարարությունները ժամանակին նախագծերով ու շինարարական նյութերով չեն ապահովվում, որը նույնպես պատճառ է դառնում շինարարության պլանների թերակատարման:

Նախագծերի շուրջը պատվիրատուների ու կառուցողների միջև հաճախ է վեճ առաջանում: Կառուցողները պահանջում են ժամանակին և լրիվ չափով ներկայացնել նախագծերը, իսկ պատվիրատուները ջանում են ապացուցել, որ եղած նախագծերն էլ դեռ լրիվ գործի մեջ չեն դրված: Պետք է վերջ տալ այս աննորմալ երևույթին և հետևել, որ ամեն մի կազմակերպություն ժամանակին կատարի իր պարտավորությունները: Նախագծային կազմակերպությունները պետք է հաշվի առնեն շինարարների օրինական պահանջը՝ բնակելի շենքերի նախագծերը որակով և ժամանակին պատրաստելու վերաբերյալ: Նախագծերով չապահովված շենքերը որպես կանոն չպետք է մտցվեն տիտուլային ցուցակների մեջ և չպետք է ֆինանսավորվեն արդյունաբերական բանկի կողմից:

1957 թվականի շինարարական աշխատանքները հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ է ուղղել այն անհամապատասխանությունը, որ գոյություն ունի նախագծերի ու տիտուլային ցուցակների միջև: Շինարարական կազմակերպություններից պետք է պահանջել, որ նրանք անօրինական շինարարություններ կատարելու համար պայմանագրեր չկնքեն:

Լուրջ թերություններ կան նաև շինարարությունների պլանավորման գործում:

Պլանային տնտեսության գաղափարը իր էությամբ ժխտում է որևէ կամայականություն: Պլանը օրենք է և անպայմանորեն պետք է կատարվի: Բայց պլանի կատարումը օրենք է համարվում այն դեպքում, երբ այն կայուն է և ամրապնդված բոլոր անհրաժեշտ մատակարարումներով:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումը նշեց ժողովրդական տնտեսության պլանավորման մեջ եղած սխալներն ու անհամապատասխանությունը նյութական բազայի հետ: Այդ նույն անհամապատասխանությունն ավելի մեծ չափերով գոյություն ունի շինարարության մատակարարումը պլանավորելու գործում: Այս ուղղությամբ կարող ենք բերել հետևյալ օրինակը.

Հայաստանի հիմնական արդյունաբերության շինարարության համար պլանով նախատեսված և փաստորեն ստացված մի քանի շինանյութերի պատկերը 1956 թվականին

| Շինանյութերի տեսակը | Չափի միավոր | Պահանջը | Պլանավորված է | Ստացված է |
|---|---|---|---|---|
| Ցեմենտ | տոննա | 5800 | 4535 | 4435 |
| Շիֆեր | խ. մ. | 8900 | 5925 | 4326 |
| Մետաղ | տոննա | 1650 | 1205 | 1205 |
| Ճեղք. բազալտ | խ. մ. | 8000 | — | 8150 |
| Հատով քար | խ. մ. | 1000 | — | 290 |
| Տեղական տուֆ | խ. մ. | 16500 | — | 8150 |
| Գ ա ջ | տոննա | 1800 | — | 1050 |
| Միջնապատերի սալեր | քառ. մետր | 12000 | — | 8120 |
| Պեմզաբլոկ | հատ | 45000 | — | 3300 |

Վերոհիշյալ թվերից երևում է, որ շինանյութերի պլանավորումն ու մատակարարումը չի համապատասխանում շինարարության ծավալին: Առանձնապես վատ է տեղական շինանյութերի մատակարարումը: Դժվար է որևէ կերպ արդարացնել տեղական շինանյութերի արտադրության ցածր մակարդակը: Ուղղակի պետք է ասել, որ դա սխալ պլանավորման և շինանյութերի



արտադրության լայնացման համար միանգամայն անբավարար միջոցների հատկացման հետևանք է: Նման վիճակը հասցրել է այն բանին, որ ճեղքված բազալտ, միջնապատերի սալեր կամ գաջ չլինելու պատճառով ռեսպուբլիկայի շինարարությունները հաճախ կանգ են առնում:

Բնակարանային շինարարությունն առանձնապես պահանջում է նյութերի բազմաթիվ տեսակներ, որոնք իրենցից մեծ արժեք չեն ներկայացնում, բայց առանց դրանց անհնարին է ավարտել շենքի կառուցումը և այն հանձնել շահագործման: Համարյա բոլոր շինարարական կազմակերպությունները մեծ դժվարություններով են հայթայթում, իսկ երբեմն էլ փոխարինում այլ տեսակներով այնպիսի մանրուքներ, ինչպիսին են մեկուսիչ անվակներ, կոթառներ (պատրոններ), խցակներ, անջատիչներ և լուսավորության այլ պարագաներ, ջրի ծորակներ, արմունկաձև խողովակներ, ծծափողեր (սիֆոններ) և այլ բազմաթիվ պարագաներ կոյուղու, ջրմուղի շահագործման համար, որոնց արտադրության ստեղծումը կամ լայնացումը մեզ մոտ միանգամայն հնարավոր է:

Վերջին շրջանում բնակարանային շենքերի միջհարկային ծածկերը կատարելու գործում լայն տարածում է գտել բազմահեծանային երկաթ-բետոնը և մասամբ նաև հավաքովի հեծանները, որոնք մեծ առավելություն ունեն շինարարության որակի բարձրացման և ժամանակի խնայողության տեսակետից: Սակայն մեծ դժվարությամբ են ձեռք բերվում պեմզաբլոկների ու բետոնի բաղկացուցիչ մասը կազմող բաղադրությունները (կվարցի ավազ, բազալտի խիճ): Անդրերկաթուղու ավազի հանքը, որը մասամբ է միայն սպասարկում քաղաքացիական շինարարություններին, չի բավարարում նրանց աճող պահանջը և, բացի այդ, ձմռան պայմաններում չի օգտագործվում, որի հետևանքով շինարարական կազմակերպությունները կանգնում են լուրջ դժվարությունների առաջ:

Այս կարևոր հարցով Շինանյութերի արտադրության մինիստրությունը և պլանային օրգանները չեն մտահոգվում: Մինչդեռ բազալտի հանքերի մնացորդները կորչում և նույնիսկ խանգարում են բազալտի արտադրության զարգացմանը, փոխանակ վերածվելու բետոնի համար անփոխարինելի շինանյութի: Բազալտի հանքերում քարաղաց մեքենաներ դնելու մասին շատ է խոսվել, բայց գործնականում ոչինչ չի արված, չնայած, որ այդ գործը մեծ միջոցներ չի էլ պահանջում:

Ինչ վերաբերում է պեմզաբլոկի արտադրության սահմանափակ լինելուն, ապա այդ չպետք է բացատրել ցեմենտի պակասությամբ, որովհետև այժմ ներկայումս արտադրվում է նաև կավից՝ թրծելու եղանակով, որը, սակայն, անհրաժեշտ որակ չունի և այդ պատճառով շինարարական կազմակերպությունները միջհարկային ծածկերի համար չեն օգտագործում: Եթե բարձրացվի այդ արտադրության որակը, ապա կավից ոչ միայն բլոկների արտադրությունը, այլև միջնապատերի սալերի արտադրությունը կարող է բավարար չափով լրացնել շինարարության պահանջը:

Բացի այդ, ակներև է նաև այն, որ մեր գործարանները ոչ թե անկարող են վերոհիշյալ նյութերի արտադրությունը մեծացնելու, այլ նրանց արտադրությունը եղած պահանջից պակաս է պլանավորվում: Ստացվել է այնպես, որ Շինանյութերի արտադրության մինիստրության գործարաններն ու հան-

բերը այդ նյութերի արտադրության գծով 1956 թվականին կատարել ու գերակատարել են իրենց պլանները, իսկ շինարարական կազմակերպությունները իրենց պլանները թերակատարել են հենց այդ նյութերի բացակայության պատճառով։

Անվիճելի է, որ շինարարության տեմպերը կաշկանդող հարցերի մեջ ամենախոշորը շինանյութերի պակասն է։ Անշուշտ, կարելի է արագ կերպով ուղղել շինարարությունների պահանջի և շինանյութերի արտադրության միջև եղած անհամապատասխանությունը։ Պետք է վերջապես հասնել շինանյութերի առատության՝ սկսած մեխուսից անվակներից մինչև քարն ու ավազը, ըստ որում՝ օգտագործելով նաև շինարարական կազմակերպությունների օժանդակ ձեռնարկությունների հզորությունը, որոնք, ի դեպ, լրիվ չափով չեն ծանրաբեռնված։

Պետպլանն ու Շինանյութերի արտադրության մինիստրությունը պատշաճ կերպով պետք է հաշվի առնեն շինարարների օրինական պահանջը և 1957 թվականից սկսած վճռական բեկում մտցնեն շինանյութերի արտադրությունը ավելացնելու և տեսակները շատացնելու գործում։

***

Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումը պահանջեց, որ կապիտալ շինարարության մեջ վճռականորեն վերջ տրվի պետական միջոցների մանրատմանը և սեղմ ժամկետներում ավարտվեն ու շահագործման հանձնվեն կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունների օբյեկտները և բնակելի շենքերը։

Մեր սոցիալիստական արդյունաբերությունը բոլոր հնարավորություններն ստեղծել է շինարարության ինդուստրացումն ապահովելու համար։ Շինարարությունը բոլոր անհրաժեշտ մեքենաները ունի սկսած նուրբ աշխատանքներից մինչև աշխատատար խոշոր պրոցեսները մեքենայացնելու համար։ Սակայն, թերությունն այս գործում այն է, որ ամբողջ տարվա ընթացքում ո՛չ բոլոր մեքենաներն են աշխատում ծանրաբեռնված։ Դա մեծ մասամբ բացատրվում է շինարարական աշխատանքների մեջ գոյություն ունեցող վտանգավոր «սեզոնայնությամբ» և ապա՝ աշխատանքի հոսքային մեթոդի բացակայությամբ։

Նախատեսված նորմաների համաձայն 5—6 հարկանի շենքերի կառուցումը, որոնք ունեն մինչև 30 հազար խորանարդ մետր ծավալ, պետք է ֆինանսավորվեն մեկ տարվա ընթացքում և ավարտվեն ոչ ավել քան 11 ամսվա ընթացքում։ Այնինչ, մեզ մոտ այդպիսի շենքերի շինարարությունը ձգձգվում է 2—3 տարով։ Հասկանալի է, որ վերը նշված նորմաների կատարումը չի կարելի ապահովել՝ առանց անցնելու խոշոր պանելային շինարարության մեթոդի, որի ուղղությամբ, ի դեպ, մեր նախագծող ու կառուցող կազմակերպությունները միանգամայն հանցավոր դանդաղկոտություն են ցուցաբերում։

Որոշ պատվիրատու կազմակերպություններ կարծում են, որ միջոցների մանրատման դեմ ուղղված պարտիայի ու կառավարության պահանջը պետք է հանգեցնել կառուցվող օբյեկտների թվի կրճատմանը։ Դա սխալ է։ Նման դեպքում կառուցող կազմակերպությունների կարողությունը լրիվ չափով չի կարելի օգտագործել և, որ գլխավորն է, անհնարին կդառնա հոսքային մե-



թոդի կիրառումը և շինարարական մեխանիզմների լրիվ օգտագործումը։ Շինարարական տեխնոլոգիան նույնպես պահանջում է, որ աշխատանքների բոլոր տեսակները կատարվեն անընդհատ։ Միայն այդ դեպքում հնարավոր կլինի լրիվ ու համաչափ օգտագործել ինչպես բանվորական ուժը, այնպես էլ մեքենաներն ու նյութական հարստությունը։

Արտադրողականության բարձրացման և շինարարություններում բանվորական ուժի կայունացման գործում խոշոր կարևորություն ունի աշխատավարձի կարգավորման հարցը։ Հայտնի է, որ 1956 թվականի հունվարի 1-ից շինարարական բանվորների տարիֆային հաստիքները և գնացուցակների կայունացման գործը բարելավվեց, որը անվիճելի դրական արդյունքներ է տվել։ Այնուամենայնիվ պետական այս կարևոր միջոցառումների կիրառման գծով դեռևս որոշ կամայականություն գոյություն ունի։ Առանց սխալվելու կարելի է ասել, որ բազալտի քարագործները, ծեփագործները, ապակեգործները, հյուսներն ու այլ շինարարական բանվորներ աշխատանքի միևնույն միավորի համար տարբեր շինարարական կազմակերպություններում տարբեր չափով են վարձատրվում։ Աշխատանքի ղեկավարները գոյություն ունեցող գնացուցակներն օգտագործում են ըստ «պայմանավորվածության» կամ ելնելով այսպես կոչված՝ շինարարությունների «սպեցիֆիկ» պայմաններից։ Հարց է առաջանում. ի՞նչ «սպեցիֆիկ» պայմաններ կարող են գոյություն ունենալ, ասենք, Երևան քաղաքի շինարարական օբյեկտներում։ Եթե բոլոր շենքերը կառուցելու լիներ միևնույն կազմակերպությունը կամ նույնիսկ միևնույն աշխատանքի ղեկավարը, ապա «սպեցիֆիկ» պայմանները, անկասկած, իսկույն կվերանային։ Նշանակում է՝ հարցը վերաբերվում է ո՛չ թե օբյեկտների «սպեցիֆիկ» պայմաններին, այլ «սպեցիֆիկ» մարդկանց, որոնք կամա թե ակամա հարվածում են բանվորական ուժի կայունացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործին։ Բանն այն է, որ այս բոլորը կատարվում է ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետին կից Շինարարության գործերի կոմիտեի աչքի առաջ, որը, չգիտենք ինչու, այդ գործի վրա լուրջ ուշադրություն չի դարձնում։

Անհրաժեշտ է, ասենք, որ Երևան քաղաքի բոլոր շինարարությունների, ըստ նրանց կատեգորիաների, յուրաքանչյուր աշխատանքի մեկ միավորի համար մշակվի աշխատավարձի չափ, և այդ լինի պարտադիր բոլորի համար՝ անկախ նրանց «սպեցիֆիկ» պայմաններից։ Սա բանվորական ուժի հոսունությունը վերացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, կառուցման որակը լավացնելու և, վերջին հաշվով, աշխատավարձի գերածախսը կանխելու կարևորագույն միջոցառումներից մեկն է։ Թված հարցերի կարգավորման գործում ո՛չ պակաս կարևորություն ունի նաև ինչպես պատվիրատու կազմակերպությունների, այնպես և բանկի անհրաժեշտ հսկողությունը։

Նկատենք, որ ֆինանսական գծով բանկի հսկողությունը իր սուր ծայրով ուղղված է մասամբ աշխատավարձի գերածախսի ուղղությամբ։ Բազմաթիվ են այն դեպքերը, երբ այդ հսկողության հետևանքով բանվորների աշխատավարձի վճարումը շաբաթներով ու ամիսներով ձգձգվել է, բայց ինչ-որ ձևականություններ կատարելուց հետո միշտ էլ լուծվել է հօգուտ շինարարական կազմակերպությունների։ Շինարարական կազմակերպություն-

ներում աշխատավարձի գերածախսը հսկողության ենթարկելիս անհրաժեշտ է հաշվի առնել նրա վրա ազդեցություն ունեցող բոլոր գործոնները: Ձևական մոտեցումը այս հարցում կարող է հասցնել սխալ հետևանքների: Օրինակ, 1956—1957 թվականների ձմռան բացառիկ խստությունն ու տևողականությունը, մանավորապես Արարատյան դաշտավայրում, անսովոր է և պետք է դիտել որպես բացառություն: Բայց այս դեպքում էլ պետք է պաշտպանել շինարարական կոլեկտիվների բանվորական ուժը և գերազանցապես կատարել նախապատրաստական աշխատանքներ այն հաշվով, որ առաջիկա ամիսներում լրացվի այն կորուստը, որ նրանք ունեցան դեկտեմբեր—հունվար ամիսներին:

Բնակարանային շինարարության զարգացման և բնակելի տարածությունների ֆոնդի մեծացման մյուս ո՛չ պակաս կարևոր միջոցը անհատական բնակարաններ կառուցելու և այդ հարցում բանվոր-ծառայողներին լայն օգնություն ցույց տալու վերաբերյալ Դեկտեմբերյան պլենումի որոշումների կատարումն է: Այս գործում 1956 թվականին միանգամայն գովելի աշխատանք կատարեց Կիրովականի քիմիական կոմբինատը: Կոմբինատի դիրեկտոր ընկ. Թևոսյանը իր դրական օրինակով վարակեց նաև հարևան կազմակերպություններին, այդ թվում նաև «Հայքիմարդշինի» Կիրովականի կոլեկտիվին: Շենք կառուցող բանվորները Քիմկոմբինատից և մասամբ շինարարությունից անհրաժեշտ օգնություն են ստացել: Կոյուղու, ջրմուղի, ճանապարհների կառուցման գործը կատարվում է Քիմկոմբինատի միջոցներով, որով շատ է հեշտացված նոր առաջացող ավանների բարեկարգման գործը:

Չի կարելի չնշել նաև այն, որ ինչպես Երևան քաղաքում, այնպես էլ ռեսպուբլիկայի մյուս շրջաններում անհատական բնակարանային շինարարությունը մեծ մասամբ ընթանում է ինքնահոսով: Հարկ չկա ապացուցելու, որ այս գործը նույնպես կարիք է զգում պլանավորման՝ ինչպես շինանյութերի մատակարարման, այնպես էլ տրանսպորտային միջոցներով ապահովելու տեսակետից:

Առաջին անգամը չէ, որ մեր մամուլում շոշափվում է անհատական շինարարությունը կազմակերպված կարգով կատարելու հարցը, բայց այդ ուղղությամբ առայժմ քայլեր չեն արված: Առանց թաքցնելու պետք է ասել, որ մատակարարման և տրանսպորտային անհրաժեշտ միջոցների բացակայության հետևանքով անհատական բնակարաններ կառուցողների զգալի մասը ստիպված դիմում է շինանյութեր ու տրանսպորտ ձեռք բերելու ապօրինի միջոցների, որի հետևանքով պետական շինարարության առանց այն էլ անբավարար միջոցների մի մասը հոսում է դեպի մասնավոր շինարարություն:

Բազմաթիվ առաջարկություններ են եղել և կարող են դեռ լինել այս հարցի կարգավորման համար: Կարևոր է, որ պլանավորող կազմակերպություններն անհրաժեշտ ցանկություն ու հոգատարություն ցուցաբերեն այս գործում, և հարցը կլուծվի առանց մեծ դժվարությունների:

Հաշվի առնելով բնակարանային շինարարության առանձնակի կարևորությունը և այն, որ այս լուրջ հարցի հաջող լուծումը սկսվում է նախագծման կազմակերպություններից, անհրաժեշտ ենք համարում մի քանի դիտողություններ անել նախագծման աշխատանքի վերաբերյալ:



Նախահաշիվները կազմելիս որոշակի ձգտում է նկատվում շինարարությունների արժեքը արհեստականորեն ցածրացնելու ուղղությամբ: Մինչև այժմ էլ միջհարկային բազմահեծան երկաթբետոնյա ծածկերի, պատերի երեսպատման և մի քանի այլ տեսակների արժեքները ճիշտ չեն հաշվարկվում, կոնստրուկցիաները նախատեսվում են մեկ նորմաներով, իսկ արժեքները հաշվվում են բոլորովին այլ նորմաներով: Օրինակ, բազմահեծան միջհարկային ծածկերը մեզ մոտ նախագծվում և իրականում կիրառվում են այնպես, որ երկաթբետոնային հեծանները կրկնվեն յուրաքանչյուր պեմզաբլոկից հետո, որի երկարությունն է 40 սանտիմետր, դրանից հետո արվում է ընդհանուր երկաթբետոնյա պլիտա՝ 6 սանտիմետր հաստությամբ: Արժեքը հաշվելիս այն ընդունում են որպես առանձին տավրաձև երկաթ-բետոնյա հեծաններ՝ իրարից 80 սանտիմետր հեռավորությամբ, և իբր թե այդ հեծանների միջին տարածությունը լրացվում է հատուկ սնամեջ սալերով, ու բացի այդ, հաշվի չի առնվում 6 սանտիմետրանոց ընդհանուր երկաթբետոնյա պլիտան: Այս դեպքում, պետական շահի տեսակետից, ոչ մի խնայողություն չկա, այլ տեղի ունի գերածախս շինարարական կազմակերպություններում:

Այնուհետև, նախագծող կազմակերպությունները շինարարական կազմակերպություններին չեն օգնում իրենց մտահղացումներով ու առաջարկություններով՝ շինարարության մեջ անընդհատ մուտք գործող նոր ու նորագույն կոնստրուկցիաների օգտագործման հարցում, ինչպես նաև այն նորությունների կիրառման գծով, որոնք գործադրվում են մեր և մյուս երկրների շինարարության մեջ:

Հաշվի առնելով, որ դեռևս չի վերացել նախագծերի ձգձգումը և ետ մնալը շինարարությունից, հարկավոր է արագացնել տիպային նախագծերի լայն կիրառումը, հատկապես բնակարանային շինարարության մեջ: Նկատի ունենալով բնակարային ֆոնդի մեծ պահանջը, ցանկալի է, որ նախագծող կազմակերպություններն ընթացիկ տարվա համար մշակեն այնպիսի տիպային նախագծեր, որտեղ մեկ սենյականոց բնակարաններ ավելի շատ լինեն, երկու կամ երեք սենյականոց՝ ավելի քիչ (համեմատականությունը՝ 60, 30 և 10 տոկոսների սահմաններում): Պետք է նկատի ունենալ, որ մեր պայմաններում, երբ դեռևս քիչ է կիրառվում տաք ջրի կենտրոնացված մատակարարումը, մասսայական տիպային շենքերում միանգամայն բավարար է, եթե նախատեսվեն ջրատաքացման կալոնկաներ՝ առանց վաննաների:

Պրակտիկան ցույց է տալիս, որ յուրաքանչյուր ընտանիքի համար ավելի լավ է 4—5 քառակուսի մետր տարածություն ունենալ ամեն մի չնչին առանձին բնակարանում, քան թե 10 և ավել քառակուսի մետր տարածություն՝ հարևան ընտանիքի ռեկայության դեպքում:

Ինչպես շինարարների, այնպես էլ նախագծող կազմակերպությունների, Շինանյութերի արտադրության մինիստրության և պլանավորող կազմակերպությունների կողմից բնակարանային շինարարությանը վերաբերվող մեր այս առաջ քաշած և բազմաթիվ այլ հարցերի արագ լուծումը անհրաժեշտ պայմաններ կստեղծի ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումի որոշումների անթերի կատարման համար:

# «ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ» ԱՌԱՍՊԵԼԸ

Մ. ԱԴՈՆՑ

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակաշրջանում, հատկապես
սոցիալիզմը համաշխարհային սիստեմի վերածվելուց հետո, երբ մի կողմից
կապիտալիստական արտադրաեղանակն ամբողջովին դրսևորեց իր սնանկու-
թյունը և մյուս կողմից՝ ավելի ակնառու ձևով արտահայտվեցին սոցիալիզմի
մեծագույն առավելությունները, բուրժուական տնտեսագիտությունն է՛լ ավելի
ռեակցիոն դարձավ։

Կապիտալիզմի ջատագովները ոչ մի ջանք չեն խնայում արդարացնելու կա-
պիտալիստական հասարակարգը, ճգնում են ցույց տալ, որ արդի կապիտա-
լիզմը միանգամայն կենսունակ է և պետք է շարունակի իր գոյությունը։

Ֆինանսական օլիգարխիայի տիրապետությունը և կապիտալիստական
դաժան շահագործումը հավերժացնելու նպատակով, բուրժուական արդի աըն-
տեսագետները նորից հարություն են տալիս արդեն մոռացված բուրժուական
գռեհիկ տնտեսագետներին՝ սկսած Մալթուսից, Սեյից, Ռոշերից, ավարտված
Կ. Մենգերով և Բեմ Բավերկով։ Նույն նպատակով նենգափոխելով պատմա-
կան իրականությունը, նրանք առաջ են քաշում նաև բազմաթիվ «նոր» շինծու,
իրար հակասող, գիտության հետ ընդհանուր ոչինչ չունեցող «տեսություններ»,
որոնց թվին է պատկանում նաև «ժողովրդական կապիտալիզմի» տեսությունը,
որը ժամանակակից բուրժուական տնտեսագիտության մեջ մեծ տարածում է
ստացել։

Հաշվի առնելով, որ կապիտալիզմը վաղուց արդեն վարկաբեկել է իրեն և
գիտական կոմունիզմի գաղափարն ամենուրեք արագորեն թափանցում է ժո-
ղովուրդների գիտակցության մեջ, խոշոր բուրժուազիայի վարձու գրչակները
ցանկանում են համոզել աշխատավոր մասսաներին, որ իբր թե այսօրվա կա-
պիտալիզմը նախկին կապիտալիզմը չէ, որ XX դարում «կապիտալիստական
ռևոլյուցիա» է կատարվել, որն իբր թե առաջացրել է «ժողովրդական կապիտա-
լիզմ», և վերացրել է աշխատավորության շահագործումը բուրժուազիայի
կողմից։

Աշխատավորության գիտակցությունը մթագնելու և ռևոլյուցիոն շարժում-
ներից նրան հեռու պահելու նպատակով, բուրժուազիայի լակեյները գովերգում
և ամեն կերպ տարածում են «ժողովրդական կապիտալիզմի» գաղափարը։ 1955
թվականի սկզբին ԱՄՆ-ում նույնիսկ հատուկ ցուցահանդես կազմակերպվեց՝
նվիրված «ժողովրդական կապիտալիզմին»։ Ամերիկյան թերթերը լայն հաղոր-
դումներ տպագրելով այդ ցուցահանդեսի մասին, գրում էին, թե իբր ցուցա-
հանդեսի նյութերը «ապացուցում են», որ ԱՄՆ-ում արդեն վերացվել են



դասակարգային տարբերությունները և հակասությունները, որ կապիտալն ար-
դեն մատչելի է դարձել բնակչության լայն խավերին, որ ԱՄՆ-ի քաղաքացի-
ների մեծամասնությունն արդեն կապիտալիստներ են դարձել և այլն։

«Ժողովրդական կապիտալիզմի» գաղափարը տարբեր ձևերով ու փոփո-
խակներով պրոպագանդվում է համարյա թե բոլոր կապիտալիստական երկրը-
ներում. մի դեպքում այն կրում է «պլանային կապիտալիզմ», մի այլ դեպքում՝
«կազմակերպված կապիտալիզմ», կամ «անդասակարգ կապիտալիզմ» անու-
նը և այլն։

***

«Ժողովրդական կապիտալիզմի» առասպելի ամենատարածված փոփոխակ-
ներից մեկը «կապիտալիզմի դեմոկրատացման» կեղծ տեսությունն է։

Հայտնի է, որ իմպերիալիզմի դարաշրջանում խոշոր կապիտալիստական
ձեռնարկությունների մեծ մասն ակցիոներական ընկերությունների ձև է ըն-
դունում։ Ակցիոներական ձեռնարկություններ ստեղծելու համար առևտրական
բանկերը, կամ ակցիոներական ընկերության հիմնադիր անդամները բաց են
թողնում ակցիաներ (բաժնետոմսեր) և այդ ակցիաների վաճառքից ստացված
գումարներով կառուցում են ձեռնարկություն, որը պատկանում է ակցիաների
տերերին։

Վերջին տարիներիս բաց են թողնվում մեծ թվով փոքր արժեքի ակցիա-
ներ. ԱՄՆ-ում թողարկում են նույնիսկ մեկ դոլարանոց ակցիաներ։ Այդպիսի
մանր ակցիաները ձեռք բերելու հնարավորություն ունի նույնիսկ բանվորների,
ծառայողների և ֆերմերների մի մասը։ Ելնելով դրանից, բուրժուական տնտե-
սագետները դեմագոգիկ կերպով հայտարարում են, որ իբր թե կապիտալը
մատչելի է դարձել բնակչության բոլոր խավերի համար։ Նրանք ակցիոներա-
կան ձեռնարկության փայատեր կապիտալիստ են համարում նույնիսկ այն
բանվորին կամ ֆերմերին, որը ձեռք է բերել մի քանի դոլարի ակցիա, պնդում
են, որ կապիտալիզմը թևակոխել է իր զարգացման նոր շրջանը՝ «կապիտալի
դեմոկրատացման» շրջանը։

Ամերիկյան առևտրական պալատի նախկին նախագահ Ջոնստոնը, որը սի-
րապետում է մի քանի խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների, գրում
է, որ իբր թե «...շնորհիվ ապահովագրական պոլիսների և ակցիաների ձեռք
բերման, ԱՄՆ-ի բնակչության մեծ մասը դառնում է սեփականատերեր»։

Դեռևս 1913 թվականին Վ. Ի. Լենինը ցույց է տվել նման հայտարարու-
թյունների սնարկայազուրկ լինելը։ Նա գրել է. «Կապիտալիզմի պաշտպան
պրոֆեսորները, տեսնելով մանր ակցիոներների թվի աճումը, շաղակրատում
են սեփականատերերի թիվն ավելանալու մասին։ Իսկ իրականում աճում է
տուզ-միլիարդատերերի իշխանությունը (և եկամուտը) «մանրերի» կապիտալի
վրա» (Երկեր, հ. 19, էջ 240)։

Բուրժուական տնտեսագետները «կապիտալի դեմոկրատացումը» կապում
են ակցիոներական ձեռնարկությունների կառավարման կարգի հետ։ Նրանք
պնդում են, որ ակցիոներական ընկերությունների ներսում տիրապետում է
լայն դեմոկրատիա, որ յուրաքանչյուր տարի ակցիոներական ընկերության
ընդհանուր ժողովում ընտրում են վարչություն, որը կառավարում է ակցիոնե-
րական ձեռնարկությունը և հաշվետու է ակցիոներական ընկերության առաջ։
Օրինակ, տնտեսագետ Ռիվսի կարծիքով, եթե «...ձեռնարկությունը պատկանում

է մեծ թվով ակցիաների տերերի, ապա այն կառավարվում է ոչ թե մասնավոր կարգով, այլ որպես սոցիալիստական կամ պետական ձեռնարկություն»:

«Կապիտալի դեմոկրատացման» կեղծ տեսության կողմնակիցները շաղակրատում են, որ ժամանակակից կապիտալիստական հասարակությունը դասակարգային հասարակություն չէ, որ իբր թե բնակչությունը բաժանվում է ոչ թե դասակարգերի, այլ սոցիալական շերտերի կամ խավերի, որոնք իրարից տարբերվում են ոչ թե արտադրության միջոցների նկատմամբ ունեցած իրենց դիրքով, այլ իրենց մասնագիտությամբ, կրթությամբ, զբաղեցրած պաշտոնով, եկամուտների չափով և այլն:

Ամերիկյան սոցիոլոգներ Ջեսսի Բերնարդը, Ուլիամ Ֆրիդմանը և շատ ուրիշներ անհիմն կերպով պնդում են, որ շահագործումը և արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը ԱՄՆ-ում արդեն վերացված են (?), որ ակցիոներական ընկերություններին պատկանող ձեռնարկությունները հասարակական սեփականություն են հանդիսանում (?):

Բուրժուական տնտեսագետների այդ բոլոր թյուր տեսակետները նույնիսկ ընչին չափով չեն համապատասխանում իրականությանը:

Ակցիոներական ընկերությունները բանվորներին երբեք էլ չեն կարող կապիտալիստներ դարձնել: Նախ, ակցիաների գերակշռող մասը գտնվում է ֆինանսական կապիտալի միլիարդատեր արքաների ձեռքում, իսկ մնացած համարյա բոլոր ակցիաները պատկանում են կապիտալիստների դասակարգի միջին և ստորին խավերի ներկայացուցիչներին: Բանվորները զրկված են ակցիաներ ձեռք բերելու հնարավորությունից: Բավական է նշել, որ ընչին գումարի ակցիաներ ունի ԱՄՆ-ի բանվորների միայն 2—3 տոկոսը:

Հենց իրենց՝ բուրժուական տնտեսագետների հաշվարկումներով, ԱՄՆ-ում ակցիաներ կարող են ձեռք բերել միայն այն քաղաքացիները, որոնց տարեկան եկամուտների գումարը 7.500 դոլարից բարձր է, իսկ այդպիսի բարձր եկամուտ ունեցող բանվորներ Ամերիկայում համարյա չկան: Եթե բանվորների վերնախավի և բարձր աշխատավարձ ստացող ծառայողների մի որոշ մասն ակցիաներ է ձեռք բերում, նույնիսկ դրանք դարձյալ կապիտալիստներ չի կարելի անվանել, որովհետև նրանց ակցիաների գումարն այնքան փոքր է, որից ստացվող դիվիդենդը կազմում է մանր ակցիատերերի եկամուտների շատ ընչին մասը: Ակցիաներ ունեցող բանվորների և ծառայողների եկամտի հիմնական աղբյուրը դարձյալ մնում է իրենց աշխատանքը, նրանք անաշխատ եկամուտով ապրողներ չեն: Բացի այդ, ակցիաներն իրենց տերերին ոչ բոլոր դեպքերում է, որ դարձնում են ռեալ կապիտալի տիրապետողներ: Ակցիաների տերերը ձեռք են բերում որոշ եկամուտ ստանալու իրավունք, բայց վաճառելով ակցիաները, նրանք փաստորեն վաճառում են ոչ թե իրական կապիտալը, այլ այդ եկամուտը ստանալու իրավունքը:

Անհիմն են նաև բուրժուական տնտեսագետների պնդումներն ակցիոներական ընկերությունների ղեկավարման դեմոկրատական կարգի մասին:

Ակցիոներական ընկերությունների ներսում ոչ մի դեմոկրատիա գոյություն չունի: Մանր ակցիատերերը չեն մասնակցում ակցիոներական ընկերությունների կառավարման գործին, ակցիոներական ձեռնարկությունները փաստորեն գտնվում են ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչների ձեռքում:

Ակցիոներական ընկերությունների վարչությունների ընտրության ժամանակ քվեարկում են ոչ թե ֆիզիկական անձերը, այլ ակցիաները: Եթե բանվորն



ունի երկու ակցիա, իսկ կապիտալիստը՝ 1.500 ակցիա, ապա առաջինը քվեարկության ժամանակ օգտվում է 2 ձայնի իրավունքով, իսկ վերջինը՝ 1.500 ձայնի իրավունքով: Մանր ակցիաների տերերի մեծամասնությունն ակցիոներական ընկերության վարչությունների ընտրություններին չի մասնակցում, համոզված լինելով, որ վարչության կազմում ընտրվելու են խոշոր ակցիատերերի ներկայացուցիչները:

Այդպիսի պայմաններում խոշոր կապիտալիստը ձեռք բերելով որևէ ակցիոներական ընկերության ակցիաների 30—40 տոկոսը, տիրապետում է նրա ամբողջ կապիտալին: Ակցիոներական ընկերությունների վարչությունների անդամներին և ձեռնարկությունների դիրեկտորներին փաստորեն նշանակում են այն խոշոր կապիտալիստները, որոնց ձեռքում գտնվում է տվյալ ընկերության ակցիաների վերահսկիչ ծրարը: 1950 թվականին ԱՄՆ-ում ֆինանսական կապիտալի 400 մագնատներ զբաղեցնում էին 250 խոշոր ակցիոներական ընկերությունների 3.705 դիրեկտորական պաշտոնների մեկ երրորդը: Ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչներն իրենց ձեռքում պահելով ակցիոներական ընկերությունների ղեկավար պաշտոնները, իրենց համար դուրս են գրում հսկայական գումարներ կազմող գործուղումների ծախսեր, նշանակում են աշխատավարձի բարձր դրույքներ, սպեկուլյացիաների և զանազան կոմբինացիաների միջոցով յուրացնում են ակցիոներական ընկերությունների շահույթների մեծ մասը:

Այսպես, օրինակ, ամերիկյան «Ջեներալ Մոտորս» ռազմա-արդյունաբերական ընկերության նախագահը 1951 թվականին ստացել է 583.256 դոլար, որից ուղղակի աշխատավարձ՝ 201.000 դոլար, զանազան պարգևատրումներ՝ 365.000 դոլար և նրա հաշվին կենսաթոշակային ֆոնդ է փոխանցված 17.056 դոլար:

Մոնոպոլիստական միավորումներն ակցիաների վաճառքից գոյացած գումարների հաշվին ավելացնում են իրենց կապիտալները և ստանում հսկայական շահույթներ:

1955 թվականին «Ջեներալ Մոտորս»-ը, որի ձեռնարկություններում աշխատում են 642 հազար բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ստացել են 1.189 միլիոն դոլարի շահույթ: Այդ կոմպանիան գլխավորում են ֆինանսական կապիտալի մագնատներ Դյուպոնը և Մորգանը, որոնք ստանում են նրա շահույթների գերակշռող մասը: 1955 թվականին անգլիական հինգ խոշոր բանկերի շահույթները կազմել են 11,2 միլիոն ֆունտ ստերլինգ:

Ֆրանսիայի 600 խոշորագույն մոնոպոլիաների շահույթները 1950 թվականի 62,5 միլիարդ ֆրանկից 1955 թվականին հասել են 126, 4 միլիարդ ֆրանկի, այսինքն՝ աճել են ավելի քան երկու անգամ:

Արևմտագերմանական «Հյուտենվերկե Օբերհաուզեն» մետաղագործական մոնոպոլիան 1955 թվականին բոլոր պահումներից և գանձված հարկերից հետո ստացել է 6,2 միլիոն մարկ շահույթ:

Ճապոնական խոշորագույն մետաղագործական մոնոպոլիաներ՝ «Յավատան», «Ֆուջին», «Նիպպոն կոկան» 1955 թվականին ստացել են 7,2 միլիարդ իեն շահույթ:

Այսպիսով, ակցիոներական ընկերությունները ոչ թե դեմոկրատացնում են կապիտալը, այլ խոշոր բանկիրներին և արդյունաբերողներին հնարավորություն են տալիս իրենց տիրապետությունը տարածելու հազարավոր մանր ու միջին

ակցիատերերի միջոցների վրա, այդ միջոցներով շահագործելու բանվորներին և ստանալու առասպելական շահույթներ։

Դեռ 1916 թվականին Վ. Ի. Լենինը գրել է. «Ակցիաներն ունենալու «դեմոկրատացումը», որից բուրժուական սոփեստներն ու օպորտունիստական «նույնպես սոցիալ-դեմոկրատներն» սպասում են (կամ հավատացնում են, թե սպասում են) «կապիտալի դեմոկրատացումը», մանր արտադրության դերի և նշանակության ուժեղացումը և այլն,— իրականում ֆինանսական օլիգարխիայի հզորությունը մեծացնելու եղանակներից մեկն է» (Երկեր, հ. 22, էջ 299)։

Ֆինանսական օլիգարխիան «բանվորական ակցիաներն» օգտագործում է ոչ միայն իր տնտեսական հզորությունը մեծացնելու, այլև բանվորների շարքերում պառակտում մտցնելու, նրանց տնտեսական ու քաղաքական պայքարից հեռու պահելու համար։

Խոշոր կապիտալի մագնատները «բանվորական ակցիաներն» օգտագործում են աշխատանքի լարվածությունը բարձրացնելու, աշխատօրը երկարացնելու, բանվորների շահագործումն ուժեղացնելու և միաժամանակ սոցիալական կոնֆլիկտներից խուսափելու միտումներով։ Այդ նպատակների իրականացման համար բուրժուական տնտեսագետներն առաջարկում են կապիտալիստներին նույնիսկ իրենց գերշահույթների մի մասը զիջել ձեռնարկության աշխատողներին, որպեսզի նրանք «բանվորական ակցիաներ» ձեռք բերեն։

Անգլիայի որոշ ձեռնարկություններում բանվորների սովորական աշխատավարձը որոշ չափով կրճատում են այն նկատառումով, որ նրանք մասնակցեն ձեռնարկության շահույթներին։ Տարեվերջին ձեռնարկության շահույթների մի չնչին մասը տրամադրում են բանվորներին՝ ակցիաներ գնելու համար։ Այսպիսով, իրենց ձեռնարկությունների աշխատողների աշխատավարձի հաշվին «բանվորական ակցիաներ» տարածելով, կապիտալիստները մի կողմից այդ միջոցների հաշվին ընդլայնում են իրենց կապիտալի շրջանառությունը, իսկ մյուս կողմից բանվորների մեջ ստեղծում են այն պատրանքը, որ շահույթների աճից հավասարապես օգտվում են թե՛ կապիտալիստները և թե՛ ձեռնարկության աշխատողները։ Սակայն, հետաքրքրականն այն է, որ ԱՄՆ-ի շատ ձեռնարկությունների բանվորներն իրավունք չունեն մասնակցելու ակցիոներական ընկերության ժողովներին և ոչ էլ վաճառելու իրենց ակցիաները։

ԱՄՆ-ի շատ ձեռնարկություններում «բանվորական ակցիաները» տարածվում են հարկադրական կարգով։ Այսպես, օրինակ, «Դյուպոն դե Նեմուր» քիմիական տրեստը բանվորներին աշխատանքի է ընդունում այն պայմանով, որ նրանք իրենց աշխատավարձի մի մասով ակցիաներ գնեն։ «Ջեներալ էլեկտրիկ» մոնոպոլիան յուրաքանչյուր շաբաթ իր աշխատողների աշխատավարձից 75 ցենտից մինչև 10 դոլար պահումներ է անում ակցիաներ գնելու համար։

«Ֆորդ» և «Ջեներալ մոտորս» ավտոմոբիլային մոնոպոլիաները առաջարկում են իրենց ձեռնարկությունների բանվորների աշխատավարձի 12 տոկոսն առանձնացնել՝ ակցիաներ և պետական փոխառությունների պարտատոմսեր գնելու համար, սակայն նրանց մեծ մասը, ինչպես և այլ մոնոպոլիաների շատ բանվորներ հրաժարվում են ակցիաներ գնելուց երկու հիմնական պատճառներով. առաջին՝ բանվորների աշխատավարձն այնքան ցածր է, որ հազիվ բավարարում է իրենց ընտանիքների ամենաանհրաժեշտ պահանջները և ավելորդ գումար չի մնում ակցիաների ձեռք բերման համար, երկրորդ՝ նրանք գիտակցում են, որ «բանվորական ակցիաները» կապիտալիստներն օգտագործում են



իրենց շահույթներն ավելացնելու և աշխատավորների պայքարը շահագործողների դեմ թուլացնելու համար։

Կապիտալի ջատագովների մեքենայությունները աշխատավորներին չեն կարող շեղել դասակարգային պայքարի ճիշտ ուղուց։ Այդ մասին է վկայում գործադուլային շարժման աճը կապիտալիստական բոլոր երկրներում։ Եթե ԱՄՆ-ում 1938 թվականին տեղի է ունեցել 2.772 գործադուլ, որին մասնակցել են 688 հազար մարդ, ապա 1955 թվականին գործադուլների թիվը հասել է 4.200-ի, իսկ գործադուլավորների թիվը կազմել է 2.750 հազար մարդ։ Այդ նույն ժամանակամիջոցում Անգլիայում գործադուլների թիվը 875-ից հասել է 2.424-ի, իսկ Ֆրանսիայում 1.220-ից հասել է 2.664-ի։

Չնայած «կապիտալի դեմոկրատացման» մասին բուրժուական ուժեղ պրոպագանդային, բոլոր երկրների աշխատավորության գիտակից խավերը հասկանում են, որ աշխատանքի ու կապիտալի միջև երբեք հաշտություն լինել չի կարող։

***

Բուրժուական սոցիոլոգները կապիտալի «դեմոկրատացումը» կապում են նաև կապիտալիստական մոնոպոլիաների էության «արմատական» փոփոխման և պետության տնտեսական դերի ուժեղացման հետ։

Բուրժուական տնտեսագետների մեծ մասը որպեսզի ժխտի լենինյան այն դրույթը, որ ժամանակակից կապիտալիզմը մոնոպոլիստական կապիտալիզմ է, և ցույց տա, որ կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական կյանքում ոչ թե ֆինանսական օլիգարխիան, այլ իբրև թե ժողովուրդն է տիրապետում, ամեն կերպ ջանում է կեղծել մոնոպոլիաների բուն էությունը։ Օրինակ, ամերիկյան բուրժուական տնտեսագետ Է. Չեմբերլենը հայտարարում է, որ մոնոպոլիան ոչ մի կապ չունի արտադրության կենտրոնացման ու համակենտրոնացման հետ, որ մոնոպոլիա գոյություն ունի արտադրության նաև այն ճյուղերում, որտեղ տիրապետում են մանր ձեռնարկությունները։ Չեմբերլենը մոնոպոլիան կապում է արտադրանքի դիֆերենցացիայի հետ։ Եթե որևէ ձեռնարկություն նոր տեսակի ու ձևի արտադրանք է թողարկում, որպիսիք ուրիշ ձեռնարկությունները չեն արտադրում, Չեմբերլենը դա մոնոպոլիա է անվանում։ Նա մոնոպոլիա է համարում նույնիսկ ձեռնարկության մոտիկությունը շուկային։

Մոնոպոլիայի հիմքում դնելով արտադրանքի դիֆերենցացիան, Չեմբերլենը հետևցնում է, որ մոնոպոլիաները նպաստում են բնակչության պահանջմունքներն ավելի բազմակողմանիորեն բավարարելուն։ «Մոնոպոլիան,— գրում է նա,— բարեկեցության անհրաժեշտ բաղկացուցիչ մասն է»։ Այսպիսով, ըստ նրա դուրս է գալիս, որ մոնոպոլիան ոչ թե ուժեղացնում է շահագործումը, այլ բարձրացնում է բնակչության բարեկեցությունը, որն, իհարկե, բացահայտ սուտ է և կեղծիք։

Չեմբերլենը մոնոպոլիա է անվանում նաև տեխնիկական այն նորամուծությունները, որոնք դեռ մասսայական կիրառում չեն ստացել և ապահովում են գերշահույթ։ Նա առաջ է քաշում այսպես կոչված «մոնոպոլիստական կոնկուրենցիայի» տեսությունը, ըստ որի, վաղը գերշահույթի համար ստիպում է ձեռնարկատերերին թողարկելու նորանոր տեսակների արտադրանք և կիրառելու ավելի կատարելագործված տեխնիկա։

Այս բոլոր անհիմն հետևությունները բխում են մոնոպոլիայի էության

սխալ բնորոշումից։ Խնդիրն այն է, որ խոշորագույն մոնոպոլիաներ գոյություն ունեն հենց արտադրության այն ճյուղերում, որոնք մասսայաբար թողարկում են նույն տեսակի արտադրանք, իսկ յուրատեսակ սպառման առարկաներ, որոնք բավարարում են մարդկանց անհատական սպեցիֆիկ պահանջմունքները, արտադրում են ոչ թե մոնոպոլացված ձեռնարկությունները, այլ մանր ձեռնարկությունները, որոնցում երբեմն տիրապետում է ձեռքի աշխատանքը։ Մոնոպոլիստական միավորումներն առաջանում են միայն այն ժամանակ, երբ կապիտալի ու արտադրության համակենտրոնացումը հասնում է բարձր մակարդակի։

Մի խումբ բուրժուական տնտեսագետներ պնդում են, որ եթե արտադրության որևէ ճյուղում գոյություն ունեն մի քանի կորպորացիաներ, ապա նրանց կարծիքով այդտեղ բացակայում է մոնոպոլիան։

Ֆրեդերիկ Ալլենը պնդում է, որ XX դարում ԱՄՆ-ը այլևս մոնոպոլիստական կապիտալիզմի երկիր չէ։ Նա շաղակրատում է, որ կապիտալիզմը տրանսֆորմացիա է կատարել, արմատապես փոխել է իր էությունը, որ ԱՄՆ-ի տնտեսության մեջ այժմ տիրապետում են ոչ թե խոշոր սեփականատերերը, այլ տնտեսական ղեկավարները, վարձու աշխատողները։ Ամերիկյան բուրժուական տնտեսագետ Սլիտշերը վարձու աշխատողների խմբի մեջ է մտցնում ոչ միայն ձեռնարկությունների դիրեկտորներին, կառավարիչներին և մնացած ծառայողներին, այլ նաև բանվորներին։ Ըստ Սլիտշերի՝ ԱՄՆ-ի տնտեսական կյանքում տիրապետում են ոչ թե կապիտալիստները, ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչները, այլ բանվորներն ու ծառայողները, ամբողջ ժողովուրդը (?)։ «Վարձու բանվորները,— գրում է Սլիտշերը իր «Ամերիկյան էկոնոմիկան» գրքում, —հանդիսանում են հասարակության ամենաազդեցիկ խումբը, և հասարակությունն ու նրա տնտեսությունը զարգացման այնպիսի ուղղություն են ընդունում, որն ավելի շատ համապատասխանում է վարձու բանվորների, քան որևէ այլ տնտեսական խմբի շահերին, որ վարձու բանվորները դարձել են բիզնեսմեններ, դա փաստ է…»։ Դ. Ռոդենբուշը գրում է, որ «ֆինանսական կապիտալը մահանում է, իսկ ֆինանսական կապիտալիստները հեռանում են ասպարեզից»։

Այսպիսով, ըստ «ժողովրդական կապիտալիզմի» տեսության կողմնակիցների դուրս է գալիս, որ բանվոր դասակարգը, որի տնտեսական վիճակը քանի գնում՝ վատթարանում է և միլիոնավոր գործազուրկներ միջոցներ չունեն իրենց ընտանիքների գոյությունը պահպանելու համար, իբրև թե տիրապետող դեր ունեն կապիտալիստական երկրների տնտեսական կյանքում, իսկ կապիտալիստները, ֆինանսական կապիտալի մագնատները, որոնց հարստությունն անընդհատ աճում է, ասպարեզից հեռանում են։ Իհարկե, այս նողկալի և ծիծաղելի ստին չեն հավատում ոչ միայն բանվորները, այլև իրենք՝ այդ տեսության հորինողները։

Ամերիկյան տնտեսագետների որոշ շրջաններում տարածված է այն կարծիքը, որ այժմ ԱՄՆ-ում գոյություն ունի ոչ թե կապիտալիստական էկոնոմիկա, այլ այսպես կոչված «խառն էկոնոմիկա», որի մեջ մասնավոր և պետական տնտեսությունները զուգակցվում են, միահյուսվում։

Այսպես կոչված «խառն էկոնոմիկային» ես բուրժուական տարբեր տնտեսագետներ տարբեր մեկնաբանումներ են տալիս։ Ազատ մրցակցության կողմնակիցներն ասում են, որ «խառն էկոնոմիկայում» տիրապետում է ան-



հատական նախաձեռնությունը։ «Կարգավորվող էկոնոմիկայի» կողմնակիցները (Քեյնս, Ջ. Մ. Կլարկ, Այրես, Ս. Բ. Նուվեր, Լիլենթալ, Ռոդենբուշ և ուրիշներ) ընդհակառակը, շեշտը դնում են պետության միջամտության ուժեղացման վրա, ասելով, որ այժմ պետությունը տնտեսական կյանքում ունի այնպիսի վճռական դեր, որ ի վիճակի է վերջ տալու արտադրության անարխիային և վերացնելու սոցիալական կյանքի բոլոր արատները։

Սակայն, գոյություն ունի տնտեսագետների մի երրորդ խումբ ևս, որը ցանկանում է հաշտեցնել հիշված երկու տեսակետները, փորձելով ապացուցել, որ ժամանակակից կապիտալիստական երկրների էկոնոմիկայում անհատական նախաձեռնությունը զուգակցվում է պետական կարգավորման հետ։ Այդ տեսակետը պաշտպանող ամերիկյան տնտեսագետները պնդում են, որ ԱՄՆ-ի էկոնոմիկայում մոնոպոլիաները զուգակցվում են ազատ մրցակցության և պետության միջամտության հետ։ Այդ երեք գործոնների միահյուսումը նրանք անվանում են «դինամիկ կապիտալիզմ», որն ըստ էության պետական-մոնոպոլիստական կապիտալիզմ է։

«Կարգավորվող կապիտալիզմի» տեսության կողմնակիցները գերագնահատում են պետության դերը, այն համարելով համաժողովրդական օրգան։ Ըստ նրանց, պետությունը հօգուտ ժողովրդի վերահսկում, կառավարում ու կարգավորում է տնտեսության զարգացումը, պետությանն իբր թե իրեն է ենթարկում բոլոր ձեռնարկատերերին, այդ թվում նաև խոշոր մոնոպոլիաներին։ «Կարգավորվող կապիտալիզմի» պայմաններում,— գրում է Լիլենթալը, — մոնոպոլիստները դարձել են «ժողովրդի ծառաներ»։ Ինչպես միշտ, այս անգամ էլ կապիտալիզմի վարձու պաշտպանները կեղծում են իրականությունը։

Կապիտալիզմի ողջ պատմությունը ցույց է տվել, որ բուրժուական պետությունները երբեք էլ չեն հանդիսացել ամբողջ ժողովրդի շահերի պաշտպան, որ նրանք ի վիճակի չեն կարգավորելու կապիտալիստական արտադրության անարխիկ զարգացումը, և վերջապես, ոչ թե կապիտալիստական ձեռնարկատերերը և մոնոպոլիստական միավորումներն են ենթարկվում բուրժուական կառավարություններին, այլ ընդհակառակը՝ բուրժուական կառավարությունները հանդիսանում են խոշոր կապիտալիստական մոնոպոլիաների կամակատարները։ Բուրժուական կառավարություններում համարյա թե բոլոր բարձր պաշտոնները գրավում են իրենք՝ կապիտալիստները և նրանց դրածոները։ Այսպես, օրինակ՝ ԱՄՆ-ի պետական քարտուղար Դալլեսը Ռոկֆելլերի ֆինանսական խմբի ներկայացուցիչն է, պաշտպանության մինիստր Վիլսոնը, որ նախկինում գլխավորում էր «Ջեներալ մոտորս» ընկերությունը, ԱՄՆ-ի քիմիական արդյունաբերության արքա Դյուպոնների խմբի ներկայացուցիչն է։ Ֆինանսների մինիստր Խեմֆրին խոշոր կապիտալիստ է, դիվանագիտական բարձր պաշտոնյա Օլդրիչը Ռոկֆելլերի փեսան է և այլն։

Կապիտալիստական բոլոր երկրներում պետությունը, անկախ իր կառավարական ձևերից, ամբողջովին և միայն կապիտալիստների ոհմակի շահերի բռնացող պաշտպանն է։

Բուրժուական կառավարությունների գործունեությունն ամբողջովին ուղղված է կապիտալիստական բարձր շահույթի ապահովման և կապիտալիստների դասակարգի քաղաքական տիրապետության ամրապնդման նպատակին։ Այդ խնդիրների իրականացման համար ԱՄՆ-ում գործում է Տաֆտ-Խարտ-

յիի օրենքը, որն արգելում է գործադուլները, Սմիթի և Մաքարենի օրենքները,
որոնք ուղղված են կոմունիստների և մյուս պրոգրեսիվ գործիչների դեմ։
Նման օրենքներ են գործում նաև կապիտալիստական այլ երկրներում, որոնք
մերկացնում են բուրժուական դեմոկրատիայի կեղծ ու խաբուսիկ էությունը։
«Խառն էկոնոմիկայի» տեսության կողմնակիցները պետության հետ միա-
սին կարգավորող ուժ են համարում նաև պրոֆեսիոնալ միությունները և կոո-
պերատիվ կազմակերպությունները։ Մի խումբ ամերիկյան տնտեսագետներ
գտնում են, որ պրոֆեսիոնալ միությունները այսպես կոչված «հավասարա-
կշռող ուժերի» բաղկացուցիչ մասն են կազմում։
«Հավասարակշռող ուժերի» տեսությունն առաջ է քաշել ամերիկյան տըն-
տեսագետ Ջոն Գոլբրեյսը։ Ըստ այդ տեսության, մոնոպոլիաները առաջ են
բերում իրենց հակազդող ուժեր, որոնք ոչնչացնում են մոնոպոլիաների ամե-
նակարող, ճնշող ուժը և ստեղծում հավասարակշռություն։ Օրինակ, եթե ար-
դյունաբերական մոնոպոլիաները բարձրացնում են ապրանքների գները, ապա
առևտրական միավորումները, խոշոր ունիվերսալ խանութները, ընդհակա-
ռակը՝ արդյունաբերական մոնոպոլիաներին ստիպում են իջեցնելու գները։
Գոլբրեյսը հայտարարում է, որ կապիտալիստական մոնոպոլիաները հզոր ուժ
են, որոնք կարող են ուղղվել բանվորների դեմ։ Սակայն պրոֆեսիոնալ միու-
թյունները ևս մեծ ուժ են, որոնք հակազդում են մոնոպոլիաներին և ստեղ-
ծում հավասարակշռություն։
Պրոֆեսիոնալ միությունները պայքար են մղում բանվորների տնտե-
սական շահերի պաշտպանման համար։ Բայց քանի որ արտադրության մի-
ջոցները գտնվում են բուրժուազիայի ձեռքում, նրանք տնտեսական պայքա-
րով պրոլետարիատին չեն կարող ազատագրել շահագործումից, կամ թե չէ՝
վերացնել ունեցվածքային անհավասարությունը։ Պրոֆեսիոնալ միություն-
ները միայն որոշ չափով կասեցնում են աշխատօրվա տևողությունը և այլն։
Պրոֆմիությունները որպես հակազդող ուժ երբեք էլ չեն կարող հավասարվել
կապիտալիստական մոնոպոլիաների հետ, որոնց ձեռքումն է հարստության
բացարձակորեն գերակշռող մասը և քաղաքական իշխանության ղեկը։ Կա-
պիտալիստական մոնոպոլիաները կաշառում են պրոֆեսիոնալ միություն-
ների ղեկավարների մի մասին, որոնք դադարում են պաշտպանել բանվոր-
ների տնտեսական շահերը և վարում են աշխատավարձի «սառեցման» և գոր-
ծադուլներից հրաժարվելու քաղաքականություն։
Ամերիկյան բուրժուական տնտեսագետներից շատերը պնդում են, որ
ԱՄՆ-ի կառավարության տնտեսական քաղաքականության հիմնական խնդիր-
ներից մեկը իբրև թե հանդիսացել է սեփականության և եկամուտների հա-
վասարեցումը։ Այսպես, օրինակ, Հանսենը գրում է, որ կառավարության վա-
րած հարկային քաղաքականությունը տանում է դեպի «բնակչության տարբեր
խավերի եկամուտների հավասարեցումը»։ Սլիտչերը հայտարարում է, թե
իբրև ԱՄՆ-ի կառավարությունը վարելով բանվորների եկամուտներն ի հա-
շիվ կապիտալիստների ավելացնելու քաղաքականություն, իրականացնում է
«եկամուտների սոցիալիստականացման» իր հիմնական խնդիրը։ Ռոզենբոու-
մը ևս հայտարարում է, որ շնորհիվ աշխատավարձի և գների բնագավառում
պետության վարած քաղաքականության «բանվորների հսկայական մասսա-
ներ հնարավորություն ունեն կապիտալիստներ դառնալու, սակայն միաժա-
մանակ չդադարելով բանվորներ լինելուց»։ Նման դատարկահնչուն, ոչնչով



չհիմնավորված հայտարարությունները շատ են։ Իսկ իրականում կապիտալի
աշխարհում ո՛չ միայն սեփականության և եկամուտների հավասարեցում չի
կատարվում, այլ ընդհակառակը, քանի գնում գույքային անհավասարու-
թյունն ուժեղանում է։ Կապիտալիստական երկրներում տեղի է ունենում
բանվորների իրական աշխատավարձի իջեցում, իսկ կապիտալիստների եկա-
մուտների արագ աճ։ ԱՄՆ-ի կապիտալիստական մոնոպոլիաների շահույթ-
ները 1939 թվականի 6,5 միլիարդ դոլլարից 1944 թվականին հասան 24,3
միլիարդ դոլլարի։ 1955 թվականին ԱՄՆ-ի կապիտալիստական մոնոպոլիա-
ների շահույթները կազմում էին 43,4 միլիարդ դոլար, այսինքն՝ 1939 թվա-
կանի համեմատությամբ մոտ 7 անգամ ավելի։ Կապիտալիստական երկրնե-
րի աշխատավորները կազմելով բնակչության մոտ 90 տոկոսը, ստանում են
ազգային եկամտի կեսից պակասը, իսկ շահագործողները կազմելով բնակ-
չության մոտ 1/10 մասը, ստանում են ազգային եկամտի կեսից ավելին։
1951 թվականին ԱՄՆ-ում աշխատավորների բաժինը կազմել է ազգային
եկամտի միայն 40 տոկոսը։
Պրոֆեսոր Քելլերի հաշվարկումների համաձայն ԱՄՆ-ում չորս անձից
կազմված բանվորի ընտանիքի (ամուսին, կին և երկու երեխաներ) տարե-
կան ապրուստի մինիմալ արժեքը 1955 թվականին կազմել է 5465 դոլար,
կամ յուրաքանչյուր շաբաթ 105 դոլար։ ԱՄՆ-ի վերամշակող արդյունաբե-
րության մեջ 1955 թվականին մեկ բանվորի շաբաթական միջին աշխատա-
վարձը փաստորեն կազմել է 76,5 դոլար, այսինքն՝ Քելլերի նախատեսած
ապրուստի արժեքի մինիմումի 73 տոկոսը։ Ըստ հրապարակված պաշտոնա-
կան տվյալների, 1955 թվականին ԱՄՆ-ի վերամշակող արդյունաբերության
բանվորների 16 տոկոսի տարեկան աշխատավարձը կազմել է 800—1000
դոլար, 13 տոկոսի տարեկան աշխատավարձը՝ 1000—2000 դոլար, 12 տոկո-
սի աշխատավարձը՝ 2000—3000 դոլար, 28 տոկոսի աշխատավարձը՝ 3000—
5000 դոլար։ Այսպիսով, 1955 թվականին ԱՄՆ-ի վերամշակող արդյունաբե-
րության բանվորների 69 տոկոսի տարեկան աշխատավարձը Քելլերի բյու-
ջեով նախատեսված ապրուստի արժեքից ցածր է եղել։
Այս թվերն ակնառու ձևով ցույց են տալիս, որ կապիտալիստական հա-
սարակարգում, որտեղ տիրապետում է արտադրության միջոցների մասնա-
վոր կապիտալիստական սեփականությունը, «եկամուտների սոցիալիստա-
կանացման» մասին խոսք անգամ լինել չի կարող։ Դա աբսուրդ է։
«Եկամուտների սոցիալիստականացման», «կապիտալի դեմոկրատաց-
ման», «խառն էկոնոմիկայի», «կարգավորվող կապիտալիզմի», «հավասարա-
կշռող ուժերի» և նման տիպի այլ «տեսությունները» ամբողջովին կեղծ են
և ծառայում են կապիտալիզմն արդարացնելու, աշխատավորների գիտակ-
ցությունը մթագնելու և նրանց ռևոլյուցիոն պայքարից հեռու պահելու նպա-
տակներին։ «Ժողովրդական կապիտալիզմի» առասպելը, իր բոլոր փոփոխա-
կներով, բուրժուական տնտեսագետներն օգտագործում են կոմունիզմի
դեմ պայքարելու համար։ Սակայն կապիտալիզմի ջատագովների հորինած
կեղծ տեսություններին աշխատավոր մասսաները չեն հավատում, նրանք
պայքարում են դեմոկրատիայի, սոցիալիզմի և խաղաղության գործի հաղ-
թանակի համար։

## Պ Ա Ր Տ Ի Ա Կ Ա Ն  Կ Յ Ա Ն Ք

# ՇՐՋԱՆԱՅԻՆ ԵՎ ՔԱՂԱՔԱՅԻՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆԵՐՈՒՄ

Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ռեսպուբլիկայում ավարտվեցին շրջանային ու քաղաքային պարտիական
կոնֆերենցիաները: Կոնֆերենցիաները հանրագումարի բերեցին հաշվետու
ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունների կատարած աշ-
խատանքի արդյունքները, բացահայտեցին նրանց գործունեության մեջ եղած
թերությունները և միջոցառումներ նշեցին դրանք վերացնելու և պարտիայի ա-
ռաջադրած բոլոր խնդիրների անթերի կատարումն ապահովելու համար:

Կոնֆերենցիաները նշեցին, որ կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի
որոշումները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները նշանա-
կալից հաջողությունների են հասել պարտիական քաղաքական ու կազմակեր-
պական աշխատանքի ծավալման, արդյունաբերության, գյուղատնտեսության
և կուլտուրական շինարարության զարգացման բնագավառներում:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները վեցերորդ հնգամյա-
կի առաջին տարվա համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարեցին
103,7 տոկոսով: Արտադրության աճը նախորդ, 1955 թվականի նկատմամբ
կազմեց 9,6 տոկոս, ընդ որում ծանր արդյունաբերության աճը՝ 14,1 տոկոս:
1956 թվականի ընթացքում բաց է թողնված 220 միլիոն ռուբլու արտապլանա-
յին արտադրանք: Մեծ չափով աճել է բանվորների, ինժեներա-տեխնիկական
աշխատողների ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը, որի
շնորհիվ աշխատանքի արտադրողականության պլանը կատարված է 103,3
տոկոսով: Կատարված է նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը:

Անցած տարի ռեսպուբլիկայի ձեռնարկություններում տեղադրվել են
բարձր արտադրողականության շատ սարքավորումներ, կատարելագործվել են
արտադրության տեխնոլոգիական պրոցեսները և մեծացել է արտադրանքի
թողարկումը: Խոշոր աշխատանք է կատարվել կապիտալ շինարարության
գծով: Ռեսպուբլիկայում միայն բնակարանային շինարարության մեջ ներդր-
վել է 156 միլիոն ռուբլի, կամ 32 տոկոսով ավելի գումար, քան 1955 թվա-
կանին:

Որոշ հաջողությունների են հասել նաև գյուղատնտեսության աշխատող-
ները: 1956 թվականին, 1955 թվականի նկատմամբ, ռեսպուբլիկայում ավե-
լացավ շաքարի ճակնդեղի, կաթի, բրդի, ձվի արտադրությունը, ժամկետից
առաջ կատարվեցին գյուղատնտեսական մթերքների մթերումների և գնման



պլանները: Հատկապես լավ հաջողությունների հասան խաղողագործները,
որոնք խաղողի արտադրությունն ավելացրին 60 տոկոսով:

Զգալի հաջողություններ են ձեռք բերված նաև ժողովրդական կրթության,
առողջապահության, բժշկական, կոմունալ-կենցաղային սպասարկման, առև-
տրի և հասարակական սննդի օբյեկտների ցանցն ընդարձակելու և կուլտուրա-
կան շինարարության ուղղությամբ:

Այս հաջողությունները հետևանք են այն բանի, որ պարտիական կոմիտե-
տները ՍՄԿՊ XX համագումարից հետո բարելավել են տնտեսության ու
կուլտուրական շինարարության պարտիական ղեկավարության մակարդակը,
բարձրացրել են սկզբնական պարտիական կազմակերպությունների դերն ու
պատասխանատվությունը՝ կոլեկտիվների առջև դրված խնդիրների կատարումն
ապահովելու գործում:

Քաղաքային և շրջանային պարտիական կոնֆերենցիաները ցույց տվին,
որ այնտեղ, որտեղ պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեներն իրենց
աշխատանքների ընթացքում հենվել են սկզբնական պարտիական կազմակեր-
պությունների վրա և նրանց աշխատանքի մակարդակի բարձրացման միջո-
ցով հասել են կոմունիստների ակտիվության ու ստեղծագործական նախաձեռ-
նության բարձրացման, այնտեղ էլ ձեռք են բերվել նկատելի հաջողություն-
ներ և ընդհակառակն:

Պարտիայի Երևանի Ստալինյան շրջկոմը հաշվետու ժամանակաշրջանում
նկատելիորեն կատարելագործել է սկզբնական պարտիական կազմակերպու-
թյուններին ցույց տրվող ղեկավարության ձևերն ու մեթոդները, ուժեղացրել է
իր կապը նրանց հետ: Շրջանային կոմիտեն համարձակ կերպով փնտրում և
գտնում է աշխատանքի նոր ձևեր: Հաշվետու ժամանակաշրջանում շրջկոմը
վերակառուցել է ապարատի աշխատանքը: Սկզբնական պարտիական կազ-
մակերպություններին ղեկավարությունն ու օգնությունն ուժեղացնելու և այն
ավելի կոնկրետ դարձնելու նպատակով շրջկոմի յուրաքանչյուր պատասխա-
նատու աշխատող ամրացվել է մի խումբ կազմակերպությունների, որտեղ նա
զբաղվում է պարտիական աշխատանքի բոլոր բնագավառներով:

Երևանի քաղաքային պարտիական կազմակերպության Ստալինյան,
Միկոյանի, Մոլոտովյան շրջանների, ինչպես նաև Լենինականի և Կիրովակա-
նի քաղաքային կոնֆերենցիաներում զեկուցողները և ելույթ ունեցողները
նշեցին, որ պարտիայի XX համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում
պարտիական կոմիտեները ավելի կոնկրետ են զբաղվել արդյունաբերական,
տրանսպորտային և շինարարական կազմակերպությունների աշխատանքի բա-
րելավման, նրանց տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացման,
տեխնիկական պրոգրեսի ապահովման հարցերով:

Սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրվող ղեկա-
վարությունն ու օգնությունը բարելավելու, նրանց մարտունակությունը, նա-
խաձեռնությունը և դերը բարձրացնելու շնորհիվ Երևանի, Լենինականի ու Կի-
րովականի արդյունաբերական, տրանսպորտային և շինարարական կազմա-
կերպությունների կոլեկտիվների ճնշող մեծամասնությունը արտադրական,
տնտեսական բարձր ցուցանիշներով կատարեցին 1956 թվականի պլանները:

Քաղաքային և շրջանային կոնֆերենցիաներում բազմաթիվ օրինակներ
բերվեցին, թե ինչպես շրջանային և քաղաքային կոմիտեների ղեկավարության

և օգնության բարելավման շնորհիվ սկզբնական պարտկազմակերպություննե-
րի ճնշող մեծամասնությունում բարձրացել է պարտիական աշխատանքի մա-
կարդակը: Շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ սկսել են
լրջորեն զբաղվել արտադրության, տեխնիկական պրոգրեսի, եղած հնարավո-
րությունների օգտագործման և արտադրանքի ավելացման հարցերով:

Քաղաքային և շրջանային պարտիական կոնֆերենցիաները բացահայտե-
ցին նաև ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների աշխատանք-
ներում գոյություն ունեցող լուրջ թերությունները:

Կոնֆերենցիաներում տրված հաշվետու զեկուցումներում և պատգամավոր-
ների ելույթներում շատ փաստեր բերվեցին այն մասին, թե արտադրական
ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովետական տնտեսություն-
ներում որքան անսպառ ռեզերվներ կան, որոնց լրիվ օգտագործման ուղղու-
թյամբ պարտիական կազմակերպությունները դեռևս հետևողական աշխատանք
չեն ծավալում: Կոնֆերենցիաներում նշվեցին, որ մի շարք քաղկոմ-շրջկոմների
և շատ սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքի ներ-
կայիս մակարդակը դեռևս ցածր է և այն չի ապահովում ՍՄԿՊ XX համագու-
մարի որոշումների լրիվ կատարումը:

Կոնֆերենցիաներում բացահայտված լուրջ թերություններից մեկն այն է,
որ քաղկոմ-շրջկոմների և սկզբնական պարտիական կազմակերպությունների
մի զգալի մասը հանգստանալով համախառն արտադրանքի պլանների կատա-
րումով՝ պատշաճ ուշադրություն չի դարձնում արտադրական, տնտեսական և
որակական մյուս ցուցանիշների կատարումը նույնպես ապահովելու վրա:
Յուրաքանչյուր քաղաքում և շրջանում առաջավոր ձեռնարկությունների և կոլ-
տնտեսությունների կողքին դեռևս կան պլանները թերակատարող շատ ձեռ-
նարկություններ և կոլտնտեսություններ, որոնք տևականորեն ետ են մնում,
նույնիսկ առաջավոր համարվող ձեռնարկություններում և կոլտնտեսություննե-
րում էլ արտադրական մի շարք որակական ցուցանիշներ չեն կատարվում և
այդ բանը երբեմն աննկատելի է մնում: Հենց Ստալինյան շրջանի 78 արտա-
դրական ձեռնարկություններից 10-ը չեն կատարել համախառն արտադրանքի
պլանը, 22-ը՝ արտադրանքի ասորտիմենտային պլանը, 13-ը՝ արտադրանքի
ինքնարժեքի իջեցման պլանը, 14-ը՝ աշխատանքի արտադրողականության
բարձրացման պլանը:

Այս կարգի օրինակներ բերվեցին նաև Երևան քաղաքի Սպանդարյանի,
Միկոյանի շրջանների, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու և մի շարք այլ
գյուղական շրջանների պարտիական կոնֆերենցիաներում: Այս փաստերը
ցույց են տալիս, որ դեռ շատ քաղկոմ-շրջկոմներ և սկզբնական պարտկազմա-
կերպություններ ետ մնացող ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների
հարցով ինչպես հարկն է չեն զբաղվում:

Կիրովականի քաղաքային պարտիական կոնֆերենցիայում նշվեց, թե ինչ-
պես վերջին մեկ և կես տարում քաղկոմի բյուրոն 3 անգամ զբաղվել է Կոշիկի
ֆաբրիկայի հարցով, պլանների կատարումն ապահովելու, արտադրանքի որա-
կը բարելավելու մասին ընդունել է մեծածավալ որոշումներ, բայց դրությունը
ֆաբրիկայում չի փոխվել. գրեթե բոլոր ցուցանիշների գծով պլանները սիստե-
մատիկաբար թերակատարվում են: Ինչու՞ է այդպես: Այդպես է, որովհետև
քաղաքային կոմիտեն որոշումներ ընդունելուց հետո տեղում կազմակերպչա-



կան աշխատանք չի կատարել և սկզբնական պարտիական կազմակերպությա-
նը չի օգնել ձեռնարկությունն այդ վիճակից դուրս բերելու գործում:

Լենինականի քաղաքային պարտիական կոնֆերենցիայում օրինակ բեր-
վեց, թե ինչպես Մեխանիկական գործարանի սկզբնական պարտիական կազ-
մակերպությունը, տնտեսական և տեխնիկական ղեկավարները մակերեսորեն
են զբաղվում տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործման հարցերով,
հետևողական և մտածված աշխատանք չեն տանում տեխնիկայի նորություն-
ները արտադրության մեջ ներդնելու ուղղությամբ: Գործարանում ետ է մնում
ձուլման ցեխի աշխատանքը, ցածր է արտադրության կուլտուրան, դետալների
տերմիկական և մեխանիկական մշակման տեխնոլոգիան, անգործության է
մատնված գործարանի լաբորատորիան, չնայած որ այն կահավորված է ան-
հրաժեշտ գործիքներով ու սարքավորումներով: Կազմակերպության պարտ-
բյուրոն հաշտվում է արտադրության կազմակերպման պրիմիտիվ ձևերի հետ:

Նույն պարտիական կոնֆերենցիայում երկաթուղային հանգույցի պարտ-
բյուրոյի քարտուղար ընկ. Մ. Կարապետյանն ասաց, որ չնայած XX համագու-
մարի որոշումներին, մեզ մոտ դանդաղ է արմատավորվում նոր տեխնիկան:
ալաքային տնտեսությունը և դեպոների արհեստանոցները չեն հագեցվում նո-
րագույն տեխնիկայով: Այդ ուղղությամբ մեր պահանջները Անդրերկաթուղու
Երևանի բաժանմունքի ղեկավարները թողնում են անհետևանք:

Դրությունը նույնն է նաև Կիրովականի Կղմինդր-աղյուսի գործարանում,
Տեղարդկոմբինատում, Երևանի Ջեթ-օճառ կոմբինատի առանձին ցեխերում և
մի շարք այլ ձեռնարկություններում:

Պարտիական կոնֆերենցիաները լուրջ ուշադրություն նվիրեցին արտա-
դրանքի ինքնարժեքի իջեցման, արտադրանքի և շինարարության որակի բարձ-
րացման, խնայողության խստագույն ռեժիմի պահպանման հարցերին: Նշվեց,
որ դեռ ո՛չ բոլոր դեպքերում է, որ այդ հարցերը գտնվում են պարտիական
կոմիտեների և սկզբնական կազմակերպությունների ուշադրության կենտրո-
նում:

Կիրովական քաղաքի պարտիական կոնֆերենցիայում օրինակ բերվեց, թե
ինչպես Քաղկոմի, Քիմիական կոմբինատի պարտկոմի և սկզբնական պար-
տիական կազմակերպության անբավարար աշխատանքի հետևանքով կոմբի-
նատում դեռևս մեծ է արտադրանքի մեկ միավորի վրա հումքի, օժանդակ նյու-
թերի և էլեկտրաէներգիայի ծախսման գործակիցը: Այդ է պատճառը, որ կոմ-
բինատում 1956 թվականի ընթացքում տրվել է 362 տոննա կրի, 222 տոննա
էլեկտրոդային մասսայի, 8 տոննա ամյակի, 26,5 տոննա թիթեղի, 60 տոննա
երկաթի գերածախս: Հատկապես մեծ չափերի է հասնում էլեկտրաէներգիայի
գերածախսը. տարվա ընթացքում այն կազմել է 14 միլիոն կիլովատ-ժամ:

Ստալինյան շրջանի պարտկոնֆերենցիայում նշվեց, որ Երևանի Կաբելի
գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության անբավարար աշ-
խատանքի ու թողտվության հետևանքով գործարանում մեծ չափերի է հաս-
նում նյութերի գերածախսը: Միայն ձգման ցեխում տեղի է ունեցել 50 տոննա
պղնձի, 8 տոննա ալյումինի գերածախս: Նյութերի գերածախսի պատճառով
անցած տարվա 11 ամսում արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը կա-
տարված է 70,2 տոկոսով, իսկ 10 ամսում գործարանի կրած վնասը կազմել է
848 հազար ռուբլի: Այստեղ մեծ չափերի են հասնում նաև ո՛չ արտադրական

ծախսերը։ Միայն խոտան արտադրանք տալու պատճառով գործարանը կրել է մոտ 600 հազար ռուբլու վնաս։ Գործարանում անբավարար է դրված նյութական արժեքների հաշվառման և հաշվետվության գործը։

Երևանի և մյուս քաղաքների կոնֆերենցիաներում քննադատական լուրջ դիտողություններ արվեցին ռեսպուբլիկայի պլանավորող և մատակարարող օրգանների հասցեին, պահանջելով, որպեսզի ինչպես արդյունաբերության ու գյուղատնտեսության, այնպես էլ շինարարության բնագավառում անշեղորեն կենսագործվի ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի ծրագրային որոշումը։

Շրջանային և քաղաքային կոնֆերենցիաներում բազմաթիվ փաստեր բերվեցին նաև այն մասին, որ պարտիական կոմիտեները և մի շարք սկզբնական կազմակերպություններ բավարար պայքար չեն կազմակերպում մեկ քառակուսի մետր արտադրական տարածությունից արտադրանքի թողարկումն ավելացնելու, մեքենաները և սարքավորումները լրիվ կարողությամբ օգտագործելու, աշխատանքի կազմակերպումը բարելավելու, կադրերի ուսուցման գործը կազմակերպելու և նրանց որակավորումը բարձրացնելու, ինչպես նաև կոլեկտիվներում գործարար սոցիալիստական մրցություն ծավալելու ուղղությամբ։

Գյուղական շրջանների պարտիական կազմակերպությունների կոնֆերենցիաները նշելով գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ պարտիական կազմակերպությունների կատարած որոշ դրական աշխատանքը, միաժամանակ լուրջ և աղաղակող թերություններ բացահայտեցին գյուղատնտեսության հետագա զարգացման գործում։

Ինչպես հայտնի է, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման հնարավորությունները դեռևս թույլ են օգտագործվում և գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերը շատ շրջանների կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում զգալի կերպով ետ են մնում պարտիայի և կառավարության առաջադրանքներից։

Ինչպես ցույց տվին շրջանային պարտիական կոնֆերենցիաները, այսպիսի վիճակը արդյունք է ո՛չ միայն անցյալ տարվա կլիմայական անբարենպաստ պայմանների, այլև գյուղատնտեսության պարտիական ղեկավարման ցածր մակարդակի, այն բանի, որ գյուղական մի շարք շրջանային կոմիտեներ, զգալի թվով սկզբնական պարտիական կազմակերպություններ պահանջված չափով չեն խորանում կոլտնտեսային էկոնոմիկայի հարցերի մեջ, միջոցներ ձեռք չեն առնում կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում եղած ներքին հարուստ ռեզերվները գործի դնելու և գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքների կատարումն ապահովելու համար։ Գյուղական որոշ ղեկավար ընկերներ տարվելով ընթացիկ հարցերի լուծումով, հեռուն չեն տեսնում, պայքար չեն կազմակերպում գիտության ու առաջավոր փորձի նվաճումները արմատավորելու, աշխատանքի կազմակերպումը բարելավելու և կարգապահությունը բարձրացնելու համար։ Աղինի, Աշտարակի, Կոտայքի, Թալինի, Սիսիանի, Արթիկի շրջանային պարտիական կոնֆերենցիաներում բազմաթիվ օրինակներ բերվեցին այն մասին, թե ինչպես կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, մեքենատրակտորային կայանների շատ ղեկավարներ չեն ապահովում ագրոկոմպլեքսի կիրառումը։

Աղինը ռեսպուբլիկայի հացահատիկային խոշոր շրջաններից մեկն է,



բայց հացահատիկի արտադրության գործում խիստ ետ է մնում։ Անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից նախատեսված 10,3 ցենտների փոխարեն շրջանում ստացվել է ընդամենը 6 ցենտներ բերք։ Այստեղ չի կատարված նաև անասնապահական մթերքների արտադրության պլանը։ Կոնֆերենցիայում ունեցած իր ելույթում Զորաշեն գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Փ. Հովսեփյանն ասաց, որ իրենց մոտ բերքատվությունը ցածր է նրա համար, որ ո՛չ վարը, ո՛չ ցանքը և ո՛չ էլ բերքահավաքը ժամանակին չեն կատարվում։ Մեքենա-տրակտորային կայանը սիստեմատիկաբար խախտում է տիպային պայմանագիրը, իսկ շրջկոմի և շրջգործկոմի ղեկավարները հանդուրժում են նման դրությունը։

Կոնֆերենցիայում նշվեց, որ պարտիայի շրջկոմը գործիմացությամբ չի ղեկավարել գյուղատնտեսությունը, չի զբաղվել ետ մնացող կոլտնտեսության գործերով, չի բարձրացրել կոլտնտեսությունների ղեկավարների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Շրջկոմի և առանձին պարտիական կազմակերպությունների ղեկավարներ աշխատանքում հանդես են բերել տնավարություն, թերությունների նկատմամբ հանդուրժողականություն և թողտվություն։

Ջիթհանքով գյուղի կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպության պատգամավոր Ա. Մկրտչյանը իր ելույթում նշեց, որ շրջանային կոմիտեի քարտուղարները, բաժնի վարիչները գյուղ գալով չեն շփվում կոլտնտեսականների հետ, բավարարվում են պարտիական կազմակերպության քարտուղարի և կոլտնտեսության վարչության նախագահի հետ խոսելով, քիչ են հետաքրքրվում պարտիական կազմակերպության կյանքով, քաղաքական զեկուցումներով հանդես չեն գալիս գյուղի աշխատավորության առջև։

Նույն կարգի թերություններ նշվեցին նաև Մարտունու շրջանի պարտիական կոնֆերենցիայում։ Այստեղ ինչպես շրջկոմը, այնպես էլ շատ կոլտնտեսությունների վարչություններ և սկզբնական պարտկազմակերպություններ կոնկրետ պայքար չեն ծավալում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Այդ է պատճառը, որ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, գյուղատնտեսական մի քանի կուլտուրաների ցանքատարածությունը և բերքատվությունը կրճատվել է։

Շրջանային կոնֆերենցիաներում առանձին սրությամբ արծարծվեց անասնաբուծության զարգացման հարցը։

Ինչպես հայտնի է, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վճռական ճյուղերից մեկը անասնապահությունն է։ Այդ բարձր եկամտաբեր ճյուղի համար մեր ռեսպուբլիկայում կան շատ հնարավորություններ, որոնց ճիշտ և ռացիոնալ օգտագործման դեպքում նա կդառնա գյուղատնտեսության առաջավոր ճյուղերից մեկը։

Չնայած առանձին շրջաններում (Շահումյան, Էջմիածին, Հոկտեմբերյան, Ղուկասյան, Սևան, Գորիս) նշանակալից հաջողություններ են ձեռք բերված անասնաբուծության զարգացման գործում, բայց և այնպես ռեսպուբլիկայում դեռ չի ապահովվում հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց անասնապահական մթերքների արտադրության այն մակարդակը, որ սահմանված է պարտիայի ու կառավարության որոշումներով։ Դրա պատճառն այն է, որ դեռ էֆեկտիվ միջոցներ ձեռք չեն առնված կովերի

տեսակարար կշիռը նախրում բարձրացնելու, հոտի վերարտադրությունը
լավ կազմակերպելու, կերի կայուն բազա ստեղծելու, անասունների խնամքն
ու կերակրումը բարելավելու համար: Բայազետի շրջանի պարտիական կոն-
ֆերենցիայում վերը նշված պատճառներով բացատրվեց այն հանգամանքը,
որ կոլտնտեսությունների մեծ մասը թերակատարել է անասունների գլխա-
քանակի աճման պլանը: Շրջանում ընդհանուր հոտի մեջ կովերի տեսակա-
բար կշիռը կազմում է 26 տոկոս: Բատիկյան, Սարուխան գյուղերի կոլտըն-
տեսություններում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 1955 թվականի
համեմատությամբ նվազել է 313—347 կիլոգրամով: Նույնպիսի փաստեր
բերվեցին Կրասնոսելսկի, Ապարանի, Կոտայքի, Արթիկի և մի շարք այլ
շրջանների պարտիական կոնֆերենցիաներում:

Շրջանային պարտիական կոնֆերենցիաներում լուրջ թերություններ բա-
ցահայտվեցին նաև մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի ուղ-
ղությամբ:

Շամշադինի շրջանային պարտիական կազմակերպության կոնֆերեն-
ցիայում ունեցած իր ելույթում Մովսես գյուղի կոլտնտեսության վարչության
նախագահ ընկ. Ս. Պապյանն ասաց, որ շրջանի ՄՏ կայանը չի դարձել
գյուղատնտեսական աշխատանքների ղեկավարման կենտրոն: Ընկնելով փա-
փուկ վարի պլանը մի կերպ կատարելու հետևից՝ նա սիստեմատիկաբար
թերակատարում է ցրտահերկի, ցանքի, փոցխման, կոմբայնային հնձի, կերի
սիլոսացման պլանները: Առանձնապես անբավարար է եգիպտացորենի,
կարտոֆիլի և խաղողի մշակության, անասնապահության աշխատատար
պրոցեսների մեքենայացման վիճակը: ՄՏ կայանի ղեկավարները իրենց
պատասխանատու չեն զգում կոլտնտեսությունների աշխատանքը ղեկավա-
րելու և պլանների կատարումն ապահովելու գործում:

Տարբեր շրջանային կոնֆերենցիաներում բազմաթիվ պատգամավորներ
ճիշտ նույնպիսի գնահատական տվին մի շարք մեքենա-տրակտորային կա-
յանների աշխատանքներին, որից պետք է լուրջ եզրակացություններ անեն
ինչպես ՄՏ կայանների ղեկավարները, շրջանային կոմիտեները, այնպես էլ
Գյուղատնտեսության մինիստրությունը և նրա ՄՏ կայանների վարչությունը:

Կոնֆերենցիաներում բացահայտվեցին նաև ՄՏ կայանների գծով շրջ-
կոմների քարտուղարների և հրահանգչական խմբերի աշխատանքներում գո-
յություն ունեցող լուրջ թերությունները: Ներքին Դվինի կոլտնտեսության
վարչության նախագահ ընկ. Զ. Նազարյանը Արտաշատի շրջանային պար-
տիական կոնֆերենցիայում ասաց, որ ՄՏ կայանի հրահանգչական խումբը
կտրված է կոլտնտեսություններից և մակերեսորեն է զբաղվում նրանց հար-
ցերով, հրահանգիչներից շատերը նույնիսկ չգիտեն, թե ո՛ր կոլտնտեսու-
թյունը ի՛նչ կուլտուրա է մշակում: Աշտարակի շրջանի պարտկոնֆերենցիա-
յում նշվեց, որ հրահանգչական խմբերը ինչպես հարկն է չեն խորանում
կոլտնտեսությունների էկոնոմիկայի մեջ, իրենց լրիվ պատասխանատու չեն
զգում գյուղատնտեսության կուլտուրաների բերքատվության, անասունների
մթերատվության առաջադրանքների կատարման համար:

Շրջանային և քաղաքային պարտիական կոնֆերենցիաներում հատկա-
պես ընդգծվեց առաջավոր փորձի ուսումնասիրման, ընդհանրացման և ար-
տադրության մեջ ներդրման անբավարար վիճակը: Պարտիայի գյուղական



շրջկոմները և շատ սկզբնական կազմակերպություններ այդ հարցով բավա-
րար չափով չեն զբաղվել, մոռանալով, որ դա գյուղատնտեսության շեշտա-
կի վերելք ստեղծելու կարևոր լծակներից մեկն է: Այդ կապակցությամբ
Առափի գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Գ. Բաղդա-
սարյանը Ախուրյանի շրջանային կոնֆերենցիայում ասաց, որ ՄՏ կայանը
և սկզբնական պարտիական կազմակերպություններն անբավարար են
ուսումնասիրում և տարածում առաջավոր ճակնդեղագործների փորձը: Մեր
կոլտնտեսությունում այս տարի նախատեսված 230 ցենտների դիմաց հեկ-
տարից ստացվեց 345 ցենտներ ճակնդեղի միջին բերք, իսկ Ա. Մանուկյանի
ղեկավարած օղակը 5,5 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից
ստացել է 419 ցենտներ: Այդպիսի առաջավորներ կան նաև Ղարիբջանյան,
Գետափ, Ազատան և ուրիշ գյուղերի կոլտնտեսություններում: Վատն
այն է, որ այդ փորձը չի դառնում բոլոր ճակնդեղագործների սեփականու-
թյունը և բոլորովին էլ պատահական չէ, որ առանձին կոլտնտեսություննե-
րում ճակնդեղի բերքատվությունը խիստ ցածր է:

Ռեսպուբլիկայում տեղի ունեցած շրջանային և քաղաքային պարտիա-
կան կոնֆերենցիաները լրջորեն քննարկեցին պարտիական-կազմակերպա-
կան, պարտիական-քաղաքական աշխատանքների կազմակերպման հարցե-
րը: Ինչպես նշվեց կոնֆերենցիաներում, ՍՄԿՊ XX համագումարից հետո
ընկած ժամանակաշրջանում այդ աշխատանքները բավականին աշխուժացել
են, բայց և այնպես դեռ ետ են մնում համագումարի առաջադրած պահանջ-
ներից: Այդ գործում ամենագլխավոր թերություններից մեկն այն է, որ մենք
դեռ չենք կարողացել սկզբնական պարտիական կազմակերպություններին
ցույց տրվող ղեկավարությունը և օգնությունը ավելի կոնկրետ և գործնա-
կան դարձնել:

Առանձին կոլտնտեսությունների, արտադրական ձեռնարկությունների
աշխատանքի ցուցանիշները պարզ ցույց են տալիս, որ այնտեղ, որտեղ
պարտիական շրջանային կամ քաղաքային կոմիտեն կարողացել է բարձրաց-
նել սկզբնական կազմակերպության պատասխանատվությունը, կոմունիստ-
ների ակտիվությունը, այնտեղ աշխատանքի ցուցանիշները բարձր են, և
ընդհակառակն:

Կոնֆերենցիաներում բազմաթիվ օրինակներ բերվեցին, թե ինչպես շատ
հաճախ պարտիական կազմակերպությունների ուշադրությունից վրիպում են
արտադրության մեջ կոմունիստների ուժերը ճիշտ տեղաբաշխելու, նրանց
ավանգարդային դերը ապահովելու հարցերը:

Մարտունու շրջանային պարտիական կոնֆերենցիայում նշվեց, որ կո-
մունիստների ուժերը արտադրության վճռական տեղամասերում չեն բաշխը-
ված, չի ապահովված նրանց ավանգարդային դերը արտադրության մեջ:
Աստղաձոր գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության 30 անդամից
ոչ մեկը շարքային աշխատանք չի կատարում, իսկ Զոլաքարում 57 կոմու-
նիստից միայն 7-ն են աշխատում արտադրության մեջ, որոնցից ոչ մեկը չի
կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը:

ՍՄԿՊ XX համագումարը պարտիական կազմակերպություններից պա-
հանջեց ուժեղացնել գաղափարական-քաղաքական աշխատանքը, համարձակ
և վճռական հակահարված տալ մարքսիստական-լենինյան ուսմունքին խորթ

տեսակետներին և խեղաթյուրումներին, աշխատավորության շրջանում կատարվող գաղափարական-քաղաքական աշխատանքը սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների հետ, այն իսպառ դնել նոր հնգամյա պլանի հաջող կատարմանը:

Քաղաքային և շրջանային կազմակերպությունները հաշվետու շրջանում լուրջ աշխատանք են ձեռնարկել կոմունիստների, մեր բոլոր կադրերի մարքսիստական-լենինյան պատրաստականությունն է՛լ ավելի բարձրացնելու, նրանց տնտեսագիտական գիտելիքներով զինելու, պարտիական-քաղաքական լուսավորության ցանցի աշխատանքները բարելավելու ուղղությամբ: Պարտիական կոնֆերենցիաներում նաև լուրջ թերություններ բացահայտվեցին: Մի շարք շրջկոմներ տարվելով արտադրական, տնտեսական հարցերի լուծումով՝ քիչ ուշադրություն են դարձնում գաղափարական-քաղաքական աշխատանքներին, անբավարար են զբաղվում կոմունիստներին մարքսիստական-լենինյան թեորիայով զինելու հարցերով: Այս գործում երբեմն թույլ է տրվում դեկլարատիվություն և ֆորմալիզմ:

Կոնֆերենցիաներում հատկապես նշվեցին մասսաների մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքում գոյություն ունեցող լուրջ թերությունները, իսկ առանձին շրջանների պարտիական կոնֆերենցիաներում այդ հարցերի վրա ինչպես կոմիտեների հաշվետվություններում, այնպես էլ պատգամավորների ելույթներում քիչ տեղ հատկացվեց: Դա բացատրվում է նրանով, որ առանձին շրջկոմներ և սկզբնական կազմակերպություններ դեռևս անբավարար են զբաղվում աշխատավորության շրջանում կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպումով, այն սերտորեն չեն զուգակցում արտադրական պլանների կատարման, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ:

Կոնֆերենցիաներում կոնկրետ օրինակներով ցույց տրվեց, որ առանձին կազմակերպություններում քաղաքական-բացատրական աշխատանքը սահմանափակվում է թերթերի կցկտուր ընթերցանությամբ, որ այդ ուղղությամբ քաղկոմ-շրջկոմներն անբավարար են օգտագործում ինտելիգենցիայի ուժերը, քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպման տարբեր ձևերն ու մեթոդները: Ղեկավար աշխատանք կատարող ընկերները զեկուցումներով և զրույցներով դեռ քիչ են հանդես գալիս աշխատավորության առաջ, քաղկոմ-շրջկոմները դեռ անհրաժեշտ միջոցներ ձեռք չեն առնում ազգաբնակչության մեջ տարվող քաղաքական-բացատրական աշխատանքների վերաբերյալ ՀԿՊ Կենտկոմի 3-րդ պլենումի որոշումների կենսագործումն ապահովելու ուղղությամբ:

Կոնֆերենցիաներում նշվեցին, որ քաղաքական-մասսայական աշխատանքն անբավարար է կազմակերպվում հատկապես երիտասարդության շրջանում, որ այդ գործում առանձին քաղկոմ-շրջկոմներ պահանջված օգնություն ցույց չեն տալիս կոմերիտական կազմակերպություններին, պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատանք կատարող ընկերները զրույցներով ու զեկուցումներով դեպքից-դեպք են հանդես գալիս երիտասարդության առաջ: Երիտասարդության շրջանում կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքների թուլության հետևանքով դեռ կան



երիտասարդներ, որոնք հանրօգուտ աշխատանքով չեն զբաղվում, թույլ են տալիս հակահասարակական արարքներ:

Քաղաքային և շրջանային կոնֆերենցիաները լուրջ ուշադրություն դարձրին ներպարտիական դեմոկրատիայի է՛լ ավելի ծավալման, սկզբնական պարտիական և ցեխային կազմակերպությունների ժողովների, պարտիական խմբերի նիստերի սիստեմատիկ հրավիրման, նրանց լավ նախապատրաստման և անցկացման, ընդունված որոշումների կատարման, պարտիայի շարքերի աճման, կադրերի ընտրության, դաստիարակման գործը բարելավելու, քննադատությունն ու ինքնաքննադատությունը ծավալելու հարցերին:

Կոնֆերենցիաները պահանջեցին համարձակ ու վճռական կերպով հարվածել այն մարդկանց, որոնք հանդես են գալիս դեմագոգիկ հայտարարություններով, քննադատության ազատության անվան տակ ցանկանում են թուլացնել կարգապահությունն ու պարտիական շարքերի միասնությունը, պարտիական կազմակերպությունների ուշադրությունը շեղել կոլեկտիվների առջև դրված կոնկրետ խնդիրների կատարումն ապահովելու հարցերից: Միաժամանակ պահանջվեց պատժել այն ընկերներին, որոնք փորձ կանեն խլացնել քննադատական այն դիտողությունները, որոնք ուղղված կլինեն մեր աշխատանքներում նկատվող թերությունների վերացման և առաջադրած խնդիրների կատարումն ապահովելու նպատակներին:

Շրջանային և քաղաքային կոնֆերենցիաները լուրջ թերություններ բացահայտեցին աշխատավորության կոմունալ-կենցաղային սպասարկման, հատկապես բնակարանային շինարարության, ժողովրդական կրթության, առողջապահության, սովետական կուլտուրական առևտրի ծավալման բնագավառներում, որոնց շուտափույթ վերացման համար կոնկրետ միջոցառումներ նշվեցին:

Շրջանային և քաղաքային կոնֆերենցիաներում պարտիական կոմիտեների հաշվետու զեկուցումների և պատգամավորների ելույթների մեջ լուրջ քննադատական դիտողություններ արվեցին ռեսպուբլիկայի պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար օրգանների հասցեին, առաջ քաշվեցին շատ արժեքավոր և ուշադրության արժանի բազմաթիվ հարցեր, որոնց հետագա լուծումը խոշոր չափով կնպաստի մեր ընդհանուր առաջընթացին:

Պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեների խնդիրն է՝ կոնկրետ միջոցառումներ ձեռնարկել կոնֆերենցիաների ընդունած որոշումներն անթերի կատարելու համար:

Քաղաքային և շրջանային պարտիական կոնֆերենցիաները կրկին ու կրկին ցույց տվին մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների շարքերի անխորտակելի միասնությունը, նրա սերտ համախմբվածությունը ՍՄԿՊ Կենտկոմի շուրջը և նրա պատրաստակամությունը՝ ամեն ինչ անելու Պարտիայի XX համագումարի և Դեկտեմբերյան պլենումի որոշումների կատարումն ապահովելու համար:

---

# ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

*Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ*

*Անցյալ տարվա սկզբներին Արտաշատի շրջանի Նորաշեն գյուղի Աթարբեկյանի անվան կոլտնտեսության պարտիական կազմակերպության ժողովում, երբ քննվում էր ՍՄԿՊ XX համագումարի արդյունքները, կոմունիստները իրենց խոհերն ու մտահղացումներն էին արտահայտում վեցերորդ հնգամյակի առաջադրանքները կենսագործելու ուղղությամբ։ Ելնելով արտելի ռեալ հնարավորություններից, մի շարք ընկերներ անհրաժեշտ էին գտնում վերանայել կոլտնտեսության հնգամյա պլանը և 1960 թվականին խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստանալ ոչ թե 80 ցենտներ բերք, ինչպես այդ առաջ էր նախատեսվել, այլ 100 ցենտներ, իսկ բամբակենու պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից 26-ի փոխարեն նախատեսել՝ 30 ցենտներ բամբակի հումք։ Առաջարկություններ եղան նաև անասնաբուծության հետագա վերելքն ապահովելու, հատկապես կովերի գլխաքանակն ավելացնելու, անասունների ցեղը բարելավելու և մթերատվությունը բարձրացնելու մասին։*

*Ուշագրավն այն է, որ կոմունիստները ոչ միայն հանդես են գալիս կոլտնտեսության արտադրությունը բարձրացնելու մասին առաջարկություններով, այլև գործնական աշխատանքով պայքարում են արտելը կազմակերպորեն ու տնտեսապես ամրապնդելու համար։ Նրանք գրասենյակում գործելու և զանազան պաշտոններ վարելու ձգտում չունեն, և ներկայումս մեծ եռանդով ու սիրով աշխատում են արտադրության մեջ և ակտիվորեն մասնակցում նյութական բարիքներ ստեղծելու վեհ գործին։ Բավական է նշել, որ գյուղի 34 կոմունիստից 29-ը բրիգադավարներ, օղակավարներ ու շարքային աշխատողներ են, որոնք վար ու ցանք են անում, այգիներ ու բամբակենու պլանտացիաներ են մշակում, անասուններ խնամում և համառորեն մարտնչում են գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու մասին պարտիայի ու կառավարության որոշումները կատարելու համար։*

*Պարտիական բյուրոն (քարտուղար՝ Վ. Զոբանյան) մասսաների հետ տարվող քաղաքական աշխատանքն ի սպաս է դնում կոլտնտեսության առջև կանգնած խնդիրների հաջող լուծմանը։ Նրա ամբողջ աշխատանքը հետապնդում է, որ կոմունիստներն արտադրության մեջ ապահովեն իրենց ավանգարդային դերը։ Դրա շնորհիվ էլ պարտիայի անդամ-թեկնածուները աշխատանքային բարձր կարգապահության, իրենց վերցրած սոցիալիստական պարտավորությունները ճշտորեն կատարելու լավագույն օրինակ են տալիս։ Երբ խոսք է*



*լինում առաջավոր այգեգործների մասին, օրինակ է բերվում կոմունիստ Ե. Զոբանյանի ղեկավարած բրիգադան, որը խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից 90 ցենտների փոխարեն տվել է 140 ցենտներ բերք։ Բամբակագործության մեջ աչքի է ընկնում կոմունիստ Վ. Ազատյանի բրիգադան, որը յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 31 ցենտներ բամբակի հումք։ Իրենց հայրենասիրական գործերով կոլտնտեսականների մեջ հիացմունք են առաջացնում կոմունիստներ Վ. Գալստյանը, Պ. Կարապետյանը, Ն. Օհանյանը և ուրիշները, որոնք օրվա առաջադրանքները կատարում են 130—150 տոկոսով և այգիները բացելու, էտելու, փորելու, ջրելու, վնասատուների դեմ պայքարելու նոր մեթոդներ են կիրառում։*

*Կոմունիստների նվիրական, ազնիվ աշխատանքի շնորհիվ կոլտնտեսականների մոտ մեծ հեղինակություն է վայելում պարտիական կազմակերպությունը, որը արտելի տնտեսության բոլոր ճյուղերի ռիթմիկ առաջընթացն ապահովելու համար սիստեմատիկ, նպատակասլաց քաղաքական-դաստիարակչական աշխատանք է տանում մասսաների հետ, գլխավորում նրանց արտադրական ակտիվությունը և պայքարի հանում կոլտնտեսության առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։*

*Պարտիական կազմակերպությանը կից գործում է ագիտկոլեկտիվ, որի շուրջն են համախմբված 26 կոմունիստներ, կոմերիտականներ և անպարտիական ինտելիգենցիայի ակտիվ մասը։ Գյուղատնտեսական աշխատանքների եռուն ժամանակ քաղաքական-մասսայական աշխատանքը հիմնականում տարվում է բրիգադաներում և օղակներում, գլխավորապես դաշտում, իսկ ձմռան շրջանում՝ պարտիական բյուրոն ագիտատորներին վերադասավորում է ըստ թաղամասերի, բնակչության կոմունիստական դաստիարակության համար օգտագործելով քաղաքական-մասսայական աշխատանքի տարբեր ձևեր՝ դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ, կինոնկարների դիտումներ, տեղական ռադիոցանցի միջոցով հաղորդումներ և այլն։*

*Այստեղ թե՛ բանավոր, թե՛ ցուցադրական ագիտացիան տարվում է ելնելով մեր պարտիայի ու կառավարության որոշումներից, շաղկապելով արտելի առջև դրված խնդիրների, յուրաքանչյուր բրիգադայի և օղակի առօրյայի հետ։ 6-րդ հնգամյա պլանի հիմնական թվերը, ինչպես նաև կոլտնտեսության արտադրության զարգացման առաջադրանքները նկարված են դիագրամներով և փակցված գյուղի գլխավոր փողոցում, կոլտնտեսության ակումբում ու վարչության գրասենյակում։ Ագիտատորներն ունկնդիրներին ճշմարտացի խոսք են ասում, որը ներգործող ազդեցություն է թողնում բնակչության վրա։ Նրանք ոչ միայն խոսում են երկրի, կոլտնտեսության հաջողությունների մասին, այլև ցույց են տալիս մեր առաջընթացի դժվարությունները, բացահայտում կոլտնտեսությունում եղած թերությունները և նշում դրանց վերացման ուղիները։*

*Անմիջականորեն արտադրության մեջ աշխատող ագիտատորները ոչ միայն խոսքով, այլև գործով, իրենց անձնական օրինակով կոլտնտեսականներին ոգեշնչում են աշխատանքային սխրագործությունների։ Ահա այդպիսիներից մեկը՝ կոմունիստ Ա. Հովսեփյանը։ Նա նախկին ճակատային է։ Որպես շարքային կոլտնտեսական Ա. Հովսեփյանը բարեխղճորեն մասնակցում է դաշտային բոլոր աշխատանքներին և օրվա առաջադրանքները կատարում է 130—150 տոկոսով։ Նրա կինը՝ Անուշը, չնայած երեխաներ է խնամում, բայց*

նաև ակտիվ աշխատում է հանրային տնտեսության մեջ և ամեն տարի գերա-
կատարում է աշխօրերի մինիմումը: Ագիտատոր Ս. Հովսեփյանին սիրով են
ունկնդրում կոլտնտեսականները, որովհետև նրա զրույցները կենդանի են և
աշխույժ, կապված իրենց բրիգադայի առջև կանգնած խնդիրների հետ: Այգե-
փորի ժամանակ կոմերիտական Մ. Կարախանյանը օրվա առաջադրանքը կա-
տարում է 120—150 տոկոսով, իսկ նրա կողքին կոմերիտական Գ. Ղազարյանն
անբարեխղճություն է հանդես բերում աշխատանքում: Այդ չի վրիպում Հով-
սեփյանի ուշադրությունից: Զրույցներից մեկում, երբ նա խոսում է այգիների
բերքատվությունը բարձրացնելու միջոցառումների մասին, օրինակ է բերում
կոմերիտականներ Կարախանյանին ու Ղազարյանին, առաջինին՝ որպես անձ-
նվեր աշխատողի, երկրորդին՝ անբարեխղճի: Հովսեփյանի զրույցը դրական
ազդեցություն է թողնում Ղազարյանի և ուրիշների վրա. նա սկսում է եռանդով
աշխատել հանրային տնտեսությունում:

Այգեկուլթի ժամանակ կոլտնտեսուհի Ռոզա Եղիազարյանը սահմանված
400 կիլոգրամի փոխարեն օրական 1000—1200 կիլոգրամ խաղող է քաղում:
Նրանից ետ չեն մնում Արմիկ Թարվերդյանն ու Քնարիկ Մանուկյանը, որոնք
բամբակի չանաքի օրվա առաջադրանքները կատարում են կրկնակի չափով:
Այդ երևույթը չի վրիպում պարտիական բյուրոյի ուշադրությունից, անմիջա-
պես ռադիո հանգույցի, զրույցների ու պատի թերթերի միջոցով մասսայա-
կանացնում է նրանց փորձը, որը աշխատանքային ստեղծագործական եռան-
դի է կոչում մյուս կոլտնտեսականներին:

Այժմ ագիտատորները բաժանված են ըստ թաղամասերի: Նրանք բնակ-
չությանը պարզաբանում են պարտիայի և կառավարության ներքին ու ար-
տաքին քաղաքականությունը, տեղական Սովետների ընտրությունների Կա-
նոնադրությունը, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումը՝
ուղղված գյուղատնտեսության աշխատողներին, որով ավելի բարձր աստիճա-
նի են հասցվում կոլտնտեսականների արտադրական ու քաղաքական ակտի-
վությունը:

Պարտիական կազմակերպության ուժը իրականում այն է, որ նա կոլ-
տնտեսության առջև դրված խնդիրները լուծելու, տնտեսության ետ մնացող
ճյուղերը նեղ տեղից դուրս բերելու գործին ակտիվ մասնակից է դարձնում բո-
լոր աշխատողներին՝ հավատ ունենալով նրանց եռանդի և կարողության նը-
կատմամբ: Այստեղ երբ մի նոր, կարևոր միջոցառում է ձեռնարկվում, կամ
կոլտնտեսությունը դժվարության է հանդիպում, պարտիական կազմակեր-
պությունն անմիջապես դիմում է փորձված այգեգործների, բամբակագործնե-
րի ու անասնապահների օգնությանը, լսում նրանց առաջարկություններն ու
խորհուրդները: Այդ նպատակի համար լայնորեն կիրառվում է կոլտնտեսային
դեմոկրատիան: Հաճախակի գումարվում են արտելի անդամների ընդհանուր
ժողովներ, տեղի են ունենում բրիգադաների արտադրական խորհրդակցու-
թյուններ, ուր քննության են առնվում արտադրական պլանները, աշխատան-
քի կազմակերպման, բերքի բաշխման, կարգապահության ամրապնդման ու
կոլտնտեսության կյանքին վերաբերող այլ հարցեր: Գոյություն ունի նաև ավագ-
ների խորհուրդ, որի մեջ մտնում են փորձառու, տարիքավոր երկրագործները,
որոնք օգտավետ խորհուրդներ են տալիս ու գործնական առաջարկություններ
անում այգիների ու մյուս կուլտուրաների մշակման, վնասատուների դեմ պայ-





քարելու, բերքը պահպանելու կանոնների մասին: Այսպիսով, յուրաքանչյուր
կոլտնտեսականի հնարավորություն է տրվում ակտիվորեն մասնակցելու կոլ-
տնտեսությանը վերաբերող հարցերի լուծմանը:

Ժողովներից մեկում քննվում են այգիների և գյուղատնտեսական մյուս
կուլտուրաների մշակության, նրանց բերքատվության բարձրացման հարցերը:
Կոլտնտեսականներն առաջարկում են գոմաղբով պարարտացնել ոչ թե խաղո-
ղի այգիների միջթմբային տարածությունները, այլ հատկապես խաղողի վա-
զերի տակը: Անցյալ տարի պարարտացման այդ մեթոդը կիրառելն լավ
արդյունքներ է տվել: Առաջարկություն է լինում նաև, որ յուրաքանչյուր հեկ-
տար այգի փորելու համար սահմանել ոչ թե 100 աշխօր, ինչպես նախատեսել
է կոլտնտեսության վարչությունը, այլ՝ 60—70 աշխօր, նայած այգիների հո-
ղային հատկությանը:

Կոլտնտեսականների հանդես բերած նախաձեռնության շնորհիվ անցյալ
տարի հոգատար մշակվում են նախկինում բոլորովին անխնամ թողնված
20 հեկտար խաղողի այգիներ, որոնք հիանալի աճում են և արդեն դասվում
են բերքատու այգիների շարքը:

Այգեկուլթի նախօրյակին, երբ ավագների խորհրդում քննվում էր բերքա-
հավաքի հարցը, կոլտնտեսական Մ. Ավագյանը, ելնելով անցյալ տարիների
փորձից, բերքի կորուստը կանխելու համար առաջ է քաշում անհրաժեշտ քա-
նակությամբ զամբյուղներ և արկղեր նախապատրաստելու հարցը: Կոլտըն-
տեսության վարչությունը, նրա նախագահ Բ. Մնացականյանը մտահոգվում
են այդ հարցով և իր ժամանակին ձեռք են բերում պահանջվող քանակի զամ-
բյուղներ:

Պարտիական կազմակերպության քաղաքական-մասսայական աշխատան-
քը, կոլտնտեսականների արտադրական նախաձեռնության ծավալումը լավա-
գույն արդյունքներ են տվել: Անցյալ տարի յուրաքանչյուր հեկտար այգուց
ստացվել է ավելի քան 100 ցենտներ բերք, որի շնորհիվ կոլտնտեսությունը
խաղողի մթերման պետական առաջադրանքը կատարելուց հետո յուրաքան-
չյուր աշխօրին բաշխել է 5 կիլոգրամ խաղող: Այժմ հանրային պահեստնե-
րում և կոլտնտեսականների մառաններում կա մոտ 600 հազար լիտր գինի:
Աշխատող ձեռքերը գործից չկտրելու նպատակով պարտիական կազմակեր-
պությունը կոլտնտեսության վարչության առջև հարց է բարձրացրել, որ կոլ-
տնտեսականների աշխօրերին հասանելիք գինին վաճառվի կազմակերպված
կարգով, որպեսզի այն սպեկուլյանտների ձեռքը չընկնի:

Աթարբեկյանի անվան կոլտնտեսությունը հիմնականում զբաղվում է այգե-
գործությամբ, որը մյուս կուլտուրաների համեմատությամբ առավել եկամտա-
բեր է: Սակայն այստեղ հնարավոր է և պայմաններ կան զբաղվելու նաև բամ-
բակագործությամբ ու բանջարաբուծությամբ: Հաշվի առնելով ռեսպուբլիկայի
էկոնոմիկայում բամբակի կարևոր նշանակությունը՝ պարտիական կազմակեր-
պությունը կոլտնտեսականների ուշադրությունն ուղղում է նաև այդ կուլտու-
րայի մշակությունը օրինակելի կազմակերպելու և նրանից բարձր բերք ստա-
նալու վրա: Դրա շնորհիվ էլ կոլտնտեսականների մեջ արմատավորված է այն
համոզմունքը, որ պետք է բամբակենու պլանտացիաներն էլ լավ մշակել ու
նրանից բարձր բերք ստանալ, որպեսզի երկրի տեքստիլ գործարանները հում-
քով ապահով լինեն, անասունները լրացուցիչ խտացրած կեր ստանան: Այդ

է ցույց տալիս անցյալ տարվա օրինակը: Այստեղ, ինչպես նաև ռեսպուբլիկայի մյուս կոլտնտեսություններում, գարնան կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով բամբակենու ցանքը կատարվում է 25 օր ուշացումով: Ցրտերի պատճառով ճգճգվում է վեգետացիոն շրջանը, բերքը վտանգի տակ է դրվում: Այդ անհանգստացնում է բամբակագործության բնագավառում աշխատող կոմունիստներին, ամբողջ պարտիական կազմակերպությանը, որոնց նախաձեռնությամբ հրավիրվում է կոլտնտեսության ակտիվի խորհրդակցություն: Անպարտիական գյուղատնտես Վ. Բաղալյանը, փորձառու բամբակագործներ Վ. Ազատյանը, Բ. Մանուկյանը և ուրիշներ առաջարկում են առաջին, երկրորդ և երրորդ կուլտիվացիան ու քաղհանը կատարել սեղմ ժամկետներում, լրացուցիչ կերպով տալ հանքային պարարտանյութի սնուցում, դրանով իսկ արագացնել բույսերի վեգետացիան: Այդ ագրոձեռնարկումների շնորհիվ հուլիսի 15-ին, ինչպես սովորական տարիներին, բամբակենու պլանտացիաներում արդեն երևում են կնգուղներ: Երբ բույսերը փարթամորեն աճում են ու լայն ճյուղավորվում, կատարվում է խոր ծերատում:

Ամբողջ մշակության ընթացքում ագրոտեխնիկական կանոնները լրիվ կատարելու, ոռոգման ու պարարտացման ռեժիմը պահպանելու շնորհիվ բամբակենու բույսերը ծանրաբեռնվում են խոշոր կնգուղներով և խոստանում առատ բերք: Չնայած վաղ աշնան ցրտերին, որն զգալիորեն ազդում է բերքի վրա, չանաքն օրինակելիորեն կազմակերպելու շնորհիվ կոլտնտեսությունում յուրաքանչյուր հեկտարից ստացվում է ավելի քան 30 ցենտներ բամբակ:

Աթարբեկյանի անվան գյուղատնտեսական արտելում զբաղմունքի կարևորագույն ճյուղերից մեկն էլ անասնաբուծությունն է, որի արագ վերելքի գործում կան որոշ դժվարություններ: Ամենանեղ տեղն այն է, որ կոլտնտեսությունը զուրկ է բնական խոտհարքներից և չունի մարգագետիններ ու կանոնավոր արոտավայրեր: Իսկ անասնաբուծության զարգացման հիմնական պայմանը կերի արտադրության ավելացումն է, կերի կայուն բազա ունենալը:

Պարտիական կազմակերպությունը չի հաշտվել ստեղծված վիճակի հետ և գործը չի թողել ինքնահոսի, այլ, մտահոգվել է այդ հարցով, գործի է կոչել բոլոր կոլտնտեսականներին՝ օգտագործելու եղած հնարավորություններն ու միջոցները կերի ռեզերվներ հայտաբերելու, հանրային անասնաբուծությունը առաջ մղելու համար:

Այդ նպատակով հրավիրվում են ոչ միայն պարտիական կազմակերպության, այլև կոլտնտեսության ընդհանուր ժողովներ: Ելույթ ունեցողները խոսելով անասունների գլխաքանակի ավելացման և նրանց ցեղի բարելավման կարևորության մասին՝ միաժամանակ ցույց են տալիս, թե ինչ ռեզերվներ օգտագործելով կարելի է կերի բազան լայնացնել:

Կոմունիստ, շարքային կոլտնտեսական Վ. Բաղալյանը առաջարկում է պտղատու այգիների միջշարքային տարածություններում ցանել առվույտ, կորնգան ու գարի և դրանով ավելացնել անասունների կերը: Մեկ ուրիշը, շարքային կոլտնտեսական Ծ. Մկրտչյանն առաջարկում է հողային մասիվների միջև եղած թմբերն ու փոսերը հարթելու միջոցով ստեղծել 6—7 հեկտար հողային լրացուցիչ տարածություն և դրա վրա ցանել եգիպտացորեն ու կերի ճակնդեղ: Առաջարկություններ են լինում հնձի ժամանակ գարու և ցորենի ցողուններն անկորուստ հավաքելով կուտակել ավելի շատ հարդ:

Այս միջոցառումները կիրառելու շնորհիվ կոլտնտեսությունում տարեցտարի ավելանում է անասունների կերի արտադրությունը: Բավական է նշել, որ եթե 1955 թվականին ընդամենը կուտակված է եղել 180 տոննա սիլոս, 40 տոննա հարդ, 80 տոննա կերի ճակնդեղ, 180 տոննա առվույտ և այլն, ապա 1956 թվականին՝ 400 տոննա սիլոս, 130 տոննա հարդ, 270 տոննա կերի ճակնդեղ, 200 տոննա առվույտ և այլն ու ձեռք է բերվել 100 տոննա կոմբինացված կեր (նախորդ տարվա 50-ի փոխարեն), որոնց շնորհիվ անասուններն ապահովվել են բոլոր տեսակի կերերով:

Այժմ կոլտնտեսությունն աշխատանք է կատարում, որպեսզի ջրհան կայանի միջոցով մայր առվից ջուր բարձրացնի ղռերը և ոռոգելի դարձնի 30 հեկտար հողամաս, որն ամբողջովին դրվելու է կերաբույսերի ցանքի տակ:

Կերի լրացուցիչ ռեզերվներն օգտագործելը անցյալ տարի կոլտնտեսությանը հնարավորություն է տվել ոչ միայն կատարել, այլև գերակատարել հնգամյա պլանով 1957 թվականի համար նախատեսված անասնաբուծության արտադրանքների առաջադրանքները բոլոր ցուցանիշներով:

Ուղեցույց ունենալով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները՝ պարտիական կազմակերպությունն զգալի աշխատանք է կատարել դաշտավարության, այգեգործության ու անասնաբուծության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու ուղղությամբ, որի շնորհիվ զգալիորեն կրճատվել են արտադրանքի մեկ միավոր վրա կատարված աշխատանքի և միջոցների ծախսումները: Միաժամանակ զգալիորեն բարձրացել է բոլոր կուլտուրաների բերքատվությունը և աճել է յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց անասնաբուծությունից ստացված մթերքների քանակը:

Կոլտնտեսությունում գրեթե լրիվ մեքենայացված է բամբակենու բուժումը, որի շնորհիվ եթե առաջ մեկ հեկտարի բուժման համար ծախսվում էր 35 աշխօր, ապա անցյալ տարի ծախսվել է 8 աշխօր, որից 3-ը բաժին է ընկնում ՄՏ կայանի մեխանիզատորներին: Մեքենայացված են բամբակագործության նաև այլ պրոցեսները: Առաջներում կնգուղներից մեկ տոննա բամբակ զտելու համար սահմանված է եղել 30 աշխօր, իսկ անցյալ տարի աշխատանքի այդ պրոցեսը կատարելու համար «УПХ—1,5» բամբակազտիչ մեքենան օգտագործելու շնորհիվ ծախսվել է 4 աշխօր և 5 ռուբլու էլեկտրաէներգիա:

Մեքենայացումն արմատավորվում է նաև խաղողագործության ու գինեգործության մեջ: Եթե առաջներում 100 տոննա խաղող վերամշակելու համար պահանջվել է 400 աշխօր, ապա 1956 թվականին ծախսվել է ընդամենը 100 աշխօր, այդ թվում՝ աշխօրերի վերածած նաև օգտագործված էլեկտրաէներգիայի և ամորտիզացիայի համար վճարված գումարը:

Շուտով շահագործման կհանձնվի նորակառույց տիպային գոմը, ուր անասուններին կեր տալու, ջրելու, գոմաղբը դուրս բերելու պրոցեսները լրիվին մեքենայացված են:

Մարդկային աշխատանքը էլեկտրաէներգիայով է փոխարինված հանրային արտադրության բազմաթիվ այլ ճյուղերում ևս: Այս բոլորի շնորհիվ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աշխօրերի ծախսումը կրճատվել է՝ մեկ միավոր խաղողի արտադրության վրա ավելի քան 50 տոկոսով, բրդինը՝ 50 տոկոսով, բամբակի հումքինը՝ 10 տոկոսով:

Կոլտնտեսությունում աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, կոլտնտեսականների նախաձեռնությունն ու ակտիվությունը զարգացնե-

չու, բերքատվությունը բարձրացնելու լծակներ են հանդիսանում սոցիալիստական մրցությունը, գիտության նվաճումների և գյուղատնտեսության առաջավորների փորձի պրոպագանդումն ու արմատավորումը։

Կենսագործելով այդ մասին ՍՄԿՊ XX համագումարի ցուցումները՝ Նորաշենի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը իրեն պատասխանատու է զգում ո՛չ միայն սոցիալիստական մրցությունը ծավալելու, այլև ստանձնած պարտավորությունը կատարելու համար։ Սոցիալիստական պարտավորությունները կոնկրետ են, ըստ ժամանակաշրջանի և աշխատանքի առանձին պրոցեսների։ Պարտկազմակերպության նախաձեռնությամբ սիստեմատիկ կերպով միջկոլտնտեսային ու միջբրիգադային փոխադարձ ստուգումներ են կատարվում սոցիալիստական պարտավորությունները կատարելու ուղղությամբ։ Ըստ որում այդ ստուգումները չեն կրում էպիզոդիկ, ձևական բնույթ, այլ կատարվում են սիստեմատիկ, խոր կերպով. դա հնարավորություն է տալիս մրցակիցների աշխատանքում եղած ուսանելի կողմերը ընդօրինակելու հետ միասին միաժամանակ հայտաբերել եղած թերությունները, օգնել միմյանց դրանք վերացնելու և ընդհանուր հաջողություններ ձեռք բերելու համար։

Նորաշենցիները մրցելով իրենց հարևան Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության հետ՝ սոցիալիստական պարտավորություն էին ստանձնել 1956 թվականին խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 90 ցենտներ բերք, բամբակի միջին բերքատվությունը հասցնել 28 ցենտների, զգալի չափով ավելացնել անասնաբուծությունից ստացվող մթերքների արտադրանքը։

Անցյալ տարվա ընթացքում քաղցրաշենցիներն ու նորաշենցիները երկու անգամ ստուգել են իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը, նախ, գարնանացանից հետո, այգիների ու բամբակի մշակման ժամանակ, ապա՝ բերքահավաքի ընթացքում։ Պարզվել է, որ Նորաշենցիները խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել են 116 ցենտներ բերք, բամբակի հումքի պարտավորությունը յուրաքանչյուր հեկտարից գերակատարել են 2 ցենտներով, կովերի կաթնատվությունը 1955 թվականի համեմատությամբ ավելացրել են 100 կիլոգրամով։

Միջբրիգադային և օղակային սոցիալիստական մրցությունների փոխադարձ ստուգումները կատարվել է 3 անգամ, ըստ գյուղատնտեսական աշխատանքների սեզոնի՝ գարնանացանից հետո, մշակությունների և բերքահավաքի ժամանակ։ Ստուգումներից հետո մի բրիգադայի կամ օղակի ներկայացուցիչները ելույթներ են ունեցել մյուսի մոտ և նշել բրիգադայի կամ օղակի աշխատանքներում եղած թերությունները վերացնելու ուղիները։ Այդ ստուգումները բարձրացրել են կոլտնտեսականների պատասխանատվությունը՝ լինել իրենց խոսքի տերը և այն կատարել ազնվորեն։

Պարտբյուրոյի նախաձեռնությամբ կոմունիստ բրիգադավար Ե. Զոբանյանը, հանդես գալով մյուս բրիգադների աշխատողների առջև, խոսել է այգիների մշակման իրենց փորձի մասին և պրակտիկ կերպով ցույց տվել խաղողի բերքատվությունը բարձրացնելու ուղիները։ Բամբակենու պլանտացիաների մշակման, հիվանդությունների դեմ պայքարելու միջոցառումների շուրջը կոլտնտեսականների համար զրույց է անցկացրել փորձառու բամբակագործ Վ. Ազատյանը։

Նորաշենցիների ազնիվ ու նվիրական աշխատանքի շնորհիվ տարեց



տարի աճում է հանրային տնտեսությունից ստացվող եկամուտը, բարձրանում է կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Եթե 1955 թվականին կոլտնտեսության եկամուտը եղել է 5,5 միլիոն ռուբլի, ապա 1956 թվականին հասել է ավելի քան 10 միլիոն ռուբլու։ Համապատասխանորեն կոլտնտեսականների աշխօրերի արժեքը 13 ռուբլուց բարձրացել է 50 ռուբլու։

Շարքային կոլտնտեսական Ա. Շահգելդյանի ընտանիքն անցյալ տարի իր վաստակած աշխօրերի դիմաց ստացել է ավելի քան 35 հազար ռուբլի դրամ, 4.000 կիլոգրամ խաղող և ուրիշ մթերքներ։ Այսպիսի տնտեսությունների թիվը շատ ու շատ է, որոնք ազնիվ վաստակով բռնել են ունևոր կյանքի ուղին։

Գյուղն աստիճանաբար բարեկարգվում է. նախկին ծուռ ու նեղ փողոցների տեղը բացվել են լայն և ուղիղ փողոցներ, որոնց երկու կողմերը կոլտնտեսականները կառուցել և կառուցում են նոր բնակարաններ։ Ելնելով իր հնարավորություններից՝ կոլտնտեսությունը որոշել է իր անբաժանելի դրամագլխից 1957 թվականին մեկ միլիոն ռուբլի անտոկոս վարկ տալ այն կոլտնտեսականներին, որոնք կցանկանան բնակարաններ կառուցել։ Գյուղում անցկացվել է ջրմուղ, որով հոսող Գառնիի վճիտ ու սառնորակ ջուրը նորաշենցիներին հավիտյան ազատել է առուների կեղտոտ ջուրը խմելուց։

Ոչ վաղ անցյալում ռադիոընդունիչ ունենալը երազ էր նորաշենցիների համար։ Այժմ գրեթե բոլոր ընտանիքները ռադիոընդունիչ ունեն, ոմանք էլ արդեն ձեռք են բերել հեռուստատեսության ընդունիչներ և երեկոները սիրով հյուրընկալում են իրենց հարևաններին ու միասին դիտում Երևանի Հեռուստատեսային կայանի հաղորդումները։ Գյուղի կուլտուրական առաջադիմության բնորոշ հատկանիշներից մեկն էլ այն է, որ եթե նախասովետական շրջանում գյուղում ստացվել է ընդամենը 2 օրինակ լրագիր, ապա այժմ Նորաշենում յուրաքանչյուր օր ստացվում է 200-ից ավելի լրագիր ու ամսագիր։

Կոլտնտեսության ձեռք բերած այս հաջողություններն առաջին հերթին արդյունք են այն բանի, որ պարտիական կազմակերպությունը հանդես է գալիս կոլտնտեսականների կազմակերպչի և նրանց արտադրական ու քաղաքական ակտիվության ղեկավարողի դերում։

Չհանգստանալով և չմեծամտանալով ձեռք բերած հաջողություններով՝ Նորաշենի կոմունիստներն այժմ եռանդուն նախապատրաստական աշխատանք են տանում առաջիկա գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու, որպեսզի ավելի բարձր լինի խաղողի այգիների ու բամբակենու դաշտերի բերքատվությունը, ավելի շատ լինի հանրային հոտի մթերատվությունը և ավելի բարեկեցիկ լինի կոլտնտեսականների կյանքը։

---

# ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆԸ

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրը միշտ էլ եղել է ՍՄԿՊ ուշադրության կենտրոնում: Ավելի քան կեսդարյա փառավոր պայքարի բովում պարտիան մարքսիզմ-լենինիզմի ոգով կոփել է միլիոնավոր երիտասարդների հուժկու ջոկատներ, որոնք իրենց ամբողջ կորովը խսպաս են դրել կոմունիզմի կառուցման վեհ գործին:

Երիտասարդների կոմունիստական դաստիարակության ծրագրային փաստաթուղթ է հանդիսանում Վ. Ի. Լենինի հիանալի ճառը՝ արտասանած 1920 թվականի հոկտեմբերին ՌԿԵՄ III համագումարում: Այդ պատմական ճառի մեջ հստակ ու պարզորոշ տրված են կոմունիստական հասարակարգի երիտասարդ կառուցողների դաստիարակության հիմնական սկզբունքները, որոնք կազմեցին լենինյան կոմերիտմիության գործունեության հիմքը: Վ. Ի. Լենինը երիտասարդությանը կոմունիստական ոգով դաստիարակելու մեջ էր տեսնում կոմերիտմիության հիմնական խնդիրը, նրա գործունեության գլխավոր ուղղությունը:

Լենինյան կոմերիտմիությունը պարտիայի ղեկավարությամբ աճեցրել և դաստիարակել է կոմունիստական հասարակարգի միլիոնավոր ակտիվ կառուցողներ, որոնք իրենց ուղին պսակել են մարտական, աշխատանքային փառքով: 350 հազար երիտասարդ հայրենասերներ հարազատ պարտիայի կոչով իրենց երիտասարդական ավյունով կյանք տվին դարերով խոպան անկոխ տափաստաններին: Միայն 1956 թվականին ավելի քան 200 հազար կոմերիտականներ ու երիտասարդներ մասնակցեցին խամ ու խոպան հողերում ծիր տափաստաններին: Միայն ... աճեցրած հարուստ բերքը հավաքելու համաժողովրդական գործին: Կոմերիտմիությունը վերցրել է Բրատսկի՝ աշխարհի ամենախոշոր հիդրոէլեկտրակայանի, երկաթբետոնի կոնստրուկցիաների գործարանների, ատոմային էլեկտրակայանների շինարարության շեֆությունը:

Սովետական երիտասարդության հայրենասիրության նոր, վառ արտահայտություն հանդիսացավ տասնյակ հազարավոր պատանիների և աղջիկների ջերմ արձագանքը ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումին՝ աշխատանքի մեկնելու Հեռավոր Արևելքի և Հյուսիսի նորակառույցները: Հաշվի առնելով սոցիալիստական շինարարության բնագավառում կոմերիտականների ու սովետական երիտասարդության մեծ ծառայությունները և առանձնապես նշելով կոմերիտականների, սովետական պատա-



նիների ու աղջիկների անձնուրաց ու բեղմնավոր աշխատանքը խամ ու խոպան հողերի հաջող յուրացման գործում՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը կոմերիտմիությանը երրորդ անգամ պարգևատրեց Լենինի շքանշանով:

Երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը մեծ նշանակություն է ստանում հատկապես այժմ, երբ սովետական ժողովուրդը պարտիայի ղեկավարությամբ սոցիալիզմից անցնում է կոմունիզմին: Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ կոմունիզմին անցնելու համար ամենից առաջ անհրաժեշտ է ստեղծել նյութատեխնիկական բազա, մի բան, որը մեզ մոտ լիովին կա: Բայց կոմունիզմի կառուցումը միայն պայքար չէ սոցիալիստական էկոնոմիկայի շեշտակի վերելքի համար: Այն պայքար է նաև մարդկանց մեջ կոմունիստական գիտակցությունն առավել զարգացնելու, նրանց կուլտուրական-գիտական մակարդակը բարձրացնելու համար: ՍՄԿՊ XX համագումարը պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց այդ նպատակով լրիվ և ակտիվորեն օգտագործել գաղափարական դաստիարակության բոլոր միջոցները: Վ. Ի. Լենինի այն նշանավոր դրույթը, որ կոմունիստական գաղափարների պրոպագանդի թուլացումը, նրա դերի անգամ աննշան նվազեցումը նպաստում է բուրժուական իդեոլոգիայի ուժեղացմանը, այսօր էլ պահպանում է իր հրատապությունը: Որտեղ թերագնահատվում է երիտասարդության իդեական-քաղաքական դաստիարակությունը, այնտեղ տարածում են գտնում մարքսիզմ-լենինիզմին խորթ հայացքներ, աշխուժանում են կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ:

Երիտասարդությունը, բնականորեն, չունի կյանքի մեծ փորձ, որը հնարավորություն տար նրան ճիշտ կողմնորոշվելու հասարակական բարդ իրադարձություններում: Այս հանգամանքը կոմերիտական կազմակերպություններին պարտավորեցնում է օգնել յուրաքանչյուր պատանու և աղջկա՝ քաղաքականապես լուսավորելու և իդեապես կոփվելու: Երիտասարդության կոմունիստական դաստիարակության հիմքը կազմում է մարքսիզմ-լենինիզմը, որը զինում է մարդկանց կոմունիստական հասարակարգ կառուցելու անսասան համոզմունք է տալիս կոմունիզմի գործի նկատմամբ և կողմնորոշման մեծագույն ուժ՝ մեր օրերի բարդ իրադարձությունների մեջ: Սակայն, երիտասարդության շրջանում կոմերիտական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական աշխատանքը դեռ անբավարար է:

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության դրվածքի էական թերություններից մեկը պետք է համարել այն, որ նրա գաղափարական պրոպագանդան դեռևս չունի հարկ եղած հարձակողական, մարտնչող ոգի, երբեմն վնասակար շեղումներ են արվում բուրժուական մտայնությանը՝ ի վնաս լենինիզմի անաղարտության: Մինչդեռ կոմունիստական պարտիան պահանջում է՝ մեռնող կապիտալիզմի գաղափարախոսության մնացուկների դեմ անզիջում, հարատև և անխնա պայքար ծավալել, ներարկելով երիտասարդությանը լենինյան իդեաները, կոմունիզմի վեհ գաղափարները:

Մեր երկրում վաղուց վերացված է բուրժուական իդեոլոգիայի զարգացման սոցիալական-դասակարգային բազան: Մեզ մոտ տիրապետում է սո-

ցիալիստական իդեոլոգիան, մարքսիստական-լենինյան աշխարհայացքը։ Սակայն, երիտասարդության առանձին օղակներում տարվող անբավարար աշխատանքի հետևանքով որոշ կոմերիտականների ու երիտասարդների մոտ դեռ նկատվում են ապաքաղաքականություն, կոմունիստական բարոյականության նորմաների խախտման, մանր սեփականատիրական ձգտումներ։ Ոչ մի կերպ չի կարելի հանդուրժել, երբ որոշ կոմերիտական կազմակերպություններ (Պետական համալսարան, Պոլիտեխնիկ ինստիտուտ) երբեմն միայն հայեցողական ու պասսիվ դիրք են գրավում և ջախջախիչ հարված չեն տալիս լենինիզմին խորթ հայացքներին։

Կոմերիտական կազմակերպությունները գաղափարական պայքարի բոլոր միջոցներով երիտասարդության առաջ պետք է բացահայտեն բուրժուական իդեոլոգների կողմից եռանդուն կերպով ռեկլամի ենթարկվող այսպես կոչված՝ «ազատ աշխարհի» ամբողջ կեղծությունը, ցույց տան բուրժուական դեմոկրատիայի սքողված հակաժողովրդական, ռեակցիոն բնույթը։

Երիտասարդության կողմից մարքսիստական թեորիայի ուսումնասիրության գործում կարևոր տեղ է գրավում քաղաքական ուսուցումը։ Չի կարելի անտեսել, որ պարտիայի XX համագումարից հետո որոշ չափով բարձրացել է երիտասարդության քաղաքական կրթության մակարդակը, նկատելիորեն ուժեղացել է նրա կապը կյանքի հետ։

Սակայն կոմերիտական կազմակերպությունները դեռ չեն հաղթահարել պրոպագանդայի կտրվածությունը կոմունիստական շինարարության պրակտիկայից։ Շարունակում են ավելի շատ բացատրել, թե ինչ բան է կոմունիզմը, քան թե գործնականորեն սովորեցնում և օգնում են պատանիներին ու աղջիկներին կառուցել այն։ Հաճախ պրոպագանդիստը հանդես է գալիս միայն որպես երիտասարդներին տեսական գիտելիքներ հաղորդող, բայց ոչ որպես նրանց ավագ խորհրդատու և օգնող ընկեր։ Դա պետք է առաջին հերթին բացատրել կոմերիտական քաղխմբակների և քաղդպրոցների պրոպագանդիստների սխալ ընտրությամբ, ինչպես և նրանով, որ մոռացվում են այդ խմբակների ունկնդիրների հետ տարվող աշխատանքի մի շարք առանձնահատկությունները։ Ճիշտ չէ, երբ որպես պրոպագանդիստ ընտրելու գլխավոր չափանիշ առաջ է քաշվում միայն կրթության հարցը, մոռանալով, որ ամեն մի բարձրագույն կրթություն ունեցող չէ, որ կարող է աշխատել որպես պրոպագանդիստ, որպես դաստիարակ։

Բերենք մեկ օրինակ։ Ալրաղաց կոմբինատի ընթացիկ մոմենտն ուսումնասիրող քաղխմբակի պրոպագանդիստ ընկ. Գ. Առաքելյանը ունի բարձրագույն կրթություն, սակայն նա ցածր մակարդակով է անցկացնում պարապմունքները, հաճախ այն ամբողջապես հանգեցնում է թերթերի ընթերցանության։ Այսպիսի օրինակներ եզակի չեն։

Որպես կոմերիտական քաղխմբակների և քաղդպրոցների պրոպագանդիստներ պետք է առաջադրել կյանքի մեծ փորձով հարստացած, աշխատանքում կոփված ընկերներին։ Մեր երիտասարդությունը բուռն ձգտում ունի հարստացնելու իր քաղաքական գիտելիքները։ Մնում է լավագույն ձևով բավարարել այդ ձգտումը։

Միայն կոմերիտական կազմակերպությունների գաղափարական թույլ աշխատանքով կարելի է բացատրել, որ բազմաթիվ կոմերիտականներ ու



երիտասարդներ դեռ հստակ պատկերացում չունեն անհատի պաշտամունքի և նրա վնասակար հետևանքների վերացման մասին։ Մինչդեռ շատ կոմերիտական կազմակերպություններ (Գյուղատնտեսական ինստիտուտ, էլեկտրոտեխնիկական գործարան, Երևանի Երկաթուղային հանգույց) թուլացրել են երիտասարդության շրջանում այդ ուղղությամբ տարվող քաղաքական-բացատրական աշխատանքը։

Միշտ չէ, որ պրոպագանդիստը կարողանում է համոզիչ նյութերով և բազմակողմանիորեն պարզաբանել սոցիալիստական սիստեմի առավելությունները։ Չի նշվում, թե արդյունաբերական տեսակետից որքան թույլ զարգացած երկիր էր Ռուսաստանը մինչև ռևոլյուցիան, թե ինչպես, չնայած վիթխարի դժվարություններին, ամենակարճ ժամանակաշրջանում այն դարձավ սոցիալիզմի հզոր ինդուստրիալ երկիր։ ՍՍՌՄ-ն այսօր արդյունաբերական արտադրանքի ծավալի տեսակետից երկրորդ տեղն է բռնում աշխարհում և արդյունաբերության զարգացման տեմպերի տեսակետից առաջ է անցել բոլոր կապիտալիստական երկրներից։ Հաճախ պրոպագանդիստը ուշադրություն չի դարձնում այս հարցի մյուս ոչ պակաս կարևոր կողմի վրա։ Դա այն է, որ եթե որոշ կապիտալիստական երկրներ բնակչության մեկ շնչին ընկնող արդյունքի չափով առաջ են ՍՍՌՄ-ից, այդ ամենևին չի նշանակում, թե այդ երկրներում ժողովրդական մասսաների համար բարեկեցիկ կյանք է ապահովված։ Չպետք է մոռանալ, որ կապիտալի երկրներում արտադրությունը գտնվում է մի բուռն կապիտալիստների ձեռքում, որոնք և շահագործում են աշխատավորներին։

Կոմերիտականների և երիտասարդների դաստիարակության կարևոր ձևերից է դասախոսական պրոպագանդան, մինչդեռ շատ կոմերիտական կազմակերպություններում երիտասարդության համար հրատապ թեմաների շուրջը հազվադեպ են կազմակերպվում բարձրորակ դասախոսություններ։ ՀԼԿԵՄ Սպանդարյանի շրջկոմը շրջանի 142 կոմերիտական կազմակերպություններից 1956 թվականի դեկտեմբեր ամսին միայն երեք կազմակերպություններում է, որ դասախոսություն է կազմակերպել։

Դասախոսություններ կազմակերպելիս միշտ չէ, որ հաշվի են առնվում երիտասարդության պահանջները և ցանկությունները։ Դասախոսական պրոպագանդայում լուրջ ուշադրություն չի դարձվում պարտիայի XX համագումարի որոշումների և ընթացիկ մոմենտի հարցերի մասսայականացմանն ու պարզաբանմանը։

Երիտասարդության համար դասախոսություններ և զեկուցումներ կազմակերպելու գործին պետք է լայնորեն մասնակից արվեն մեր լավագույն փորձված դասախոսները։ Այնինչ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի շատ ակադեմիկոսներ և թղթակից անդամներ տարիներով երիտասարդության առաջ հանդես չեն գալիս զեկուցումներով ու զրույցներով։

Վ. Ի. Լենինը մասսաների քաղաքական լուսավորությանն անմիջականորեն մասնակցելու հիանալի օրինակներ է տվել։ Մինչդեռ պարտիական և սովետական մի շարք աշխատողներ կոմերիտականների առաջ հանդես չեն գալիս քաղաքական զեկուցումներով։ Այդպես են վարվել ՀԿԿ Մոլոտովյան շրջկոմի քարտուղարներ՝ ընկ. ընկ. Ս. Եսաջյանը, Հ. Ասլանյանը, Տեղական արդյունաբերության մինիստր ընկ. Ի. Սոչինսկին, Առողջապահության մի-

նիստր ընկ. Ա. Խրիմլյանը, Արդարադատության մինիստր ընկ. Ս. Կարապետյանը և ուրիշները։

Մեր երիտասարդության դաստիարակության բազմազան աշխատանքներում հատուկ ուշադրություն պետք է դրավի ինտերնացիոնալ դաստիարակության հարցը։ Պետք է հիշել, որ բուրժուական գաղափարախոսության կենսունակ մնացուկներից է նացիոնալիզմը, որի դեմ պետք է սիստեմատիկ և հետևողական պայքար մղել։ Եղբայրական ռեսպուբլիկաների երիտասարդության հետ մեր կապերի ամրացումը, գրականության և արվեստի միջոցով երիտասարդությանը ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը մեր կարևորագույն պարտքն է։ Ֆեստիվալների, սպորտային հանդիպումների կազմակերպումը, պարբերական մամուլի էջերի փոխանակումն ու նամակագրությունը պետք է դարձնել հաճախակի։

Վ. Ի. Լենինը նշել է, որ երիտասարդ բանվորների համար կենսականորեն անհրաժեշտ է շահագործողների և ճնշողների դեմ պայքարի այն փորձը, որ ունեն հին մարտիկները, որոնք կռվել են ռևոլյուցիոն մարտերի բովում։ «ՌԿԵՄ աշխատանքի մասին» ՍՄԿՊ XII համագումարի ընդունած բանաձևում ասված է, որ «Պարտիայի առաջ ամենից առաջ ծառացած է խնդիր՝ նոր մատաղ սերնդին հաղորդել ռևոլյուցիոն պայքարի ամբողջ փորձը և նրան խնամքով ծանոթացնել պարտիայի անցյալի հետ»։

Ռևոլյուցիոն պայքարի հերոսների, Հոկտեմբերի հերոսների կյանքը և գործունեությունը սովետական ամեն մի պատանու և աղջկա համար կոմունիզմի մեծ իդեաներին ծառայելու վառ օրինակ է։ Կոմերիտական կազմակերպությունները երիտասարդության համար պետք է հաճախակի կազմակերպեն հանդիպումներ ռևոլյուցիայի մարտիկների, հին բոլշևիկների հետ, թեմատիկ երեկոներ, էքսկուրսիաներ դեպի թանգարանները, որտեղ պահվում են մեր ժողովրդի ռևոլյուցիոն անցյալին վերաբերող նյութեր։

Հայաստանի պետական հրատարակչությունը դեռ քիչ բան է անում մեր ժողովուրդների ռևոլյուցիոն անցյալին, հին բոլշևիկների կյանքին ու գործունեությանը վերաբերող գրքերի, հուշերի հրատարակման ուղղությամբ։ Ռևոլյուցիոն տրադիցիաների ուսումնասիրությունը և պահպանումն էլ ավելի է հարազատացնում երիտասարդությանը պարտիայի, ժողովրդի հետ, նրան նոր ուժ և նոր եռանդ է տալիս մեր Հայրենիքի մեծ ու երջանիկ ապագայի համար մղվող պայքարում։

Երիտասարդական միության խնդիրների մասին ՌԿԵՄ III համագումարում արտասանած իր պատմական ճառում Վ. Ի. Լենինը կոմերիտմիությանը մեծ պատգամ թողեց՝ ուսման, կրթության և դաստիարակության յուրաքանչյուր քայլ կապել կոմունիզմի հաղթանակի համար բոլոր աշխատավորների մղած պայքարի հետ։

Միայն ստեղծագործական ակտիվ աշխատանքի պրոցեսում է, որ կոմերիտականների և երիտասարդների մոտ ձևավորվում են սովետական մարդկանց հատուկ այնպիսի լավագույն հատկություններ, ինչպիսիք են՝ սովետական հայրենասիրությունը, կոմունիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը, կոլեկտիվիզմը, սրտացավ վերաբերմունքը սոցիալիստական սեփականության նկատմամբ, գիտակցական կարգապահությունը, ընկերական փոխօգնությունը։

Պատահական չէ, որ Ա. Մ. Գորկին սոցիալիստական աշխատանքը հա-



մարել է նոր մարդու կազմակերպիչ։ Կարելի է բերել երիտասարդության կողմից կատարվող ստեղծագործական ազնիվ աշխատանքի բազմաթիվ օրինակներ։ Երևան քաղաքի արդյունաբերությունը 1956 թվականի տարեկան պլանը կատարեց ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 16-ին։ Այդ մեծ հաջողության մեջ իրենց լուման ունեն Երևանի երիտասարդ բանվորներն ու բանվորուհիները։ Երևանի երիտասարդության ավելի քան 2000 պատվիրակներ հարազատ պարտիայի կոչով մասնակցել են խամ ու խոպան հողերի վրա կատարված համաժողովրդական գրոհին, իսկ 800 հոգի՝ խոպան հողերում աճեցրած հարուստ բերքի հավաքման աշխատանքներին։ Ավելի քան 200 պատանիներ և աղջիկներ արձագանքելով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումին, մեկնել են Հեռավոր Արևելքի նորակառույցները, որպեսզի իրենց երիտասարդական ավյունով ծնունդ տան նոր գործարանների, ֆաբրիկաների և էլեկտրակայանների։

Քաղաքի կոմերիտականները և երիտասարդները ակտիվ մասնակցում են Երևանի Միկոյանի շրջանում կառուցվող քաղաքային սպորտային խոշոր պարկի շինարարությանը։ Մոլոտովյան շրջանի կոմերիտական կազմակերպությունները վերցրել են Նոր Արեշի կուլտուրայի և հանգստի պարկի, իսկ Սպանդարյան շրջանինը՝ «Պիշչևիկ» սպորտ ընկերության ստադիոնի շինարարության շեֆությունը։ Ստալինյան շրջանի կոմերիտականները և երիտասարդները պարտավորություն են վերցրել կանաչապատել իրենց շրջանում Ջանգվի ձորում պատրաստվող լճի շրջակայքը։

Կոմերիտմիության տասնամյա հոբելյանին նվիրված հանդիսավոր ճառում Մ. Ի. Կալինինը կոմերիտական կազմակերպությունների առաջ խնդիր դրեց՝ երիտասարդության մեջ հարգանքի զգացում պատվաստել ֆիզիկական աշխատանքի հանդեպ, աշխատանքի մարդկանց հանդեպ, դա համարելով կոմունիստական բարոյականության ամենահատկանշական կողմերից մեկը։ Մեզանում երիտասարդության մի մասի մոտ այն սխալ պատկերացումը կա, որ ավարտելով միջնակարգ դպրոցը, պետք է անպայմանորեն և անմիջապես մտնել բարձրագույն ուսումնական հաստատություն, որ միջնակարգ կրթություն ունեցողը պետք է զբաղվի միայն մտավոր աշխատանքով։ Այսպիսի սխալ պատկերացումը արդյունք է աշխատանքային թույլ դաստիարակության, որը գալիս է դպրոցից, ինչպես նաև ընտանիքից։

Աշխատանքային անբավարար դաստիարակությամբ պետք է բացատրել, որ որոշ պատանիներ ու աղջիկներ, ավարտելով միջնակարգ դպրոցը, բայց չընդունվելով բարձրագույն ուսումնական հաստատություններ, իրենց համար անպատվաբեր են համարում աշխատել արտադրության մեջ։ Այս ուղղությամբ կոմերիտական կազմակերպությունները մեծ անելիքներ ունեն։ Վեցերորդ հնգամյակում մեր ռեսպուբլիկայում կառուցվելու են նոր գործարաններ, ֆաբրիկաներ, հիդրոէլեկտրակայաններ, ջրանցքներ։ Մեծ ծավալ է ընդունելու բնակարանային շինարարությունը։ Երիտասարդ, ամուր և ուժեղ ձեռքերի են սպասում Ագարակի Մոլիբդենի կոմբինատի, Լուսավանի գործիքաշինական գործարանի, Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների և շատ ուրիշ կառույցների շինարարությունները։ Կոմերիտական կազմակերպությունները պետք է ստեղծագործական աշխատանքի կրակ վառեն պատանիների ու աղջիկների սրտերում, նրանց մեջ սեր ու հարգանք դաստիարակեն դեպի

ստեղծագործ աշխատանքը։ Երիտասարդությանը աշխատելու ունակություն տալու, աշխատանքի պատրաստելու գործում հսկայական է սովետական դպրոցի դերը։ Սովետական դպրոցի լուրջ թերությունը ուսման կտրվածությունն է կյանքից, իսկ այդ կտրվածությունը կարելի է հաղթահարել միայն պոլիտեխնիկական կրթության զարգացումով, մի բան, որը չափազանց դանդաղ է արվում։ Թե ինչքան մեծ է այդ կտրվածության վնասը, ցույց է տալիս հետևյալ, թեկուզ և փոքր օրինակը։ Երբ Մ. Գորկու անվան դպրոցի կոմերիտական կազմակերպության ժողովում առաջարկություն մտցվեց աշակերտների ուժերով կանաչապատել դպրոցի շրջակայքը, աշակերտները հարց տվեցին, «Իսկ ո՞վ պետք է մեզ սովորեցնի, թե ինչպես տնկել ծառերը»։ Դուրս է գալիս, որ աշակերտը դպրոցում մի քանի տարի բնագիտություն է սովորել, բայց չգիտե, թե ինչպես պետք է տնկել ծառը։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում խոշոր դեր ունի սոցիալիստական մրցությունը, որի ծավալման ուղղությամբ շատ կոմերիտական կազմակերպություններ որոշակի գործ են կատարում։ Այսպես, Կաբելի գործարանի կոմերիտական կազմակերպությունը Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանի երիտասարդ շինարարներից մի նամակ ստացավ, որով նրանք խնդրում էին ժամկետից շուտ կատարել իրենց պատվերը։ Գործարանի ԼԿԵՄ կոմիտեն բոլոր ցեխերի կոմերիտական-երիտասարդական ժողովներում կազմակերպեց Ստալինգրադի երիտասարդ հիդրոէլեկտրաշինարարների նամակի քննարկումը։ Երիտասարդ բանվորները աշխատանքային մեծ խանդավառությամբ պայքար ծավալեցին ստացված պատվերը կատարելու համար։ Մրցության ընթացքում առաջ եկան աշխատանքի նոր հերոսներ։ Գործարանի երիտասարդությունը պատվով կատարեց սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները և ժամկետից շուտ Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանի շինարարներին ուղարկեց բարձր որակի կաբել։ ՀամԼԿԵՄ Ստալինգրադի մարզային կոմիտեն Կաբելի գործարանի կոմերիտական կազմակերպությանը պարգևատրեց պատվոգրով։ Հայէլեկտրագործարանի 9-րդ ցեխի երիտասարդ բանվորները հանդես են եկել մի հիանալի նախաձեռնությամբ։ Նրանք մրցություն են ծավալում արտադրական նորման 8 ժամվա փոխարեն 7 ժամում կատարելու համար։

Մենք ունենք նաև այնպիսի կոմերիտական կազմակերպություններ (Փոքր հիդրոտուրբինների, էլեկտրալամպերի, Պահեստամասերի գործարաններ), որոնք վատ են զբաղվում սոցիալիստական մրցության ծավալման հարցով։

Երիտասարդությանը կոմունիստական բարոյականության ոգով դաստիարակելը կոմերիտական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է։ Մեր պատանիներն ու աղջիկները իրենց բարոյական կերպարով պետք է օժտված լինեն կոմունիստի հատկություններով։ Կոմերիտական կազմակերպությունները քիչ աշխատանք չեն կատարել, որպեսզի սովետական պատանիներն ու աղջիկները աճեն որպես սովետական հասարակության արժանավոր քաղաքացիներ։ Բայց չի կարելի աչք փակել այն փաստի հանդեպ, որ մեր իրականության մեջ դեռ հանդիպում են հետամնաց երիտասարդներ, որոնք խախտում են սոցիալիստական համակեցության կանոնները, զբաղվում են հարբեցողությամբ, խուլիգանությամբ, դրսևորում են էգոիզմ, ինդիվիդուալիզմ, մասնավոր սեփականատիրական ձգտումներ, արհամարհանք դեպի կոլեկտիվը, ոչ կոմունիստական վերաբերմունք ընտանիքի նկատմամբ։



Մինչդեռ շատ կոմերիտական կազմակերպություններ (Կաշվի, Մետաղյա ամանեղենի, Ժամացույցի գործարաններ, Հայկոոպշինտրեստ) անողոք կռիվ չեն մղում կոմունիստական բարոյականության նորմաների հետ անհամատեղելի այդ երևույթների դեմ։ Հաճախ կոմերիտական կազմակերպությունները լռություն են մատնում, երբ կոմերիտականը խախտում է կոմունիստական բարոյականության նորմաները, նրա շուրջը չեն ստեղծում լայն հասարակական կարծիք։ Կոմերիտական կազմակերպությունները պետք է վճռականապես բարելավեն երիտասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքը, այն դարձնեն կոնկրետ, նպատակասլաց, սերտորեն կապված կյանքի հետ։

Երիտասարդության դաստիարակության հարցերով զբաղվում է մեր սովետական ամբողջ հասարակությունը։ Չի կարելի չնշել, որ առանձին կազմակերպություններ, որոնք մեծ պատասխանատվություն ունեն երիտասարդության դաստիարակության նկատմամբ, վատ են կատարում իրենց խնդիրները։ Առաջին հերթին խոսքը վերաբերում է մեր գրողներին, կոմպոզիտորներին և կուլտուրայի մյուս գործիչներին։ Հանրահայտ է, թե ինչքան մեծ է գեղարվեստական գրականության դաստիարակչական ներգործությունը երիտասարդության վրա։ Մինչդեռ, մեր սովետահայ գրողները, որոնց շարքերում շատ կան գեղարվեստական խոսքի տաղանդավոր վարպետներ, գրեթե չեն ստեղծում սովետական դարաշրջանի այնպիսի երիտասարդ հերոսների կերպարներ, որոնք ոգևորեն մեր երիտասարդությանը, նրան մղեն սխրագործության։ Քիչ են այնպիսի գեղարվեստական գործերը, որոնք հագեցված լինեին աշխատանքային պաթոսով, պոետականացնեին ֆիզիկական աշխատանքը և նրա մարդկանց, ակտիվորեն օգնեին սովետական իրականության մեջ նկատվող բացերի ու թերությունների վերացմանը։ Այս տեսակետից արժեքավոր է Վ. Ալազանի «Հյուսիսային աստղը»։ Հույսով ենք, որ սովետահայ գրողները պարտք չեն մնա մեր երիտասարդությանը։ Մեծ պահանջներ պետք է ներկայացնել Սովետական Հայաստանի կոմպոզիտորներին, որոնք քիչ են գրում կոմերիտական-երիտասարդական, աշխատանքի ու պայքարի երգեր, որոնք օգնեին պատանիներին ու աղջիկներին՝ աշխատելու և սովորելու։ Սովետական Հայաստանի կոմպոզիտորների Միությունը պետք է շատ լուրջ ուշադրություն դարձնի այս հարցի վրա։ Մեծ են և Հայպետհրատի խնդիրները։ որը, ի դեպ, վատ է կատարում դրանք։

Անվիճելի է տեխնիկայի և գիտության նորագույն նվաճումների պրոպագանդան երիտասարդության դաստիարակության գործում։ Մինչդեռ այդ մասին շատ քիչ են հրատարակվում հանրամատչելի գրքեր ու բրոշյուրներ։ Հասունացել է ռեսպուբլիկայում տեխնիկական ամսագիր հրատարակելու հարցը։ Այն կխթանի մեր երիտասարդների առողջ դաստիարակման գործը։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը համապետական կարևոր նշանակություն ունեցող գործ է, որը մշտապես պետք է գտնվի պարտիական, սովետական, կոմերիտական, պրոֆմիութենական կազմակերպությունների, մեր ամբողջ հասարակության ուշադրության կենտրոնում։ Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիան անում են ամեն ինչ, որպեսզի մեր երիտասարդ սերունդը աճի առողջ և՛ հոգեպես, և՛ ֆիզիկապես։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Ամեն մի հասարակության գոյության ու զարգացման հիմքը նյութական բարիքների արտադրությունն է: Արտադրությունը կոչված է բավարարելու մարդկանց պահանջմունքները, ուստի, ինչպես որ հասարակությունը չի կարող դադարել սպառելուց, այնպես էլ նա չի կարող դադարել արտադրելուց: Այդ նշանակում է, որ արտադրության պրոցեսը անընդհատ կրկնվող պրոցես է: Հասարակական արտադրության ամեն մի պրոցես, երբ այն մենք քննում ենք մշտական շարժման, զարգացման, հետևապես և նրա մշտական կապերի ու վերանորոգման հոսանքի մեջ, հենց ինքը վերարտադրության պրոցեսն է: Արտադրության այդ անընդհատ կրկնությունն ու վերանորոգումը կարող է կատարվել անփոփոխ ծավալով, երբ հաջորդ տարում նրա ծավալը չի փոխվում: Մյուս կողմից՝ արտադրությունը կարող է տարեցտարի իր ծավալը մեծացնել: Առաջին դեպքում վերարտադրությունը կլինի հասարակ կամ պարզ, երկրորդ դեպքում՝ ընդլայնված:

Սոցիալիստական հասարակությունը աճում ու զարգանում է ընդլայնված վերարտադրության հիմքի վրա, որն իր բովանդակությամբ, նպատակով ու շարժիչ դրդապատճառներով տրամագծորեն հակադիր է կապիտալիստական ընդլայնված վերարտադրությանը: Կապիտալիստական արտադրության նպատակը հավելյալ արժեքի կորզումն է բանվոր դասակարգի անզուսպ շահագործման միջոցով: Վերարտադրությունն այնտեղ նախ և առաջ շահագործողական հարաբերությունների անընդհատ վերարտադրություն է նշանակում: Կապիտալիստական հասարակության մեջ արտադրության պրոցեսը, նրա վերարտադրությունը տոգորված է դասակարգային անհաշտելի հակասություններով, որոնք անխուսափելիորեն տանում են դեպի տնտեսության այդ սիստեմի կործանումը և արտադրության նոր՝ սոցիալիստական եղանակի ստեղծումը:

Սոցիալիստական հասարակությունը խարսխվում է արտադրության միջոցների հանրային սեփականության վրա: Սոցիալիստական արտադրության պրոցեսում մարդկանց հարաբերությունները բնորոշվում են որպես շահագործումից զերծ մարդկանց հարաբերություններ, փոխադարձ օգնության ու ընկերական հարաբերություններ: Արտադրության նպատակն այլևս ոչ թե հավելյալ արժեք կորզելն է, այլ՝ շահագործումից զերծ աշխատողների նյութական և կուլտուրական պահանջմունքների ավելի ու ավելի բավարարումը:

Սոցիալիստական հասարակության արտադրության նյութական հետեվանքը հասարակական ամբողջական արդյունք (պրոդուկտ) արտադրելն ու վերարտադրելն է: Սոցիալիստական հասարակության ամբողջական արդյունքը տվյալ տարում արտադրության ճյուղերում արտադրված նյութական բա-



րիքների գումարն է կամ ամբողջությունը: Այդ բարիքների արտադրության նախադրյալներն ու պայմանները տվյալ տարում արտադրության վրա ծախսվող աշխատանքն ու նախորդ տարիներում արտադրված աշխատանքի արդյունքներն են, որոնք կազմում են սոցիալիստական հասարակության հարստության նյութական բովանդակությունը: Այդ հարստությունը կազմված է աշխատանքի գործիքներից ու աշխատանքի առարկայական պայմաններից կամ հասարակական տեխնիկայից, աշխատանքի առարկաներից, պետության տրամադրության տակ գտնվող զանազան ռեզերվներից ու պաշարներից, ինչպես նաև սոցիալիստական հասարակության անդամների անձնական ունեցվածքից: Սոցիալիստական հասարակության հարստությունը միայն վերևում թվարկված աշխատանքի արդյունքներից չի կազմված. այդ հարստության մեջ են մտնում նաև երկրի ընդերքի հարստությունները, գյուղատնտեսական նշանակություն ունեցող հողերը, անտառները, ջրերը և մնացած բնական հարստությունները:

Նյութական արտադրության ճյուղերի՝ արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության ստեղծած նյութական բարիքները, հետևապես և տարեկան ամբողջական արդյունքը սպառարժեքների մի բազմազանություն է, որը սպառվում է կամ բուն արտադրության մեջ՝ ասենք հանքաքար, մետաղ, վառելիք, մեքենաներ և այլն, կամ մարդկանց կողմից՝ սննդամթերքներ, հագուստեղեն, կուլտապրանքներ, տնային կահկարասիք և այլն:

Հետևապես, սոցիալիստական հասարակության տարեկան ամբողջական արդյունքն իր մի մասով անպայմանորեն պետք է կազմված լինի արտադրության միջոցներից, առանց որոնց հնարավոր չէ արտադրել անձնական սպառման առարկաներ և բավարարել մարդկանց անմիջական պահանջմունքները: Քանի որ աճում է թե՛ բնակչությունը, և թե՛ սոցիալիստական հասարակության անդամների վճարունակ պահանջը, ուստի, որպեսզի այդ պահանջին համապատասխան սպառման առարկաներ արտադրվեն, դրա առաջին և վճռական պայմանը արտադրության միջոցների արտադրության լայնացումն է, նրա ընդլայնված վերարտադրությունը: Ուստի, ամբողջ արտադրության լայնացման գլխավոր պայմանը արտադրության միջոցների և առաջին հերթին արտադրության գործիքների անընդհատ աճն ու կատարելագործումն է: Առանց դրա չի կարող տեղի ունենալ սպառման առարկաների արտադրության լայնացում:

Նյութական արտադրության ճյուղերում արտադրված տարեկան արդյունքը ըստ իր տնտեսական նշանակության կարող է ծառայել արտադրական սպառման և անձնական սպառման: Դրան համապատասխան էլ հասարակական արտադրությունը Մարքսը բաժանել է երկու խոշոր ստորաբաժանումների՝ արտադրության միջոցների արտադրություն (I ստորաբաժանում) և սպառման առարկաների արտադրություն (II ստորաբաժանում): Հասարական արտադրության առաջին ստորաբաժանմանն են վերաբերում արդյունաբերության այն ճյուղերը, որոնք հայթայթում և վերամշակում են հանածո հումքը, ինչպես՝ լեռնային արդյունաբերությունը, մետաղաձուլությունը, էլեկտրակայանները, վառելիք արտադրող ճյուղերը, մեքենաշինությունը, մետաղամշակումը կամ, կարճ ասած՝ ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերը: Գյուղատնտեսության գծով առաջին ստորաբաժանմանն են վերաբերում

խատեսվում է հասարակության արտադրական և անձնական պահանջմունքները բավարարելու համար:

Տարեկան հասարակական ամբողջ արդյունքի արտադրության վրա կատարվում են նյութական ծախքեր՝ հումք, օժանդակ նյութեր, վառելիք, էլեկտրաէներգիա, սերմացու և այլն: Շահագործման են հանձնվում զանազան արտադրական շենքեր, կառուցվածքներ, օգտագործվում են մեքենաներ, որոնք մաշվում են, կամ ֆիզիկապես դեռևս չմաշված՝ տնտեսապես հնանում են (բարոյական մաշվածք): Վերարտադրության տարրական պայմանն այն է, որ հասարակական տարեկան արտադրանքի ընդհանուր գումարից մի մասն առանձնացվի նրա արտադրության վրա կատարված նյութական ծախքերը ծածկելու, դրանք վերարտադրելու համար: Այդ նպատակով հասարակական ամբողջական արդյունքից առանձնացվում է մի հատուկ ֆոնդ, որը կոչվում է փոխհատուցման ֆոնդ: Վերևում ասածից հետևում է, որ այդ ֆոնդը իր բնաձևով չի կարող բաղկացած լինել անձնական սպառման առարկաներից, այլ կազմված պետք է լինի բացառապես արտադրության միջոցներից: Հետևապես, այդ ֆոնդի վերարտադրությունը կարող է կատարվել I ստորաբաժանման մեջ արտադրված հասարակական արդյունքի հաշվին: Այդ ֆոնդը միշտ վերադարձվում է արտադրությանը ու չի կարող անձնական սպառման ենթարկվել, հակառակ դեպքում արտադրության հետագա շարունակումն անհնարին կդառնա:

Երբ հասարակական ամբողջական արդյունքից առանձնացվում է փոխհատուցման ֆոնդը, հասարակության օգտագործման համար մնում է ամբողջական արդյունքի այն մասը, որն ստեղծվել է տվյալ տարում նյութական արտադրության ճյուղում զբաղված աշխատողների՝ բանվորների ու գյուղացիների աշխատանքով: Տարեկան հասարակական ամբողջական արդյունքի այդ մասը կազմում է այն, ինչ որ մենք անվանում ենք ազգային եկամուտ:

***

Սոցիալիստական հասարակության տարեկան ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտադրությունը, բաշխումը և օգտագործումը կարգավորում է ժողովրդական տնտեսության պլանաչափ պրոպորցիոնալ օրենքը: Սակայն, իր կարգավորիչ դերը կատարելիս պլանաչափ զարգացման օրենքի գործողությունները չեն կարող չզուգակցվել արտադրության այնպիսի մի օրենքի գործողությունների հետ, ինչպիսին է արժեքի օրենքը: Բանն այն է, որ սոցիալիստական հասարակության մեջ աշխատանքը մի կողմից հանդես է գալիս որպես անմիջական աշխատանք, դրանով արմատապես տարբերվելով կապիտալիստական հասարակության մեջ կատարվող աշխատանքից, իսկ մյուս կողմից մեր հասարակության մեջ աշխատանքն աշխատողի համար դեռևս չի դարձել կենսական անհրաժեշտություն և դեռ շարունակում է մնալ որպես ապրուստի միջոց: Ավելացնենք նաև այն, որ նա սոցիալապես միատարր չէ, որ գոյություն ունի տարբերություն մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև, որակյալ և պակաս որակյալ աշխատանքի միջև և այլն:

Այս պայմաններում սոցիալիստական հասարակության տարեկան ամբողջական արդյունքը, որպես առարկայացում և կենդանի աշխատանքի արդյունք, նրա արտադրությունն ու վերարտադրությունը հնարավոր չէ իրականացնել չափի բնական միավորներով միայն, այլև պետք է չափել արժե-



քային միավորներով: Արժեքային միավորներով չափելը մեր սուբյեկտիվ ցանկությունը չէ, այլ հետևանք է այն բանի, որ հասարակական բարիքները մեզ մոտ արտադրվում են որպես ապրանքներ, ունեն արժեք, հետևապես և ենթակա են արժեքի օրենքի ներգործությանը: Հետևապես, տնտեսական անհրաժեշտություն է, որ սոցիալիստական հասարակության մեջ արդյունքներն արտադրվում են որպես ապրանք և փոխանակվում են՝ ըստ իրենց արժեքի:

Այս տեսակետից էլ համոզեցուցիչ չէ բավականաչափ տարածված այն թեզը, ըստ որի ՍՍՌՄ-ում ապրանք են միայն անձնական սպառման առարկաները, իսկ արտադրության միջոցներն ապրանք չեն: Այս դրույթը պատճառաբանվում է նրանով, որ ՍՍՌՄ-ում սոցիալիստական սեփականությունը երկու ձև ունի և որ արտադրամիջոցները մի սեփականատիրոջից չեն անցնում մեկ այլ սեփականատիրոջ: Նույնիսկ եթե մենք անտեսենք այն իրողությունը, որ գյուղատնտեսական հումքը կոլտնտեսային սեկտորից մթերումների ու գնումների միջոցով անցնում է պետական սեկտորին, որը, իհարկե, չի կարելի անտեսել, ապա միևնույն է, ակնհայտ է այն փաստը, որ ինչպես սպառման առարկաները, այնպես էլ արտադրության միջոցները սոցիալիստական հասարակության մեջ նույնպես իրենցից ներկայացնում են հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի արդյունք, հետևապես և՝ արտադրության հասարակական ծախքեր: Լինելով այդպիսի արտադրության միջոցների արժեք, դրանք չի կարելի չչափել արժեքային միավորներով՝ որպես արժեքաստեղծ աշխատանքի արդյունք, այսինքն՝ որպես ապրանք:

Սոցիալիստական վերարտադրությունը ոչ թե արտադրության միջոցների և սպառման առարկաների միմյանցից մեկուսացած արտադրության պրոցես է, կամ միմյանց զուգահեռ պրոցեսներ, այլ մի միասնություն: Գոյություն չունեն անձնական սպառման առարկաներ, որոնց արժեքի մեջ առարկայացած չլինի արտադրության միջոցների արժեքը: Տրամաբանական չի լինի, եթե ասենք՝ գործվածքեղենը համարվում է ապրանք, որն արժեք ունի, իսկ այն բամբակը, որից պատրաստվում է գործվածքը, կամ գործող մեքենան, որը մեքենաշինական գործարանից անցել է տեքստիլ արդյունաբերությանը, ապրանք չի եղել: Սպառման առարկաները ապրանք համարելը և, ընդհակառակը, տվյալ տարում արտադրված և նյութատեխնիկական մատակարարման պլանով բաշխվող արտադրության միջոցները ապրանք չհամարելը օբյեկտիվորեն նշանակում է ժխտել հասարակական վերարտադրության երկու ստորաբաժանումների միասնությունը, ժխտել արտադրամիջոցների հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի արդյունք, հետևապես և՝ հասարակական ծախքերի արդյունք լինելը:

Այս աղաղակող հակասությունների մեջ չընկնելու և ռեալ իրականությունը ճանաչելու անհրաժեշտությունը թելադրում է, որ մենք ընդունենք հասարակական ամբողջական արդյունքի ապրանք լինելու ռեալ փաստը, ընդունենք, որ սոցիալիստական հասարակության ամբողջական արդյունքն ապրանք է և նա ունի ոչ միայն իրային կերպարանք՝ սպառողական արժեք, այլև որպես ապրանք՝ ունի արժեք:

Սոցիալիստական հասարակության ամբողջական արդյունքը պետք է հաշվի առնել, չափել և պլանավորել ոչ միայն չափի բնական միավորներով, այլև արժեքային, այսինքն՝ դրամական միավորներով: Սոցիալիստական ձեռնարկության մեջ, անկախ նրանից, թե արտադրության միջոցներ է արտա-

դրում այն, թե սպառման առարկաներ, արտադրանքը դրամական միավորներով չափելը, ձեռնարկության կատարած ծախքերը, նրա օգուտներն ու վնասները արժեքային միավորներով արտահայտելը նշանակում է սոցիալիստական վերարտադրության պրոցեսում ընդունել և օգտագործել արժեքի օրենքը:

Դա մենք չենք կարող չընդունել, որովհետև մեզ մոտ ամբողջական հասարակական արդյունքն արտադրվում է որպես ապրանք, գոյություն ունի ու գործում է արժեքի օրենքը և մենք չենք կարող հաշվի չառնել նրա պահանջները: Այսպիսով, սոցիալիստական հասարակության տարեկան ամբողջական արդյունքը ապրանք է, ունի արժեք, ուստի այն նաև չափվում է արժեքային միավորներով:

***

Քանի որ սոցիալիստական հասարակության տարեկան ամբողջական արդյունքը և ազգային եկամուտը բացի սպառողական արժեքից ունեն նաև արժեք, ուստի և անհրաժեշտ է տալ նաև դրանց արժեքային բնորոշումը: Ըստ արժեքի՝ սոցիալիստական հասարակության տարեկան ամբողջական արդյունքը տվյալ տարում նյութական արտադրության ճյուղում արտադրված արտադրամիջոցների և սպառման առարկաների արժեքն է, որն արտահայտվում է սովետական փողի միջոցով: Այդ արժեքը բաղկացած է երկու մասից՝ փոխանցված արժեքից, այսինքն՝ արտադրության վրա գործադրված նյութական ծախքերի արժեքից և նոր արժեքից, որ ստեղծվել է տվյալ տարում գործադրված աշխատանքի շնորհիվ: Առաջինը փոխհատուցման ֆոնդի արժեքն է, երկրորդը ազգային եկամուտն է:

Փոխհատուցման ֆոնդը ետ վերադարձնելով արտադրությանը՝ հնարավոր է դառնում ապահովել պարզ վերարտադրությունը: Սակայն, սոցիալիստական վերարտադրությունը միշտ և բոլոր դեպքերում պետք է կատարվի ընդլայնված մասշտաբով, ուստի արտադրությունն ընդլայնելու համար անհրաժեշտ է արտադրությանը հատկացնել նաև ազգային եկամտի մի մասը, որպես արտադրությունն ընդլայնելու ֆոնդ: Բացի արտադրությունն ընդլայնելու ֆոնդից, ազգային եկամտի մի որոշ մասն առանձնացվում է հասարակական զանազան կարիքների համար, ինչպես, օրինակ, ժողովրդական կրթության, առողջապահության, սոցիալական ապահովության, երկրի պաշտպանունակությունն ամրապնդելու և այլ կարիքների համար:

ՍՍՌՄ ազգային եկամտի խոշոր մասը բաշխվում է աշխատավորներին՝ նրանց անձնական պահանջմունքներն անմիջականորեն բավարարելու համար:

Տնտեսության սոցիալիստական սիստեմը ազգային եկամտի բարձր տեմպերով աճելու լայն հնարավորություն է տալիս: Ազգային եկամտի աճման գլխավոր աղբյուրներն են՝ նյութական արտադրության ճյուղերում զբաղված աշխատողների թվի աճը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը: Այդ ուղղությամբ ՍՍՌՄ ձեռք բերած անվիճելի նվաճումների հիման վրա ազգային եկամուտն աճեց կապիտալիստական աշխարհին միանգամայն անմատչելի տեմպերով: 1913 թվականի համեմատությամբ, 1955 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտն ավելացավ մոտ 17 անգամ: ՍՍՌՄ ազգային եկամուտն առանձնապես մեծ չափերով աճեց հետպատերազմյան տարիներին և 1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ մոտ 3 անգամ:



Հենվելով ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացման բարձր մակարդակի և աշխատավորների արտադրական լայն նախաձեռնության վրա, մեր պարտիայի XX համագումարը վեցերորդ հնգամյա պլանի մասին Դիրեկտիվներում նախագծեց 1960 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը 1955 թվականի համեմատությամբ ավելացնել 60 տոկոսով: Դա հնարավորություն կտա է՛լ ավելի բարձրացնել ժողովրդական սպառման մակարդակը և կապահովի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացումը՝ ընդլայնված վերարտադրության սկզբունքներով:

***

Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության կարևորագույն պայմաններից մեկը բանվորական ուժի վերարտադրությունն է, նրա պլանաչափ բաշխումը ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև ու ռացիոնալ օգտագործումը: Բանվորական ուժի պլանաչափ բաշխումն ու նրա ռացիոնալ օգտագործումը՝ որպես օբյեկտիվ անհրաժեշտություն, պայմանավորված է այն պատճառակցական կապերով, որոնք գոյություն ունեն աշխատանքի քանակի և արտադրանքի քանակի միջև: Որոշ քանակի արդյունք արտադրելու համար պահանջվում է աշխատանքի որոշակի քանակություն: Այստեղից էլ հետևում է, որ հասարակական տարեկան արդյունքի և ազգային եկամտի վերարտադրությունն անքակտելիորեն կապված է բանվորական ուժի վերարտադրության հետ և պայմանավորված է նրանով:

Բանվորական ուժի վերարտադրության պրոբլեմը օրգանապես կապված է սոցիալիստական վերարտադրության բոլոր կողմերի հետ: Ինչպես ամեն մի հասարակության մեջ, այնպես էլ սոցիալիստական հասարակության մեջ հասարակության ո՛չ բոլոր աշխատունակ անդամներն են, որ զբաղված են նյութական բարիքների արտադրությամբ: Հասարակության աշխատունակ անդամների մի մասն էլ զբաղված է ո՛չ արտադրական ճյուղերում և սպասարկում է հասարակության հոգևոր և կուլտուրական կարիքներին: Նյութական արտադրության ճյուղերում զբաղվածները կատարում են արտադրական աշխատանք, իսկ ո՛չ արտադրական ճյուղերում զբաղվածները՝ ո՛չ արտադրական աշխատանք: Սոցիալիստական հասարակության պայմաններում ինչպես արտադրական ճյուղերում, այնպես էլ ոչ արտադրական ճյուղերում զբաղվածների աշխատանքը, իհարկե, օգտակար աշխատանք է: Սակայն, այդ չի նշանակում, թե հասարակությունը կարող է անտարբեր լինել աշխատանքային ռեսուրսներն ըստ արտադրական և ոչ արտադրական ճյուղերի միջև բաշխելու հարցում:

Կոմունիզմի նյութական արտադրական բազայի ստեղծման համար Սովետական պետությունը ժողովրդական տնտեսության զարգացման պլանաչափ, պրոպորցիոնալ օրենքի պահանջին համապատասխան ձեռնարկում է բոլոր անհրաժեշտ միջոցները՝ նյութական արտադրության և ոչ արտադրական ոլորտների միջև աշխատանքային ռեսուրսների ճիշտ համամասնություն ապահովելու համար: Սոցիալիստական ընդլայնված վերարտադրությունը պահանջում է նյութական արտադրության ճյուղերում զբաղվածների այնպիսի քանակություն, որ աշխատանքի արտադրողականության տվյալ մակարդակի պայմաններում արտադրվի հասարակության արտադրական և

անձնական պահանջմունքներին բավարար ազգային եկամուտ։ Երկրի սոցիա-
լիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման հիման
վրա, տնտեսական հետամնացության և գործազրկության վերացմամբ,
ՍՍՌՄ-ում ստեղծվեցին բոլոր անհրաժեշտ պայմանները բանվորական ուժի
ընդլայնված վերարտադրության համար, որն իր արտահայտությունը գտավ
բանվոր-ծառայողների թվի սիստեմատիկ աճման մեջ ժողովրդական տնտե-
սության բոլոր ճյուղերում։ 1928—1955 թվականների ընթացքում ՍՍՌՄ
բանվոր-ծառայողների թիվն ավելացավ մոտ 5 անգամ և 1955 թվականին
հասավ 48,4 միլիոն մարդու։ Այդ թվից ավելի քան 17 միլիոն մարդ կազ-
մում էին արդյունաբերության մեջ աշխատողները։ 1955 թվականին միայն
արդյունաբերության մեջ աշխատողների թիվը 1,7 անգամով ավելի էր
1928 թվականի ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր-
ծառայողների ընդհանուր թվից։ Արդյունաբերության և շինարարության մեջ
1955 թվականին զբաղված էր ամբողջ բնակչության մոտ 1/3-ը այն դեպքում,
երբ 1928 թվականին այն կազմում էր ընդամենը 8 տոկոս։ Գյուղատնտեսու-
թյան և անտառային տնտեսության մեջ զբաղվածները կազմում էին բնակ-
չության 43 տոկոսը՝ 1928 թվականի 80 տոկոսի փոխարեն, տրանսպորտում
և կապում 6 տոկոսը՝ 1928 թվականի 22 տոկոսի փոխարեն։ Այսպիսով, նյու-
թական արտադրության ճյուղերում 1955 թվականին զբաղված էր ՍՍՌՄ
ամբողջ բնակչության 85,2 տոկոսը և միայն 14,8 տոկոսն էր զբաղված ո՛չ
արտադրական ճյուղերում։

ՍՍՌՄ-ում բանվորական ուժի վերարտադրության կարևոր ցուցանիշ-
ներից մեկը բանվոր-ծառայողների որակավորման արագ բարելավումն ու
այդ հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացումն է և
աշխատողների կյանքի մակարդակի սիստեմատիկ աճը։

Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության մյուս կարևոր պայ-
մանը բանվորական ուժի պլանաչափ պատրաստումն ու նրա բաշխումն է ոչ
միայն ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև, նյութական արտադրու-
թյան և ոչ արտադրական ոլորտների միջև, այլև երկրի տարբեր շրջանների
և մարզերի միջև։

ՍՍՌՄ արտադրողական ուժերի պլանաչափ տեղաբաշխումը միաժամա-
նակ նշանակում է աշխատանքային ռեսուրսների տերիտորիալ բաշխում։
Ղազախստանի, Արևելյան և Արևմտյան Սիբիրի հումքային և էներգետիկ
ռեսուրսների և առհասարակ բնական հարստությունների յուրացումն ան-
հնարին կլիներ առանց Սովետական Միության այլ շրջաններից աշխատան-
քային ռեսուրսները պլանային կարգով տեղաբաշխելու. հիշյալ շրջաննե-
րում։ Նախապատերազմյան և հետպատերազմյան հնգամյակների տարինե-
րին հսկայական աշխատանք է կատարված երկրի արևելյան շրջաններն
անհրաժեշտ բանվորական ուժով համալրելու գործում։

Ընդլայնված սոցիալիստական վերարտադրության համար բացառիկ նշա-
նակություն է ստանում աշխատանքի արտադրողականության անշեղ բարձ-
րացման հարցը։ Ահա թե ինչու Պարտիայի XX համագումարը մեծ նշանա-
կություն տալով աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման
հարցին՝ վեցերորդ հնգամյա պլանի Դիրեկտիվներում սահմանեց, որ
1956—1960 թվականներին աշխատանքի արտադրողականությունը բարձրա-
նալու է՝ արդյունաբերության մեջ ո՛չ պակաս քան 50 տոկոսով, շինարա-





րարության մեջ՝ ո՛չ պակաս քան 52 տոկոսով, երկաթուղային տրանսպոր-
տում՝ մոտավորապես 34 տոկոսով, սովետական տնտեսություններում ու
պետական օժանդակ գյուղատնտեսական ձեռնարկություններում, մոտավո-
րապես՝ 70 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը հանդիսանալով
բանվորական ուժի վերարտադրության կարևոր ցուցանիշներից մեկը, միա-
ժամանակ նշանակում է ժամանակի տնտեսում, կենդանի աշխատանքի
խնայում։ Ժամանակի տնտեսումը և կենդանի աշխատանքի խնայումը սո-
ցիալիզմի ժամանակ տնտեսական անհրաժեշտություն է դառնում։ Սոցիա-
լիստական հասարակության անդամների բազմակողմանի զարգացման
նպատակով բանվորական ժամանակի կրճատումը հանդիսանում է սոցիա-
լիստական արտադրության բնորոշ առանձնահատկություններից մեկը։
Պարտիայի XX համագումարի որոշումներին համապատասխան 1956 թվա-
կանից սկսած այդ ուղղությամբ արդեն կատարված են որոշակի քայլեր։
Նախահանգստյան և նախատոնական օրերին աշխատանքի տևողությունը
կրճատված է 2 ժամով, դեռահասների համար սահմանված է կրճատ աշ-
խատաժամ, իրագործվում են մի շարք այլ ձեռնարկումներ, որոնց նպատակն
է աշխատավորների կյանքի պայմանների բարելավումը։

Այսպիսով, աշխատանքի արտադրողականության անշեղ վերելքը ոչ
միայն սոցիալիստական արտադրության գլխավոր աղբյուրն է, այլև միջոց
է հետագայում բանվորական օրը է՛լ ավելի կրճատելու, երկրի աշխատան-
քային ռեսուրսները ժողովրդական տնտեսության ճյուղերի, քաղաքի և գյու-
ղի միջև պլանաչափ կերպով բաշխելու և վերաբաշխելու, դրանով իսկ սո-
ցիալիստական արտադրության պլանաչափ զարգացումն ապահովելու
համար։

Վեցերորդ հնգամյա պլանի խնդիրները հաջողությամբ լուծելու, սոցիա-
լիզմից կոմունիզմին անցնելու համար անհրաժեշտ նախադրյալներ ստեղ-
ծելու գործում աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձ-
րացումը միակ աղբյուրն է, որի օգնությամբ հնարավոր է դառնում համա-
պատասխանություն ապահովել բանվորական ուժի նկատմամբ ժողովրդա-
կան տնտեսության պահանջի և ժողովրդական տնտեսության մեջ եղած աշ-
խատանքային ռեսուրսների միջև։ Առանց այդպիսի համապատասխանու-
թյան հնարավոր չէ ընդլայնված վերարտադրություն իրականացնել։

Վեցերորդ հնգամյա պլանի հոյակապ խնդիրների լուծումը մեր երկ-
րում, որը մի նոր առաջընթաց քայլ կնշանակի ՍՍՌՄ հիմնական տնտեսա-
կան խնդիրը լուծելու ճանապարհին, միաժամանակ նշանակում է աշխա-
տավորների նյութական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացում։

Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները կապի-
տալիստականի հանդեպ, որ դրսևորվել է ՍՍՌՄ սոցիալիստական շինարա-
րության ամբողջ ընթացքում, այդ առավելությունների իրացումը վեցերորդ
հնգամյակի տարիներին լայն հնարավորություն կտա կապիտալիզմի հետ
խաղաղ մրցակցության ճանապարհին լուծելու ՍՍՌՄ հիմնական տնտեսական
խնդիրը, որը և սոցիալիստական ընդլայնված վերարտադրության գլխավոր
խնդիրն է ՍՍՌՄ-ում։

*հնությունները և այլն։ Կամոն նաև բազմաթիվ հանդիպումներ է ունեցել ռևոլյուցիոներների հետ. օրինակ՝ Բուլղարիայում նա մոտիկ հարաբերություններ է ունեցել Ռուսաստանի բանվորական շարժման առաջին կազմակերպիչներից մեկի՝ հայտնի բուլղար ռևոլյուցիոներ Բլագոևի հետ. այս մոմենտները պետք էր անպայման օգտագործել։ Լավ չեն օգտագործվել նաև Կամոյի մարտական խմբակի անդամ Ակսենով Ռաղինի հիշողությունները։*

*Գրքի առանձին մասերում բացակայում են կարևոր դեպքերի տարեթվերը, որոշ հատվածներ շարադրված են չոր և սխեմատիկ. Կամոյի հոգեկան ապրումներին և ներքնաշխարհին, նրա մտորումներին անհրաժեշտ տեղ չի տրված, որի հետևանքով հերոսի գործողությունները երբեմն մեխանիկական բնույթ են ստացել։*

*Կան անախրոնիզմի տարրեր. այսպես, օրինակ, 1906 թվականին Լենինը իբր թե Կամոյին ասում է «— Մոտենում է մասսայական մեծ կռիվը, զինված ապստամբությունը» (էջ 57)։ Լենինը այսպես ասել չէր կարող, քանի որ այդ մեծ, մասսայական կռիվը տեղի էր ունեցել դրանից առաջ, 1905 թվականի դեկտեմբերին։ Կամ թե Լենինը Կամոյին Փարիզից Բելգիա բուժման ուղարկելիս, իր մուշտակը նրան նվիրելով, ասում է. «—Վերցրեք, ծովով ճանապարհորդելիս առանց այսպիսի մուշտակի կմրսեք...» (էջ 100)։ Ինչպես հայտնի է, Փարիզից Բելգիա գնալու համար կարիք չկար ծովով անցնելու։*

*Կան առանձին անբնական հատվածներ։ Վեպի 98-րդ էջում ասված է, որ Կամոն Փարիզ հասնելով շտապում է Լենինի բնակարանը։ Այստեղ առաջինը նրան հանդիպում է Կրուպսկայան և հայտնում որ Լենինին տեսնելու համար մի փոքր պիտի սպասի, որովհետև Լենինը այժմ զբաղված է Ստեփան Շահումյանի խմբագրությամբ այս տարվա մարտից լույս տեսնող «Սովրեմեննայա ժիզն» շաբաթաթերթի ընթերցմամբ (էջ 98)։ Սա շինծու է և անհավանական, Լենինի և Կրուպսկայայի բնավորության հետ անհամատեղելի։*

*Անհրաժեշտ չափով լուսաբանված չէ Կամոյի մերձավորների, մանավորապես քույրերի ռևոլյուցիոն գործունեությունը. մի որոշ բան ասված է Ջավահիրի մասին, բայց մոռացության են տրվել այն կարևոր փաստերը, որ Ջավահիրը թրքուհու չադրայի մեջ փաթաթված, իր մարմնի վրա կապոտած անլեգալ գրականություն ու կոչեր էր փոխադրում Թիֆլիսի մի ռայոնից մյուսը և դրանք հաջողությամբ տարածում էր բանվորների մեջ։ Ջավահիրը անձամբ ծանոթ էր Զեմլյաչկային, Ստասովային, Ժընևում մի քանի ամիս հյուր է եղել Լենինի և Կրուպսկայայի մոտ։*

*Վեպում անբավարար են մշակված Կամոյի հանդիպումները Ստ. Շահումյանի հետ. Կամոն Շահումյանների ընտանիքի շատ մոտիկ բարեկամներից է եղել։ Ստ. Շահումյանի եղեռնական մահվանից հետո Կամոն մշտապես այցելում էր նրա հիվանդ մորը և նրան հավատացրել էր, որ Ստեփանը պարտիայի հանձնարարությամբ Հնդկաստանում է գտնվում և շուտով կվերադառնա։ Ստ. Շահումյանի մայրը այդպես էլ մահացել է, չիմանալով իր որդու գնդակահարվելը։*

*Անհրաժեշտ է վերամշակված «Կամո» պատմվածքը հրատարակել նաև ռուսերեն լեզվով, ռուս ընթերցողների լայն մասսաներին ծանոթացնել հայ ժողովրդի անձնուրաց ռևոլյուցիոն զավակի՝ Կամոյի լեգենդար կյանքի հետ։*

*Միանգամայն ուրախալի է, որ Երևանի Կինոստուդիան ձեռնարկել է «Կամո»-ի նկարահանման նախապատրաստական աշխատանքները։ Այդ կինոնկարի հաջողության տեսակետից անշուշտ պետք է պատշաճ կերպով օգտագործվեն ինչպես Մ. Կորյունի «Կամո» պատմվածքը և նրա ձեռք բերած նյութերը, այնպես էլ Կամոյին գիտցող հին բոլշևիկների հիշողությունները և ցուցումները։*

Ե. ԽԱԼԵՅԱՆ

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении. тел. 2—03—18, 2—56—92, 2—04—66.



ՎՖ 01149 Պատվեր 149 Տիրաժ 6300

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։ Ստորագրված է տպագրության 24/II 1957 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի 8։

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.